Սրբ. Ներսիսի Շնորհալւոյ
Հայրապետականն



Rizzard des.

Ի ՎԵՆԵՏԻԿ
1830

# ԸՆՏԻՐ

# ՄԱՏԵՆԱԳԻՐՔ



## Ն. ՇՆՈՐՀԱԼԻ

# ՏՆ. ՆԵՐՍԵՍԻ

# ՇՆՈՐՀԱԼՒՈՅ

## ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

## ԲԱՆՔ ՉԱՓԱՒ



Ի ՎԵՆԵՏԻԿ

Ի ՍՈՒՐԲՆ ՂԱԶԱՐ

ՌՄՀԹ

# ԶԵԿՈՒՑՈՒՄՆ

Ի մի յայս մատեան բովանդակեմք զամենայն տաղաչափութիւնս Շնորհալւոյն, բաց յընտրելագունէն 'ի քերթածս նորա յՈղբոցն Եդեսիայ, և 'ի Շարականացն ։

Բայց զխոստացեալն ընթերցօղք, զի ոչ եթէ վարկպարազի ընտրանաւ այսորիկ 'ի մի ածան՝ ըստ յետնոց ինչ պատուաստ գրչագրաց, որոց յաւելուածք անդատին յանհամութենէ տողիցն և 'ի կարգ ոտիցն չափոյ նշաւակին՝ առ անհմուտս եւեթ պատարուակեալ, այլ ամենայն զգուշեաւ բաղդատեցան ընդ տասն

և ընդ առաւել ևս ձեռագիրս, յո-
րոց մանաւանդ չորք վաղեմիք են և
հարազատք. 'ի ձեռին ունելով և
զամենայն տպագիրս: Իսկ զերկրորդ-
եալն ընթերցուածս յետ կոյս մատե-
նիս դրոշմեսցուք: Բայց զվիպասա-
նականն միահետ ողջերգութիւն,
ըստ ոմանց 'ի դրչագրաց, յերիս
գիրս բաժանեսցուք:

# ՏԵԱՌՆ

# ՆԵՐՍԷՍԻ

## ՆՈՒԷՐ ՄԱՂԹԱՆԱՑ

ՆԵՐՉԱՓԱԿԱՆ ՏԱՂԻՒ
ՏՈՒՈՂԻՆ ԲԱՆԻՑ ԸՂՁՈՒՄՆ
ԱՂՕԹԻՑ

ՆԵՐԱՆՁՆԱԿԱՆ ՀՈԳՒՈՑ
ԶԱՐԹՈՒՑԵԼՈՑ ՄՏՕՔ
Ի ԹՄԲՐՈՒԹԵՆԷ ԿՐԻՑ

ՅԻՇԱՏԱԿԱՒ ԱՆՑԵԼՈՒՄՆ ԻՐԻ
ՆԵՐԿԱՅԻ ԵՒ ԱՊԱԳԱՅԻ

ՈՂԲՈՒՄՆ
ՀԵԾՈՒԹԵԱՆ ՍՐՏԻ

ԽՕՍՔ

ԸՆԴ ԱՍՏՈՒԾՈՅ

# ՏԵԱՌՆ ՆԵՐՍԵՍԻ

# ՇՆՈՐՀԱԼԻՈՅ



# ՈՂԲԵՐԳՈՒԹԻՒՆ

## ՎԻՊԱՍԱՆԱԿԱՆ Ի ՏԱՌԻՑ

## ՍՐԲՈՑ

## ԳԻՐՔ ԱՌԱՋԻՆ

ՅԻՍՈՒՍ, Որդի Հօր միածին,
Եւ ճառագայթ կերպարանին.
Ծընեալդ անճառ սկըզբնաւորին,
Անհասատար քում ծընօղին.
Ցոլմէ եղեալքըս ներգործին,
Իմանալիք, որք երկնին,
Մարմին եղեալքս եւ անմարմին,
Անբանականք, հանդերձ բանին.

կենդանականք, որ բուսանին ,
Եւ անկենդանք որ ոչ շարժին ։
Յորոց ընդ Հօր քում սիրողին
Քեզ գոհութիւնք մատուցանեն ,
Եւ ընդ Հոգւոյդ քում էակցին
Փառաւորութիւնք վերասաքին
Ի յընդդիմելոց մաքրադունեց`
Որք ընդ յարկաւ քո մուծանին ։
Ընկալ և զիս , տէր , ընդ նըմին
Ըզստունգանօղս պատուիրանին ,
Ըզընդմանօղս անտառակին
Եւ զինչըս հօրըդ վատնողին ,
Զ'ի քէն պատախան անգիտողին ,
Եւ հաւասար գող անմըտին ,
Ի գլխասցն ագարակին
Զերամ խոզըցն արածողին ,
Սովեցելոյն` ոչ սով հացին ,
Այլ լըսելոյ տէառնըդ բանին ,
Ցանկացելոյ ջերմ եղջերին ,
Քաղցըր մեղաց դառնադունքին ։
Որպէս Ադամին այն առաջին ,
Այն որ մեղօքն անուանի հին ,
Որով մեռաք ամենեքին ,
Եւ կորուսաք ըղձանկալին ։
Ո՜հ ես նըման մեղայ նըմին ,
Եւ յանցանաց մօրն Եւային ·

Ըզպատուանդան սրբապատկերին՝
Զոր ըզգեցայ յաւազանին՝
Զայն մերկացայ խաբանմամբ չարին ,
Զինեւ առեալ զմաշկեղէնսն ։
Ընդ փափկութեան կենաց դրախտին ,
Որ խոստացեալ օրինակին ,
Մըշակեցի յիմում անձին
Զփուշ և զտատասկ մեղաց բուսմին ։
Ընդ անաշխատ կենաց վայելին ,
Որ ըստ յուսայն թեթև ասին ,
Ունեմ քրտամբք զաւորէին ,
Դառնամ'ի հող ուստի առին ։
Արդ աղաչեմ ես ընդ նմին ,
Թէ , հայր , մեղայ քեզ'ի յերկին.
Չեմ արժանի կոչել որդին ,
Այլ վարձկանացն արա վերջին .
Արժանացո մաքրագունին
Հօրըդ բարւոյ սուրբ ողջունին ։
Ընդ հովանեաւ հարսնարանին
Ժողովեսցես զիս վերըստին .
Եւ զպատուանդանըն զառաջին
Զոր աւազակքըն մերկացին ,
Արկցես զինեւ դարձեալ կրկին
Որպէս ըզգարդ պըճնեալ հարսին ։
Զարքունական ըզմաւանանին ,
Ըզնըրշանակ տէրականին ,

Տացես ունել յաջոյ ձեռին,
Ոչ խոտորել այլ յահեկին ։
Եւ պահապան ընդդէմ օձին,
Շնորհեա կօշիկ գարշապարին ,
Զի մի՛ հարցէ ընդ խաւարին ,
Այլ կոխեսցի գլուխ նորին ։
Զենման եղին պարարակին՝
Որ 'ի խաչին պատարագին ,
Եւ տիգահոս արեան կողին՝
Կենաց վըտակ մեզ բըղխողին ,
Հաղորդս արա զիս վերըստին
Ըստ առակի անառակին .
Ուտել ըզհաց կենարարին ,
Ըմպել զբաժակ քո զերկնային ։
Մոլորեցայ յանապատին ,
Թափառեցայ յանվայր վայրին ,
Որպէս առակն է ոչխարին
Մի 'ի թըւոցըն հարիւրին .
Զոր պատառեաց չար թըշնամին ,
Վիրօք լըցոյց անհընարին .
Ուստի այլ ոչ դեղ գոյ վիրին ,
Բայց թէ 'ի քէն բըժըշկեցին ։
Այն որ գոչեմ զարտասուելին ,
Աղաղակեմ զիս փրկողին .
Հովուըդ քաջ և երկնային ,
Եւ 'ի խընդիր փոքու հօտին .

Այց արա, տէր, անկեալ դրամին
Եւ կորուսեալ քո պատկերին ,
Զոր Թաղեցի մեղաց յախտակին
Եւ չարաչար հատեալ յաղբին :
Լըւա զիս, տէր, յաղագս անձին
Ի մաքրութեան ձեռան ապխտակին .
Լըցցես ըզԹիւ տասանեկորդին ,
Որպէս ըզտուրք քառասնեկին :
Բարձ 'ի յուսոյգ բարձող խաչին ,
Հանցես 'ի վեր զանկեալ հողին .
Ուրախացո զզօրսն վերին
Վասն միոյ մեղաւորին :
Ընդ Աբէլի պատարագին
Ի հոտ անոյշ քեզ ընծային ,
Ընկալ և զիս, տէր, ընդ նըմին .
Մի՛ խոտեցայց ընդ Կայենին ,
Թէպէտ և ոչ ըստ արժանին
Քեզ մատուցի զողջակիզին .
Զի ընտրեցի զիմն առաջին ,
Եւ զքոյն վերջին մատն 'ի զոհին :
Նըմանեցայ նենգաւորին
Եղբայրըսպան դաւաճանին ,
Սպանանելով զիս կամովին ,
Եւ նենգելով անձամբ անձին .
Ոչ զարտաքին եղբօր մարմին ,
Այլ ըզհոգիս իմ ըզներքին .

Ուստի շըրջիմ դերերայլին ,
Միտք և խորհուրդք իմ տատանին :
Որ մըխիթարք տըրտմագնեցին
Եղուր ըզՍէթ ընդ Հաբելին ,
Լինել սերունդ նախաստեղծին
Եւ նահապետ բարւոյ ազգին ,
Փարատեցո , տէր , և յինէն
Զորդէկորոյս սուգ տըրտմութեան .
Որք են մասունք իմաստութեան ,
Ծընեալ մանկունք գործականին .
Եւ աճեցո յիս վերըստին
Զանապական սերմըն բանին ,
Զլուսոյ ծընունդս իմանալին
Հըրեշտակական և երկնային :
Մի՛ նմանեցայց որդւոց Սեթին ,
Ցանկալ դըստերցըն Կայենին .
Այլ Ենովսայ նահապետին ,
Որ յուսացաւ նախ առաջին .
Եւ Ենովքայ անապատին ,
Այն որ փոխեալն է 'ի դըրախտին ,
Որ ժառանգեաց ըզՀայրենին
Ընդ պահելոյ պատուիրանին :
Բայց յայացանէ զի՛նչ օգտեցիմ ,
Որոց նըման ես ոչ լինիմ :
Զի չհետեւիմ շաւղաց նոցին ,
Ի ոչ վերանամ մըտօք յերկին .

Այլ կամ անկեալ յախտալից խորքին ,
Ի գուբ աղեղծոյ գէճ խոնաւին ·
Որով անդունդք անհընարին
Զիս 'ի յինքեանս ընկըղմեցին ։
Որպէս մարգարէն նախնի գարին ,
Որք 'ի յաւուրս էին Նոյին·
Որք ուտէին և ըմպէին ,
Անսանձաբար խառնակէին ,
Մինչև եհաս Ջուր հեղեղին ,
Ապականեաց զամենեսին ։
Միայն պահեալ զայն որ պահեաց
Ամ հինգ հարիւր ըզկուսութիւն ։
Այլ որ ըզՆոյ և զեւթն ոգին
Ապրեցուցեր 'ի տապանին ,
Հանգերձ սեռիւք չորքոտանին
Եւ օդական թեւաւորին ,
Եւ զիս պահեա 'ի հեղեղէ
Ցաշխարհածուփ ալեաց չարին ,
Քո տապանաւ սուրբ խորանին
Ամրածածուկ ընդ հովանին ։
Մերժեա յոգւոյս իմ տապանէ
Զգիշերատես գոյն ագռաւին ,
Որ է նա տխալ գաղտնի նետին ,
Այնմ որ թըռչի ընդ խաւարին ·
Եւ բաց 'ի մտաց աղջամղջին
Ինձ պատուհան մեծի լուսին ,

Ցորմէ խաւարըն մեղսածին
Հալածական անհետ լինին ։
Մոյծ ընդ բացեալ լուսարանին
Զ'ի գոյն ոսկւոյ սուրբ զաղաւնին ,
Բերել առ իս ըզձիթենին ,
Որ է մաքուր և սուրբ Հոգին ։
Բայց ես ախտիւ մարմնականաւ
Մխայն չհեղձի զանձն 'ի ծովին ,
Այլ հողեկան և մըտաւոր
Կըրիւքն եղէ անօթ չարին ։
Քանզի նըման գոլով նոցին,
Որ զաշտարակըն շինեցին
Ի Քաղանէ մեծի դաշտին
Ի յաշխարհի Բաբիլոնին ,
Զի 'ի Ջըրոցըն հեղեղին ,
Որ թէ գայցէ այլ, ապահեսցին ․
Կամ թէ յերկինըս վերանալ
Հըպարտութեամբըն խորհէին ։
Մինչև շընչեալ հողմոյ ուժգին ,
Հողային հընչմըն սաստկագին ,
Քանդեաց զերկինըս հըպարտին
Եւ զաշտարակն այն ահագին ․
Եւ ըզլեզուըն միակին
Զայն խառնակեաց յեօթանասունին ,
Զի մի 'ի չար միաբանին ,
Այլ բարեօք բաժանեսցին ։

Նոյնպէս և ես բարձրացուցի
Զպարխաղ մեղաց աշտարակին ,
Հրապարաւթեամբ չինեալ քարամբք
Ամբարտաւանութեան ամբարտաւանին .
Որոյ հիմունս Ճարտարապետս
Էր Արուեստակն անդընդային ,
Եւ գործօնեայք չար իշխանին
Դիւացըն գունդք լեգէոնին .
Որք և անկեալ կործանեցին
Ընդ մեքենայս զոր շինեցին .
Եւ իմ զերծեալ հալեց նոցին
Որպէս երբեմն եբրայեցին :
Որ յօրինակ քեզ ընտրեցեր
Զմելքիսեդեկ քահանայցն ,
Անհայր անմայր անազգային
Եւ քահանայ աստուածային ,
Տասանորդող ղեւտականին ,
Մինչ էր յերանեան Աբրահամին ,
Եւ Թագաւոր էր Սաղէմին ,
Որպէս և դու , տէր երկնային .
Ընկալ և զիս հայցմամբ նորին
Յերուսաղէմդ քո վերին ,
Թագաւորել ընդ քեզ 'ի նմին
Իբրև զորդիսըն Սիոնին :
Որ կոչեցեր ազգամամբ ձայնին
Ըզնահապետն հանուրց ազգին ,

ԶԱբրահամեան այն առաջին ,
Պանդխտանալ յօտար երկրին .
Երեւեցար 'ի Մամբրէին
Մինչ դեռ նստէր նա ընդ կաղնիին ,
Կերպարանեցար որպէս մարմին
Յորժամ բնութեամբդ էր անմարմին .
Եւ խոստացար Նմա զորդին ,
Որով որդիք մարդկան օրհնին .
Ի յօրինակ քո գալըստեանդ ,
Որ մարմնացար յորդւոց Նորին :
Հանգեա եւ զիս յորոց նեղեալ,
Միջոյ չարեաց նենգաւորին ,
Ի բազմադոյն ախտից նեղչին
Եւ 'ի բանդից մեղաւորին :
Զնժդեհացեալս մարմնով 'ի սմին
Յօտարոտի կեանս երկրային
Փոփոխեսցես 'ի հայրենին
Որպէս զորդիսն Աբրահամին :
Երեւեցո զերեսս քո , տէր ,
Ինձ որ նըստիմ ներքոյ ստուերին ,
Զի ընդ առաջ քո յարուցեալ
Երկիր պագից քեզ 'ի գետին :
Խոնարհեցիր յիջեւանիս ,
Ընդ քեզ եւ Հայր քո եւ Հոգին .
Կերպարանեցիր յիմում բարին
Յաղքատանաց եւ 'ի չնչին :

Զանծնընդական ամուլ հոգիս
Բարեաց գործոց հոգեւորին
Պըտղաբերեա ընդ Սառային
Աւետաբեր բանիւ քոյին .
Որ աղօթիւք հայրապետին
Սիրեցելոյ Աբրահամին
Ազատեցեր զեղբօրորդին ,
Հանեալ ըզՂովտ 'ի Սոդոմին ,
Զիս արձակեա , տէր , ընդ Նըմին
Կապից մեղաց՝ հայցմամբ Նորին ,
Ի խորհրդոց սոդոմային
Եւ 'ի գործոց պըղծատուին .
Զի մի՛ 'ի հուր ծըծըմբածին
Ցոչորիցիմ որպէս Նոքին .
Եւ մի՛ յարձան մածանիցիմ
Որպէս ըզկինն 'ի չար դարձին ։
Այլ հրամայեա սուրբ հրեշտակին
Ցափըշտակել զիս ընդ Նոսին ,
Հանել 'ի լեառնըն երկնային ,
Կարգել 'ի դասն ընդ որ կացին ։
Ստեղծիչ սըրբոց , տէր , առանձին
Տեառն գործոց և խորհրդին ,
Ի փորձ մըտեր առ սիրելին ,
Պատարագել քեզ զամլորդին ,
Երթալ 'ի մեծ բարձր 'ի լերին
Ի Գողգոթա , որպէս ասին ,

Բառնալ ըղձիւայս ողջակիզին
Իւր միածնին ողջախոհին .
Զոր և հանեալ 'ի սեղանին
Որպէս ըղձեղ, տէր, 'ի խաչին ,
Բուռըն հարեալ 'ի սուսերին
Եւ մերձ եղեալ պարանոցին ,
Մինչ 'ի վերուստ հընչեալ ձայնին
Թէ մի' մըխեր 'ի պատանին ,
Այլ հայեսցիս յաջոյ ձեռին
Կախեալ ըզխոյն 'ի սաբեկին :
Զոր փոխանակ բանականին ,
Իսահակայ քում ծառային ,
Ետուր 'ի զոհ պատարագին
Զանբան ստեղծեալըն կենդանին :
Մեծ զիս փորձեր , տէր , ըստ նըմին
Զանփորձ բարեաց ամենայնին ,
Զփորձեալս 'ի չարն և ոչ բարին
Եւ զանհամբեր անձն 'ի փորձին :
Զի ոչ արծաթ եմ քուրային
Եւ ոչ ոսկի թէ հրով փորձիմ .
Այլ եմ անագ ըստ կապարին ,
Որ 'ի պարզելըն կորընչին :
Եւ ոչ եմ վէմ յեզըր ծովին ,
Որ 'ի յալեացն անշարժ պահիմ .
Եւ ոչ արմատ ծառոց խորին ,
Որ 'ի հողմոց ոչ տապալին :

Այլ եմ նըման ընկեցեալ նաւին
Տարաբերեալ միջնածովին,
Կամ հողմահար խըռով խոտին
Ի ժամանակս աշնանային։
Այդ մի տանիր 'ի փորձութիւն,
Որ ոչ փորձեալ զոք երկրածին։
Զի քո անփորձ գոլով չարին,
Փորձիմք 'ի մէնջ որպէս ասին։
Այլ 'ի փրկել զիս փութացիր
Ի փորձութեանց ըղձմատորին,
Որպէս ըզհայրըն հաւատոյ
Յորոգայթից փորձանաւորին.
Գաստարագել ընդ խընդալին
Զհոգի ըզմիտս եւ ըզմարմին,
Կենդանական զոհ անմահիդ
Հաճոյ եւ սուրբ աստուածային։
Որ ըզկըրեալ ծընեալ զորդին
Իսահակայ եւ Ռեբեկին
Անուանեցեր քեզ սիրելի
Զ Յակոբ փոխեալ յԻսրայէլին.
Ցուցեր նըման զապագային,
Կանգնեալ սանդուխք յերկրէ յերկին
Յոր տէր 'ի նմա բարձր 'ի գլխոյն,
Եւ ելեւէջք հրեշտակային։
Իւրով օծեալ ըզգլուխ վիմին,
Տուն անուանէր տիրականին.

Ի նմանութիւն մեծ խորհրդեան՝
Զոր հոգեկիրքըն ծանուցին,
Գուշակմարգարեաւ յերեկոյին,
Որպէս է գրեալ 'ի սուրբ տառէն,
Եւ ժուժկալեալ յառաւօտէն,
Սակայն յաղթեալ որպէս մարմին:
Եւ ես կրկնեցս առ 'ի բարին
Եւ կատարեալ գոլ 'ի չարին,
Որպէս Եւային նախածին,
Բայց ըստ հոգւոյ գոլով մերձին.
Վաճառականութեամբ անգին գանձին
Վարդին յադամեան որովայնին,
Եւ եղծանողըս կամօքին
Զգիր անդրանկացն որ 'ի յերկին.
Զոր աղաչեմ զլուսոյդ մերին
Զիշխան գաստուցըն հրեղինին,
Բացցին և ինձ դրունք եթերին
Որպէս յայնժամ Խաչակցելին,
Հանցես 'ի վեր զանկեալ հոգիս
Ընդ լուսակազմ աստիճանին,
Որ յօրինակ մարդկան բերին
Յերկրէ յերկինս անդրադարձին:
Օծմամբ անոյշ իւղոյ Հոգւոյն,
Զոր կորուսի խաբմամբ չարին,
Օծցես ըզգլուխ իմ վերջումին
Պահպանական աջով քոյին:

Ոչ ժուժկալեմ դէմ հըզօրիդ
Գօտեկրութիւն ըստ Յակոբին ·
Քանզի տըկար գոլով անձին
Անկայ 'ի քուռն անըրդդամին ·
Այլ կարկառեա զաջդ երկնայնին ,
Հաս 'ի թիկունս ինձ 'ի մարտին ·
Եւ խորտակեա զիմ թշնամին ,
Զի մի կացցէ այլ 'ի յոտին :

Երկոտասան ցեղապետին
Ծընեալ որդւոց նահապետին ,
Դաւաճանեալ մատաղանին
ԶՅովսէփ , 'ի ձեռն Իսմայէլին
Զեղբայրըն իւրեանց վաճառեցին
Ընդ երեսուն դահեկանին ,
Ի նմանութիւն աշակերտին
Դաւաղ նենգաւոր գոլ Յուդային :
Վաճառեցար , տէր , ընդ նորին
Ծառայ 'ի տան Պետափրէին ,
Եւ փըրկեցեր յեղէրպատուհայն
Զհոգի մաքուր ողջախոհին ·
Մըտեր 'ի բանդ Փարաւոնին ,
Տեսիլ ցուցեր 'ի գիշերին ·
Արձակեցեր վըսեմ երազին
Եւ կացուցեր տէր աշխարհին :
Նոյնպէս և ինձ դու գործեցին ,
Որդեքըն մօր զմըղտ նենգեցին ·

Բազմաբեղուն ախտից մեղաց
Վաճառեցին զիս դիւրագին ։
Թէ և լցի զկամըս նորին ,
Անհակառակ գոլով նըմին ,
Սակայն եարկ զիս 'ի բանդին ,
Յանել յանըլոյս արգելանին ։
Այլ որ ըզնա յամենայնին
Ազատեցեր յանյոյս վայրին ,
Եւ զիս փըրկեա , տէր , ընդ նըմին
Ի զանազան ախտից չարին ·
Եգիպտուհի վաւաշոտին
Որ՛ մատնեցայց գարշ պոռնըկին ,
Այն որ սողայ նըման օձին
Ահեղ գոչէ ըստ առիւծին ։
Այլ բարձրացո քան ըզնոսին ,
Եւ տէր կացո յԵգիպտոսին ,
Զի յաղթեցից չար իշխանին
Աններեւոյթ բըռնաւորին ։
սովամահ լինել նոցին ,
Զիս տուն արա կենաց հացին ·
Զի յագեցայց և բաշխեցից ,
Որք են կարօտ անմահ բանին ։
ԶՅոբ յիշեցից զերանելին ,
այն որ յիշման է արժանին ·
Թէպէտ յորդւոցն է յԵսաւին ,
Այլ գերազոյն քան զՅակոբին ։

Այն որ 'ի քէն յոյժ գովելին
Եւ վերկայեալն է 'ի բարին,
Թէ այր արդար և ճըշմարիտ
Եւ կատարեալ յամենայնին.
Զոր բանսարկեր չար Թըշնամին,
Խընդրէր 'ի փորձ պատերազմին.
Որում տուեալ իշխանութիւն,
Ցայտնի լինել քում ծառային:
Նախ զարտաքին ստացուած մեծին
Ջընջէր 'ի սպառ ըզկենդանին.
Ապա զորդիսըն տանեսին
Սպան յապարանս 'ի բազմոցին:
Որոց հասեալ առ Նա գուժին,
Ոչ բանս ասէր Նա մարդկային,
Այլ գոհութիւնս աստուածային
Իմաստութեամբ բըղխէր հոգին.
Տէր, ասէ, ետ ըզմեծութիւն
Եւ տէր էառ որպէս կամին.
Մերկ ելա՛ք յորովայնէ,
Եւ մերկ դընիմք 'ի տապանին:
Դարձեալ վառեալ առ Նա չարին
Զիւր մեքենայս բազմագունին,
Խընդրէր 'ի քէն զնորին մարմին
Տանջել ցաւովք անհընարին:
Որոյ առեալ ըզցանկալին,
Բայց ոչ եհաս յիւր ըղձալին.

Այլ մանրեցաւ ծախող ժանին,
Իբր 'ի պղընձէն կամ յերկաթէն:
Քանզի սաստիկ շարժեաց յախտին
Եւ որդնալից արար զմարմին.
Նըստէր Նեխեալ 'ի մէջ աղբին,
Քերէր քարամբք զշարաւ վիրին:
Բարեկամացն, որ մերձ եկին,
Բանիւք զըզուէր զերանելին.
Այլ և կընոջն անըզգամին,
Զոր զէն առեալ ըստ Եւային:
Եւ այպանօք ոչ շարժեցին
Զանդամանդեայ վէմ հաւատին,
Խօսել բանիւ հայհոյութիւն
Առ տիրականըդ քո բարին.
Այլ գոհանայր ըղքէն 'ի Նմին,
Ու'նդդիմանայր բանից Նոցին.
Մինչեւ եղեւ զըրաւ մարտին
Եւ կատարումըն հանդիսին,
Երեւեցար, տէր, 'ի միգին
Եւ խօսեցար ընդ սիրելին.
Պըսակ եստուր դու յաղթողին,
Խաղաղութիւն յոյժ հիւանդին.
Ըզկենդանեաց ազգ անբանին
Զայն շնորհեցեր Նըմա կըրկին.
Իսկ ըզբնութիւն բանականին
Գործեւեցեր Նոյն միակին:

Եւ այս խորհուրդ ծածկեալ խորին
Ցառաջադոյն անդ ցուցանէին,
Թէ որք մեռան ոչ կորընչին,
Այլ յարիցեն յօրըն վերջին ։
Արդ ես հայցմամբ նահատակին
Եւ համբերող ճըգնաւորին
Առ քեզ կարդամ և պաղատիմ,
Հեղուլ զարտօսըր ցաւագին ·
Զի թէ խընդրէ իմ թըշնամին
Առ 'ի փորձել զիս 'ի մարտին,
Մի՛ տար 'ի ձեռս աւազակին,
Մի՛ մատնեսցես կամաց նորին ։
Զի ես տըկար լուծեալ մարմին,
Հոգիս յօժար բայց ոչ շարժին ·
Անձն իմ խաւար, միտքըս մըթին,
Կամաւ 'ի բանդ կամ 'ի խորին ·
Բայց դու ընդ իմ տարտամս անձին
Մարտիր ընդդէմ ախոյանին ·
Որ ասացեր քաջալերել,
Զի յաղթեցեր չար իշխանին ։
Միայն զկամըս իմ 'ի բարին
Ընկալ փոխան Յոբայ ջանին ·
Եւ ըզպըսակս յաղթանակին
Ինձ պարգեւեա յապագային ։
Որ ըզՄովսէս ըզքանչելին
Զ'ի ծնընդենէ ընտրեալ արին

Փրկեալ 'ի ջուրց հեղձականին,
Մնուցեր 'ի տան Փարաւոնին.
Եւ 'ի լրման ժամանակին
Կրկին ամաց քառասնեկին,
Երեւեցար, տէր, 'ի լերին
Բոցով հրոյ 'ի մորենին.
Փրկիչ ընդ նմա գերեալ ցեղին
Առաքեցեր Իսրայէլին,
Վասն առաջին որդւոց ուխտին
Եղեալ առ հօրն Աբրահամին.
Ի չարձակել Փարաւոնին,
Եդիր ըզնա աստուած Նորին.
Եւ զօրութեամբ գաւազանին
Ետուր Նըմա զբան Նըշանին :
Հարեր զաշխարհ Եգիպտոսին
Տասըն հարուած, որպէս պատմին.
Ցուցամ խորհուրդ զենմանն գառին
Եւ ելք որդւոցն Իսրայէլին :
Բաժանեցեր յերկուս մասին
Զանդունդս խորոց Կարմիր ծովին,
Եւ ըզզօրութիւն լուծականին
Կործանեցուցեր իբր արձանին.
Որպէս ծաղկեալ մարգագետին
Էր Ճանապարհն անդընդային,
Ընդ որ անցեալք ընթանային
Ոչ թանալով զաղշապարին :

Եւ զփարաւոն եգիպտացին ,
Որ զհետ մըտեալ կառօք նոցին ,
Ընկըղմեցեր 'ի մէջ ծովին
Ի յօրինակ Բելիարին :
Իսկ քո ընտրեալ և սուրբ գընդին
Առաջնորդեալ որպէս խաշին ,
Հորդան եսուր յանապատին
Հըրով լուսոյ և սեամբ ամպին :
Եսուր նոցա հաց երկնային
Եւ մանանայ հրեշտակային ,
Տըպաւորեալ ըզքոյդ մարմին
Զ յերկնէ իջեալըն կենդանին :
Հարեր ըզվէմն և բըղխեցին ,
Զերկոտասան վըտակն արբին ,
Ի յօրինակ աղբեր կողին
Իառաքելոցըն քարոզին :
Երրեակ պահօք քառասնեկին
Մովսէս գոլով 'ի մէջ միգին ,
Որպէս կենաց ժամանակին
Ամքըն նորա այսքան Թըւին ,
Ցուցեր զյետոյս քո խորհըրդին
Թագուցելոյն 'ի փապ վիմին :
Հեղեր ըզլոյսդ անճառելի
Ի հողեղէն դէմըս նորին ,
Առեալ զօրէնսն 'ի տախտակին
Գըրեալ մատամբդ աստուածային

Վասն անօրէն ւանհաւանին
Եւ խլստերախ ժողովրդին.
Զոր խորտակէր նա զաւաջին
Ընդ ալիղծ որթուն զոր կազմեցին,
Առ ՚ի խորհուրդ ծածկեալ իրին՝
Վասն օրինացն որ լուծանին.
Որպէս երկրորդն որ հաստատին
Քոյումեղեալ անշարժ ուխտին,
Որ կայ և մնայ յաւէտ ՚ի սմին
Մինչ ՚ի կատար յաւիտենին:
Հրաման ետուր կազմել նոցին
Ըզգանազան կարգ խորանին,
Ի նմանութիւն աւետարեան վկային
Կամ գերակայ մօր Սիօնին.
Եւ տապանակ կտակարանին
Ցանփտելի փայտից պատեալ ոսկին,
Անապական մարմնոյ քոյին
Խառնուածութեանդ օրինակին:
Եւ զսպասմունքն Ահարոնին
Ըզղեւտական քահանային
Առ ՚ի խորհուրդ հոգեւորին
Զարդարեցեր զերեւելին:
Եւ այսքանեօք բարեգործեալ,
Եւ առաւել քան ըզսոսին,
Սակայն որթուն երկիր պագին
Ու՚ի Բեթլեհեմ զոհ մատուցին:

Ձանձնընդականն ամուլ հոգիս
Բարեաց գործոց հոգեւորին
Վրդովաբերեա ընդ Սառային
Աւետաբեր բանիւ քոյին.
Որ աղօթիւք հայրապետին
Սիրեցերըս Աբրահամին
Ազատեցեր զերգօրորդին,
Հանեալ ըզՂովտ 'ի Սոդոմին,
Զիս արձակեա, տէր, ընդ Նըմին
Կապից մեղաց՝ հայցմամբ Նորին,
Ի խորհրդոց սոդոմային
Եւ 'ի գործոց պղծատիրին.
Զի մի' 'ի հուր ծըծըմբածին
Տոչորեցից որպէս Նոքին.
Եւ մի' յարձան մածանեցից
Որպէս ըզկինն 'ի չար դարձին:
Այլ հրամայեա սուրբ հրեշտակին
Յափըշտակել զիս ընդ Նոսին,
Հանել 'ի լեառնըդ երկնային,
Կարգել 'ի դասն ընդ որ կացին:
Ստեղծիչ սըրբոց, տէր, առանձին
Տեսող գործոց և խորհրդին,
Ի փորձ մըտեր առ սիրելին,
Պատարագել քեզ զամլորդին,
Երթալ 'ի մեծ բարձր 'ի լերին
Ի Գողգոթա, որպէս ասին,

Բառնեալ ըզփայտ ողջակիզին
Իւր միածնին ողջախոհին.
Զոր և հանեալ 'ի սեղանին
Որպէս ըզ քեզ, տէր, 'ի խաչին,
Բուռըն հարեալ 'ի սուսերին
Եւ մերձ եղեալ պարանոցին,
Մինչ 'ի վերուստ հընչեալ ձայնին
Թէ մի՛ մըխեր 'ի պատանին,
Այլ հայեսցիս յաջոյ ձեռին
Կախեալ ըզխոյն 'ի սաբեկին:
Զոր փոխանակ բանականին,
Իսահակայ քում ծառային,
Ետուր 'ի զոհ պատարագին
Զանբան ստեղծեալըն կենդանին:
Մի՛ զիս փորձեր, տէր, ընդ նըմին
Զանփորձ բարեաց ամենայնին,
Զփորձեալս 'ի չարն և ոչ բարին
Եւ զանհամբեր անձն 'ի փորձին:
Զի ոչ արծաթ եմ քուրային
Եւ ոչ ոսկի թէ հրով փորձիմ.
Այլ եմ անօդ ընդ կապարին,
Որ 'ի պարզելըն կորընչին:
Եւ ոչ եմ վէմ յեզըր ծովին,
Որ 'ի յալեացն անշարժ պահիմ.
Եւ ոչ արմատ ծառոց խորին,
Որ 'ի հողմոց ոչ տապալին:

Այլ եմ՝ նըման ընկեցեալ նաւին
Տարաբերեալ մէջ ծովուն,
Կամ հողմահար խըռուիւ խոտոյն
Ի ժամանակս աշնանայնոյն :
Արդ մի՛ տանիր 'ի փորձութիւն,
Որ ոչ փորձեալ զղջ երկրածին :
Զի քո անփորձ գոլով չարին,
Փորձիմք 'ի մէնջ որպէս ասին :
Այլ 'ի փրկել զիս փութացիր
Ի փորձութեանց բըռնաւորին,
Որպէս ըզհայրն հաւատոց
Յորոգայթից փորձանաւորին.
Պատարագեալ ընդ խընդալին
Զհոգին ըզմիտս և ըզմարմին,
Կենդանական զոհ անմահին
Հաճոյ և սուրբ աստուածային :
Որ ըզկըրսեր ծընեալ զորդին
Իսահակայ և Ռեբեկին
Անուանեցեր քեզ սիրելի
ԶՅակոբ փոխեալ յԻսրայէլին.
Ցուցեր նըմա զապագային,
Կանգնեալ սանդուխք յերկրէ յերկին
Յոր ասէր 'ի նըմա բարձր 'ի դիտոյն,
Եւ ելևէջք հրեշտակային :
Իւղով օծեալ ըզգլուխ վիմին,
Տուն անուանէր տիրականին .

Ի նմանութիւն մեծ խորհրդին՝
Զոր հոգեկիրքըն ծանուցին,
Գուշակաբանեալ յերեկոյին,
Որպէս է գրեալ 'ի սուրբ տառին,
Եւ ժուժկալեալ յաստուածային,
Ծակայն յաղթեալ որպէս մարմին :
Եւ ես կերակրես առ 'ի բարին
Եւ կատարեալ գոլ 'ի չարին,
Որպէս Եսաւըն նախածին,
Բայց ըստ հոգւոյ գոլով վերջին.
Վաճառականութ անդրէն գանձին
Վասըն յաղթման ոտավայնին,
Եւ եղծանողըս կամօքին
Զգիր անդրանկացն որ 'ի յերկին.
Զոր աղաչեմ զայդօրդ վերին
Զիշխան գաստուցըն հրեղինին,
Բացցին և ինձ դրունք եթերին
Որպէս յայնժամ Իսրայէլին,
Հանգչեա 'ի վեր զանկեալ հոգիս
Ընդ լուսակազմ առաքճանին,
Որ յօրինեալ մարդկան բերին
Ցերեկըն յերկինս անդրադարձին :
Օծմամբ անդուլ իւղոյ Հոգւոյն,
Զոր կարօտիմ խաբմամբ չարին,
Օծցես ըղձալուն իմ վերջասին
Պահպանութեան ապով քոյին :

Ոչ ժուժկալեմ զէմ հըզօրեղ-
գունէկըռուիւ ըստ Ցանկութին .
Քանզի տըկար գոլով անձին
Անկայ 'ի քուն անըղզամին .
Այլ կարկառեա զաջըդ երկնային ,
Հաս 'ի Թիկունս ինձ 'ի մարտին .
Եւ խորտակեա զիմ Թշնամին ,
Զի մի կացցէ այլ 'ի յոտին :
Երկոտասան ցեղապետին
Ծընեալ որդւոց նահապետին ,
Գուանձանեալ մետասանին
Զ Յովսէփ , 'ի ձեռն Իսմայէլին
Զեղբայրըն իւրեանց վաճառեցին
Ընդ երեսուն դահեկանին ,
Ի նմանութիւն աշակերտին
Գաղտ նենգաւոր զոր Յուդային :
Վաճառեցար , տէր , ընդ նոցին
Ծառայ 'ի տան Պետափրէին ,
Եւ փըրկեցեր յեգիպտուհւոյն
Զհոգի մաքուր ողջախոհին .
Մըտեր 'ի բանդ փարաւոնին ,
Տեսիլ ցուցեր 'ի գիշերին .
Արձակեցեր վըշտն երազին
Եւ կացուցեր տէր աշխարհին :
Նոյնպէս և ինձ դու գործեցին ,
Որդիքըն մօր գաղտ նենգեցին .

Բազմաբեղուն ախտից մեղաց
Վաճառեցին զիս դիւրագին ։
Թէ և լըցի զկամըս Նորին ,
Անհակառակ գոլով Նըմին ,
Սակայն հարկ զիս 'ի բանդին ,
Ցանկել յանլոյս արգելանին ։
Այլ որ ըղձա յամենայնին
Ազատեցեր յանյոյս վայրին ,
Եւ զիս փըրկեա , տէր , ընդ Նըմին
Ի զանազան ախտից չարին .
Եգիպտուհի վաւաշոտին
Մի՛ մատնեցայց զարշ պոռնըկին ,
Այն որ տայ Նըման օձին
Ահեղ գոչէ ըստ աւխածին ։
Այլ բարձրացո քան ըղձոսին ,
Եւ տէր կացո յԵգիպտոսին ,
Զի յաղթեցից չար իշխանին
Աներեւոյթ բռնաւորին ։
Ի սովամահ լինել Նոցին ,
Զիս տուն արա կենաց հացին .
Զի յագեցայց և բաշխեցից ,
Որք են կարօտ անմահ բանին ։
ԶՅոբ յիշեցից զերանելին ,
Զայն որ յիշման է արժանին .
Թէպէտ յորդւոցն է յԵսաւին ,
Այլ գերագոյն քան զՅակոբին ։

Այն որ 'ի քէն յոյժ գովելին
Եւ վըկայեալն է 'ի բարին,
Թէ այր արդար և ճըշմարիտ
Եւ կատարեալ յամենայնին.
Զոր բանսարկէր չար Թըշնամին,
Խընդրէր 'ի փորձ պատերազմին.
Որում տուեալ իշխանութիւն,
Յայտնի լինել քում ծառային:
Նախ զարտաքին ստացուած մեծին
Ջընջէր 'ի սպառ ըզկենդանին.
Ապա զորդիսըն տանեսէն
Սպան յապարանս 'ի բազմոցին:
Որոց հասեալ առ նա գուժին,
Ոչ բանս ասէր նա մարդկային,
Այլ գոհութիւնս աստուածային
Իմաստութեամբ բըղխէր հոգին.
Տէր, ասէ, ետ ըզմեծութիւն
Եւ առէր էառ որպէս կամին.
Մերկ ելա՛ք յորովայնէ,
Եւ մերկ դընիմք 'ի տապանին:
Դարձեալ վառեալ առ նա չարին
Զիւր մեքենայս բազմագունին,
Խընդրէր 'ի քէն զնորին մարմին
Տանջել ցաւովք անհընարին:
Որոյ առեալ ըզցանկալին,
Բայց ոչ եհաս յիւր ըղձալին.

Այլ մանրեցաւ ծախող ժանին,
Իբր 'ի պղղինձ կամ յերկաթին ։
Քանզի սաստիկ շարժեաց յախտին
Եւ որդնալից արար զմարմին.
Նըստէր նեխեալ 'ի մէջ աղբին,
Քերէր քարամբք զշարաւ վիրին ։
Բարեկամացն, որ մերձ եկին,
Բանիւք զըզուէր զերանելին.
Այլ և կընոջն անըզգամին,
Զոր զէն առեալ ըստ Եւային ։
Եւ այսքաննօք ոչ շարժեցին
Զանդամանդեայ վէմ հաւատին,
Խօսել բանիւ հայհոյութիւն
Առ տիրականըդ քո բարին.
Այլ գոհանայր ըզքէն 'ի նմին,
Ու'նդդիմանայր բանից նոցին.
Մինչև եղև զըրաւ մարտին
Եւ կատարումըն հանդիսին,
Երևեցար, տէր, 'ի միգին
Եւ խօսեցար ընդ սիրելին.
Պըսակ ետուր դու յաղթողին,
Իառողջութիւն յոյժ հիւանդին.
Ըզկենդանեաց ազգ անբանին
Զայն շնորհեցեր նըմա կըրկին.
Իսկ ըղձութիւն բանականին
Պարգևեցեր նոյն միակին ։

Եւ այս խորհուրդ ծածկեալ խորին
Յառաջագոյն անդ ցուցանէին,
Թէ որք մեռան ոչ կորընչէին,
Այլ յարիցեն յօրըն վերջին:
Արդ ես հայցմամբ նահատակին
Եւ համբերող ճգնաւորին
Առ քեզ կարդամ և պաղատիմ,
Հեղում զարտօսրս ցաւագին.
Զի թէ խնդրէ իմ Թշնամին
Առ 'ի փորձել զիս 'ի մարտին,
Մի՛ տար 'ի ձեռս աւազակին,
Մի՛ մատնեսցես կամաց նորին:
Զի ես տկար լուծեալ մարմին,
Հոգիս յօժար բայց ոչ շարժին.
Անձն իմ խաւար, միտքս մթին,
Կամաւ 'ի բանդ կամ 'ի խորին.
Բայց դու ընդ իմ տարատամս անձին
Մարտիր ընդդէմ ախոյանին.
Որ տասցէր քաջալերել,
Զի յաղթեցէր չար իշխանին:
Միայն զկամեալս իմ 'ի բարին
Ընկալ փոխան Յօբայ ջանին.
Եւ ըզպարսակս յաղթանակին
Ինձ պարգեւեա յապագային:
Որ ըզՄովսէս ըզսքանչելին
Զ'ի ծնընդենէ ընտրեալ այրին

Փըրկեալ 'ի ջուրց հեղձականէն,
Մնուցեր 'ի տան փարաւոնին.
Եւ 'ի լըրման ժամանակին
Կըրկին ամաց քառասնեկին,
Երեւեցար, Տէր, 'ի լերին
Բոցով հըրոյ 'ի մորենին.
Փըրկիչ ըզնա գերեալ ցեղին
Առաքեցեր Իսրայէլին,
Վասն առաջին սըրբոյ ուխտին
Եղեալ առ հօրն Աբրահամուն.
Ի չարձակել փարաւոնին,
Եդիր ըզնա աստուած նորին.
Եւ զօրութեամբ գաւազանին
Եհար ըզծովն ըստ նըշանին:
Հարեր զաշխարհ Եգիպտոսին
Տասն հարուած, որպէս պատմին.
Ցուցեալ խորհուրդ զենման գառինն
Եւ ելք որդւոցն Իսրայէլին:
Բաժանեցեր յերկուս մասին
Զանդունդս խորոց Կարմիր ծովին,
Եւ ըզդըժնութիւն լուծականին
Կործանեցուցեր իւր արձանին.
Որպէս ծաղկեալ մարգագետին
Էր ճանապարհն անդընդային,
Ընդ որ անցեալ ընթանային
Ոչ թանալով զօրշապարին:

Եւ զՓարաւոն եգիպտացւոցն ,
Որ զհետ մըտեալ կառօք նոցին ,
Ընկըղմեցեր 'ի մէջ ծովըն
Ի յորձանս Բելիարըն :
Իսկ քո ընտրեալ և սուրբ գընդըն
Առաջնորդեալ որպէս խաշըն ,
Հորդան ետուր յանապատըն
Հըրով լուսոյ և սեամբ ամպըն :
Ետուր նոցա հաց երկնայըն
Եւ մանանայ հրեշտակայըն ,
Տըպաւորեալ ըզքոյդ մարմըն
Զ յերկնէ իջեալըն կենդանըն :
Հարեր ըզվէմն և բըղխեցըն ,
Զերկոտասան վըտակն արբըն ,
Ի յորձանս աղբեր կողըն
Ի առաքելոցըն քարոզըն :
Երրեակ պահօք քառասնեկըն
Մովսէս գոլով 'ի մէջ միգըն ,
Որպէս կենաց ժամանակըն
Ամբըն նորա այսքան Թըւըն ,
Ցուցեր զյետոյս քո խորհըրդըն
Թագուցեալըն 'ի փապ վիմըն :
Հեղեր ըզլոյսդ անճառելի
Ի հողեղէն դէմըս նորին ,
Առեալ զօրէնսն 'ի տախտակըն
Գըրեալ մատանցդ աստուածայըն

Վասն անօրէն ուանհաւանին
Եւ խըստերախ ժողովըրդին.
Զոր խորտակէր նա զառաջին
Ընդ ախղծ որթուն զոր կազմեցին,
Առ 'ի խորհուրդ ծածկեալ իրին՝
Վասն օրինացն որ լուծանին.
Որպէս երկրորդն որ հաստատին
Քոյում եղեալ անշարժ. ուխտին,
Որ կայ և մնայ յաւէտ 'ի սմին
Մինչ 'ի կատար յաւիտենին:
Հրաման ետուր կազմել նոցին
Ըզգանազան կարգ խորանին,
Ի նմանութիւն պետարեան վիմին
Կամ գերակայ մօր Սիոնին.
Եւ տապանակ կտակարանին
Ցանփուտ փայտից պատեալ ոսկին,
Անապական մարմնոյ քոյին
Իաստուածութեանդ օրինակին:
Եւ զպատմուճանն Ահարոնին
Ըզղեւտական քահանային
Առ 'ի խորհուրդ հոգեւորին
Զարդարեցեր զերեւելին:
Եւ այսքաննոք բարեգործեալ,
Եւ տաւել քան ըզնոսին,
Սակայն որթուն երկիր պագին
Ու'ի Բեղղեքովը զոհ մատուցին:

Զմեծըն Մովսէս դառնացուցին,
Եւ զԱհարոն անարգեցին.
Ընդ Մադիամ խառնակէին,
Զորդիս դիւացըն զոհէին.
Մինչեւ 'ի սպառ բարկացուցին,
Զներող բնութիւնըդ շարժեցին.
Հուր 'ի Յակոբ բորբոքեցին
Եւ բարկութիւն յԻսրայէլին:
Եւ յաւետեաց սուրբ աշխարհէն,
Զոր խոստացար դու տալ նոցին,
Բայց 'ի յերկուց անդր ոչ մըտին
Վասըն մեղացն որ գործեցին:
Արդ եւ ժըխտողս յամենայնէն
Եւ համեմատ չարեաց նոցին,
Որ առաւել աւր զպարին
Ունեմ աղերսանս քան ըզնոսին:
Նոցա հերձեր զծով ըղձալին,
Ինձ ըղխաւարըն աղջամղջին.
Յայնժամ ծածկեալ զեգիպտացին,
Եւ աստ զիշխանըն մահածին.
Նոցա 'ի տաւէ ամպ հովանին
Ու 'ի գիշերի սիւն արփենին,
Իսկ ինձ է լոյս իմաստ բանին
Եւ հովանի է սուրբ Հոգին:
Անդ մանանայ լուծանելըն,
Զի ոըք կերան մեռանէին.

Եւ տատ մարմին քո երկնային,
Որ կեանըս տայ ճաշակողին ։
Նոքա արբին Ջուր վիմածին,
Եւ ես զարիւն վիմիդ կողին ։
Նոցա կախեալ օձ պղընձին,
Եւ ես տեսի զկեանդ 'ի խաչին ։
Նոցա օրէնքըն Մովսէսին
Գրաւորականն 'ի տախտակին,
Եւ ինձ հոգւոյդ իմաստութիւն
Աւետարանիդ աստուածային ։
Վասն այսորիկ յայժմ պահանջին
Քան ըզնոցունց յինէն բարին.
Որպէս առաւել է ծառային,
Գիտող կամաց ուոչ գիտողին ։
Նոքա յուսկւոյ որթ կազմեցին
Եւ քո փոխան երկիր պագին,
Եւ ես 'ի սէր հիւթանիւթին
Խոնարհեցայ յանցյաւ ախտին.
Նոքա քաղցեալ տըրտընջէին
Վասըն հացի յանապատին,
Եւ ես ըղձմամբ հարկաւորին
Միշտ 'ի խընդիր աւելորդին.
Նոքա զերկիր շաղախէին
Պոռնըկութեամբ Մադիամին.
Եւ ես զհոգիս իմ երկնային
Աղտեղեցի գործովք չարին ։

Բայց որ քաւիչ եղեր նոցին ,
Տէր իմ գըթած Հօր միած ին ,
Եւ դարձուցեր ըզշնորհութիւն
Հայցմամբ մեծի մարգարէին ,
Անցո յինէն զաններելին
Ըզպատուհասն որ ինձ պահին ,
Եւ պարգեւեա զըղջումն անձին
Եւ թողութիւն անցեալ յանցին ։
Մի՛ արգելցես զիս ընդ բազմին
Յաւետարեր յերկրէ քոյին .
Այլ ընդ երկուցն , որ անդ մըտին ,
Մոյծ զիս յաշխարհըդ քո վերին ։
Որ ըզՅեսու որդի Նաւին
Ընտրեալ իշխան յետ Մովսէսին ,
Այն որ սընեալ'ի խորանին ,
Եւ 'ի լերինն էր ընդ Նըմին ,
Անուանակիրն ըզքանչելին
Անուանըդ քում փըրկականին .
Որում Ովսէ Նախ կոչէին ,
Եւ զկնի Յեսու առձայնէին ։
Որ յաղթական գոլ'ի մարտին
Ընդդէմ ժըպիրհ Ամաղէկին ,
Մինչ տարածմամբ Մովսէս ձեռին
Գոյր օրինակ քեզ'ի խաչին .
Որով զորդին Իսրայէլին ,
Զայն որ ծընան յանապատին ,

Ածեր յաշխարհըն Գաղեատին
Ըստ քո խոստման անստուտ բանին ։
Ընդ Յորդանան անցանէին
Տապանակաւ կտակարանին ․
Ջուրքն 'ի յակունսըն դառնային
Ի յօրինակ մարդկան ազգին ։
Պարիսպքըն եւթն Երիքովին
Ի նմանութիւն խոր դըժոխին ,
Եւթնիցըս շուրջ գալով նոցին ,
Զերթ ջուր հեղեալ կործանէին ։
Եւ զթագաւորըս եւթն ազգին ,
Որ երեսուն թըւով էին ,
Հարեր նովաւ զամենեսին
Կախեալ զփայտէ նըշաւակին ։
Զարդարընթաց շարժումն արփին
Զարեգականն լուսաբերին
Կացոյց հանդէպ Գաբաւոնին ,
Զլուսին ձորոյն Եղոնին ։
Եւ այլ բազում որպէս պատմին
Հրաշագործեալ յայնմ աշխարհին ․
Զոր վիճակեաց ցեղից նոցին ,
Ինք ժամանեաց հարցն առաջին ։
Արդ ճըշմարիտ զօրինակին
Հոգւոյ փըրկչիդ՝ զմարմնականին
Ցաղերս ածեմ վասն իմ անձին
Զարդարութեան գործոց նորին ։

Թէպէտ և ոչ նըման նըմին
Արխացայ ընդդէմ չարին,
Այլ մեղկացայ յապաշխարելին,
Եղէ հանգոյն վատ ծառային.
Բայց ձեռըն տուր յիմում մարտին
Ընդ անմարմնին Ամաղէկին:
Զրգամամբ ձեռին քո 'ի փայտին
Ըստ Մովսէսի անդր 'ի լերին,
Հարցես և զեւթն ազգ խորհըրդին
Որպէս Նոյեան զքանանացին.
Զորկորդատեանն և զպատնըկին,
Զարծաթասէրն և զձանձրալին,
Ըզբարկութիւն, ոըրոամականին,
Եւ զնորափառ ախըղծ հըպարտին:
Կարկուտ քարերայ հոսեա նոցին,
Եւ ըղպխծանկ զօրաց քոյին:
Անցո ընդ զետս այս երկրային
Անթաց յախոտից զարշապարին.
Դարձո անդրէն, ուստի ելին,
Յանմահական վայրըն դրախտին.
Պարիսպ մեղաց Երիքովին,
Դըրոամբք փակեալ անյուսալին,
Աղաղակաւ տապալեսցին,
Դրունքն 'ի հնչմանց քանդեալ բարձցին.
Եւ յաւետեացդ յաշխարհ վերին,
Յորում մըտեր նախ առաջին,

Հեռաւեցո հեռոց.քոյին ,
Ժառանգ լինել ինձ վերբառին :
Որ ըստ արդար դատաստանին ,
Որով դատես զազգ երկրածին ,
Խնամեալ պահես բոլորովին ,
Զիւրաքանչիւր ոք ըստ կարգին ,
Ընտրեալ եղեր յԻսրայելին
Յետ Յեսուայ զօրավարին
Ըզդատաւորս ցեղից Նոցին ,
Ըստ օրինաց դատել զնոսին :
ԸզԳեդէոնն յաղթող արին ,
Որ զՄադիամ հարեր Նովին ,
Երեք հարիւր զօրականաւ
Զբիւրըս բիւրուց այլասեռին :
Եւ ըզՍամփսոն անյաղթելին ,
Որ ուխտական յորովայնին ,
Այն որ զգլխակս ունէր մազին
'Սո Հոգւոյն շնորհացըն եւ Թնարփին:
Եւ զայլս ոմանս որ կան 'ի գրին ,
Մինչ 'ի Հեղին յայն ծերունին .
Այն որ մեռաւ բեկմամբ ողին
Վասըն գերեալ տապանակին :
Ահա և յիմըս քաղաքի ,
Զոր շինեցեր ձեռամբ քոյին ,
Եդիր դատել դատաւորին ,
Զհոգիս այրի՝ մըտաց խըղճին .

Բայց ոչ դատեաց ըստ օրինին,
Ոչ գիմացաւ չար ոսոխին.
Այլ մեղկացաւ կամաւ յախտին,
Մատնեաց 'ի ձեռս աւազակին:
Արդ որ փրկիչ եղեր Նոցին,
Ետուր յաղթել հակառակին,
Տացես և ինձ, տէր, յաղթութիւն,
Ընդդիմանալ ատոյանին.
Ուսո դատել որպէս Նոքին
Արդարապէս մտաց զհոգին,
Զի մի' զչետին Նաքարակեան
Գահանջեցայց անդր 'ի բանդին:
Որ Աննայի լուար ձայնին,
Եւ յամլութեանն ետուր զորդին,
Զոր քեզ մատոյց 'ի խորանին
Ընծայ զպտուղ որովայնին.
Եւ ես գոչեմ ձայնիւ Նորին,
Անշարժ շրթամբք խորոց սրտին.
Աղաղակեմ անլըւելի,
Հեծեմ հոգւովս վշտագին,
Թէ զանպտուղս անձն 'ի բարին
Եւ զպտղաբերս գործոց չարին
Պտղաբերեա բարեաց գործովք,
Եւ գոսացո զարմատ գառին:
Զախտս մեղաց ըզբազմածին
Դադարեցո ըստ Փեննային.

Ամուլ հոգւոյս ըստ Աննայրին
Շնորհեա որդիս եւ Թննեբեկին :
Մեռցին անզաւակք իմ երկրային,
Կեցցէ հոգիս իմ վերըստին .
Իջցէ 'ի գուբ չար Թըշնամին,
Եւ զիս հանցես յերկին վերին :
Որ ըզԴաւիթ յեսսէածին
Ցորդիսն եղեալ ծընունդ վերջին,
Մանուկ խարտէշ գեղեցկածին,
Հովիւ խաշանց անբան հօտին,
Օծեր իւղովն որ յեղջերին,
Առ 'ի թեկուին որ յապակին,
Ի ձեռըն սուրբ մարգարէին
Սամուէլի տեսանողին :
Ցորմէ հեռէ խաղայր Հոգին,
Եւ հովանի լինէր Նըմին,
Հընչէր Նովաւ զերգ Սաղմոսին
Իմաստապէս 'ի տասնաղին,
Հալածելով զայսըն ձայնիւ,
Որ հարկանէր 'ի Սաւուղին :
Մերժէր զգազանսն երեւելի,
Զարջ և զառեւծ 'ի միասին .
Եւ 'ի խըմբել պատերազմին
Ճակատ ընդդէմ Իսրայէլին,
Վանէր Նովաւ գու ըզնոսին
Առանց զինու պատերազմին .

Քանզի պարտիւ հովուականին
Դոյզըն քարիւ հեղեղատին
Հարեր զՃակատ Գողիաթին ,
Բարձեր զնախատ յԻսրայէլին .
Եւ 'ի նեղչացն , յորոց հասին
Բազմադիմի փորձանք նըմին ,
Ազատեցուցեր զկեանըս նորին
Եւ կացուցեր գըլուխ նոցին ։
Ով ընտրեցեր զազգն Եփրեմին ,
Ով ըզխորան Մանասէին ,
Այլ զյուդայեան Բեթղահէմին ,
Ցորմէ և դու առեր մարմին ։
Ետուր նըմա պարգեւ կըրկին
Ցոյժ բարձրագոյն քան ըզընաւորին ,
Արքայ օծեալ հրեշտականին
Եւ մարգարէ աստուածային .
Թէպէտ և անց ըստ հրամանին ,
Սխալեաց կամաւ 'ի յերկուսին ,
Պոռնըկեցաւ ընդ Բերսաբէին
Խեհեղ զարիւնն Ուրիային .
Զի յայտ լիցի թէ է մարմին
Խոնի բնութիւն նա մարդկային .
Եւ ոչ օտար կամ երկնային՝
Այլ 'ի ծնընդոց հողեղինին ։
Նա և 'ի յոյս յանցաւորին ,
Ետուր գըլթել յայնժամ մեծին .

Զի մի՛ մեղօք անյուսասցին ,
Այլ որպէս նա փութով դարձցին ։
Եւ զիս առնէր մարդ հողածին
Ի յԱդամայ որդւոց վերջին ,
Ծընունդ գոլով գեհերային ,
Ախտիւք բերեալ և ախտային .
Ծընար անախտ զիս վերընտին ,
Սանդղեր նորոգ յաւազանին .
Օծեր իւղով քո երկնային
Ցորդեգրութիւն Հօրդ վերին ։
Բայց ես անկայ յախտըս կըրկին ,
Եղեալ ծընունդ մեղսատիրին .
Զօծումըն սուրբ աստուածային
Աղտեղեցի գործովք չարին ։
Արդ պաղատիմ երգով նորին ,
Հայցեմ՝ ի քէն ըստ Սաղմոսին .
Սիրտ սուրբ հաստեա յիս վերըստին ,
Ցորովայնիս զուղիղ հոգին .
Ինձ լսեցո զլուր քո ձայնին
Զուրախարարն և զցընծալին ։
Ցորժամ հընչէ փողն ահագին ,
Ազդել յոսկերս իմ ցաւագին ,
Տէր , 'ի մեղաց դարձո զհոգիս ,
Պատուհասցն իմոց գիր ջընջեսցին .
Եւ յարիւնէ գոյն յորդանին
Մաքրեա զիմոց և յօտարին ։

Ցայնժամ հոգւոյս շըրթունք բացցին ,
Բերանս օրհնել արժանասցին ·
Եւ զուարակիդ զենարանին
Հաղորդ գըլխայց պատարագին ։
Որ յօրինակ քեզ ընտրեցեր
Զորդի մեծի մարգարէին
ԸզՍաղոմն , խաղաղութիւն ,
Ի քէն բերեալ երկնաւորին ։
Նա 'ի հօրէն իւր սեփհական
Զաթոռն առեալ ըղհայրենին ,
Որպէս և դու Հօր միածին
Ոչ յօտարուստ կամ արտաքին ։
Տաճար շինեաց նա երկրային ,
Դու ըղքնութիւնըս մարդկային ·
Նըմա տըւաւ իմաստ բանին ,
Բայց դու տըւող անճառ շնորհին ·
Նա ժողովող յոգն իմաստին
Անուանեցաւ յԻսրայէլին ,
Իսկ դու զցըրուեալ ազգ երկրածին
Ժողովեցեր 'ի միասին ·
Նըմա դըշխոյն հարաւային
Եկն 'ի տեսիլ ըղձմամբ սըրտին ,
Քեզ քաւանկին կողմ աշխարհի
Անտեսաբար երկիր պագին ։
Եւ ես շնորհաց քոց ընդ նըմին
Եղէ ստացօղ մի քանքարին ,

Ոչ պահելով զայն ընդ վատին ,
Այլ կորուսի ըզգըլուխ Նորին :
Զի որպէս Նա զփառս անեղին
Փոխեաց փառաց եղծականին ,
Նոյն ես ըզլոյս շնորհաց քոյին
Փոփոխեցի ընդ խաւարին :
Արդ եթէ Նա վասըն յանցին
Տուժիւք պատժեալ յօրէնակին ,
Զի՞նչ ունիմ յոյս Թըշուառս անձին
Կորուսողիս ըզճըշմարտին :
Եւ թէ Նորա զօղ Թողութիւն
Երկբայելի զըղջմամբ սրտին ,
Ինձ արդարեւ անյուսալի
Բարկացելոյդ Հօր հաշտութիւն :
Բայց որ գըթած ես ամենից ,
Հեղ յիս ըզտէր շնորհաց քոյին :
Իմաստութիւն Հօրըդ վերին ,
Իմաստնացո զիս յերկոսին ,
Յարդիւնարար գործականին
Եւ 'ի յիմաստ տեսականին .
Զի կարացից լուսով շնորհին .
Երկու աչօք նայել յերկին :
Քանզի է սկիզբն իմաստութեան
Երկեւղ քո սուրբ ըստ Առակին .
Եւ գիտութիւն , առանց Նորին ,
Առիթ չարեաց է ունողին :

Այսուիկ բազումք յանդիմանեն ,
Եւ Սադոմին նախ առաջին :
Սոյն իմս և խուն իմաստութիւն ,
Անօգտակար առանց սանձին :
Թողից զյօղողս որ ըստ կարգին ,
Զի ոչ ներբէ բանըս բազմին .
Ըզմարգարէս և զԹագաւորս
Եղեալ'ի տան հրէաստանին ,
Որ 'ի յերկուս եղեալ բաժին
Ի Յուդային և յԵփրեմին :
Զի և գիրք սուրբք աստուածային
Յառաջագոյն մեզ պատմեցին ,
Զիւրաքանչիւր վարըս նոցին
Ի զգուշութիւն մեզ ծանուցին .
Զոմանց բարեաց վըկայեցին ,
Զի յօրինակ մեզ եղիցին .
Զայլոց ըզչար վըկայեցին ,
Զի մի՛ նըման լիցուք նոցին :
Եւ ես մերժեալ յինէն զբարին ,
Չբերի զբաւացըն տեսլ յանձին .
Այլ ընտրելով զներհակ նորին ,
Եղէ նըման յոյժ վատթարին :
Բայց քեզ գոչեմ զաղերս բանին
Եզեկիայ թագաւորին ,
Ի նեղութեանց փրկել կըրկին ,
Որպէս և յայն ժամ ըզնախն

Ի յԱստուծոյ ընտանաւորէն
Ի սպառնալեաց Ռափսակէն ,
Եւ 'ի յախտիցըն սատակագին
Հայցմամբ մեծի մարգարէին ։
Հարցէ 'ի սգաւ սուր հրեշտակին
Ըզբազմութիւն լեգէոնին
Զանմարմնականս ուրք 'ի մարմին
'Դ եկեղեցւոյ քում մարտընչէին .
Եւ զախտ մեղաց մահաբերին
Տագնապելոյս Ջերմամբ նոցին
Բարձցես յինէն , հըզօր , դիւրին
Որպէս կարող յամենայնին ։
Դարձո ըղստուեր երեկոյին
Ի լոյս կենացդ առաւօտին ,
Որպէս նուաւ օր ձգեալին
Դարձեալ եղեւ տիւ երրակին .
Որ էր նշան երեք լուսոյ
Երրորդութեանդ երրեակ անձին .
Նա և ծագման քո և դարձին
Եւ զալըստեան 'ի յերկրորդին ։
Բայց իմ բարձեալ՝ որպէս նորին՝
Աւուրք կենաց հոգեւորին ,
Մերձ եմ 'ի դրունս դըժոխոց ,
Եւ աւուրք մահու զիս ծածկեցին .
Ի յիշատակ Թողում յետ իմ
Զհամբաւ չարեաց զպարտաւս անձին,

Կամաւ մատնեալ չար ստախին ,
Որ 'ի յառաւեւծ նըշանակէին .
Այն որ մանրեաց զոսկերս խորին ,
Եւ խորտակեաց զխորհուրդ սրտին
Ի ծնընդենէ առաւօտին
Մինչ 'ի գիշեր մահու ստուերին :
Եւ ես տըկար որպէս ծիծեռան ,
Անդիմադարձ իբր աղաւնին ,
Տեսեալ ճըչեմ առ Թըշնամին
Նըւաղ ձայնիւ որպէս մընչիւն :
Զաչս 'ի լուսոյ խաւարեցին ,
Եւ կուրութեամբ զիս տուժեցին .
Ցաշխարհ նայել ինձ ուսուցին
Եւ ոչ 'ի լոյսդ աստուածային :
Արդ ինձ շնորհեա , տէր , ընդ նըմին
Մերժել յախտից ցաւոց անձին .
Դարձո զմեղացըս դառնութիւն
Ի քաղցրագոյն խաղաղութիւն :
Ընդ որս և զիմ փոխարկեսցես
Ի պըտղաբեր զամուլ հոգին ,
Առ 'ի ծնանել զարդարութիւն
Զորդիս լուսոյ հոգեւորին .
Զի անդադար քեզ օրհնութիւն
Մատուցանեմ մինչ 'ի մարմին ,
Եւ ընդ հրեշտակս յապագային
Փառըս հընչել 'ի տաճարին :

Եւ ընդ ամաց երից հընգին ,
Զոր յաւելեր կեանըս նըմին ,
Շնորհեա և ինձ զանթըւելին
Յանզըրաւական յաւիտենին :
Զայնիւ մաղթեմ Մանասէին
Զըղջացելոյ յանցաւորին .
Որ ըղպատկեր չորեքդիմին
Կանգնեաց 'ի տան սըրբարանին .
Եհեղ զարիւն մարգարէին ,
Սղոցիւ հերձեալ նըման փայտին .
Եւ ինքն էառ զդարձուած չարին ,
Կապեալ յերկաթ 'ի տան բանտին :
Գոչէր լալով պըրմամբ սըրտին ,
Արտասուելով Ճախճեալ անձին .
Աղաղակէր յաղերս բանին ,
Բախէր ըղկուրծս ողորմագին .
Ամենակալ առեղծող գոյից ,
Տէր և Աստուած Աբրահամին ,
Իսահակայ քում ծառային
Եւ Յակոբայ սըրբասիրին :
Որոց չեղիր ապաշխարել ,
Զի վէրք մեղաց ոչ ունէին .
Այլ իմ ցաւոցս է սպեղանին ,
Զի քան զաւազ շատ է զծովին :
Չեմ արժանի նայել յերկին ,
Զի կափուցի զաչս 'ի բարին .

Եւ կորուսցայ յաշխարհ ստորին,
Կապեալ մեղօք իմր յերկաթին:
Ես կանգնեցի զպատուկեր չարին
Հանդէպ աչացս ըղձալից ախտոին.
Այժմ 'ի խոնարհ քեզ արկանեմ
Ծունր ըղձընդաց եւ ըղսըղոտին:
Հայցեմ անձամբքս ցաւագին,
Լեզուաւ ասեմ, մեղայ յերկին.
Թող ինձ, տէր, թող մինչ 'ի մարմին,
Զի մի՛ կորեայց 'ի մեղս անձին.
Մի՛ դատեցայց ընդ սատանային
Ընդ փայլականըն ստորանեկին.
Այլ ընդ զուարթունսն արժանացայց
Փառաւորութեան անվախճանին:
Ցաղերս բանի քեզ ընդ բազմին
Ըղձակս ածեմ զՆողղխային.
Զայն որ յերկրի էր երկնային,
Իբր անմարմին կոյս 'ի ստուերին.
Որ կերպակրիւր 'ի յանձաւին
Ի յագռաւուց բերեալ հացին.
Ըրրջէր մորթովք մեռեալ մաշկին
Մոլորական յանապատին.
Զիջավանեալն առ կինն այրի
Եւ զլխուլթեան շնորհօղ նըմին,
Ի յօրինակ կենաց հացին
Եւ օծութեան Հոգւոյդ շնորհին.

Զփակօղ բանիւ քոյով զերկին
Եւ ըզբացօղըն յետ զոհին.
Զոր 'ի սեղան ողջակիզին
Լըւար Նըմա հրով երկնային.
Այն որ անձրեւ յետ երաշտին
Իջոյց Նըման Եղման քոյին ,
Որով պաքեալ ազգ մարդկային
Զցօղըն կենաց Հոգւոյն արբին:
Ի սպառնալեացն Եզաբէլին
Փախեաւ պահօք քառասնօրին.
Զի տկարութիւն բնութեան յայտնին
Թէ չէ օտար հողանիւթեն :
Եւ 'ի Քորեբ ըստ Մովսեսին ,
Եմուտ 'ի յայրն ըստ հրամանին.
Էառ զհընչիւն սաստիկ հողմին ,
Նըման անցեալ Ջըրհեղեղին :
Եւ տես և զհուրըն Սոդոմին,
Յորում դու ոչ , տէր , 'ի նոսին.
Զի բարկութեամբ հանդերձ էին
Եւ ոչ սիրոյ ցուցման մեծին :
Լըւաւ և ձայն ըզքաղցր օդին ,
Ի տիպ խըման քո մեղմագին.
Որ զհեզութեան գալըստ քոյին
Նըշանակէր յամըս վերջին :
Զնոյն որ մաշկեաւ մեռեալ ախտին
Զեղիսէոս կոչեաց յանդին ,

Որպէս և դու զՎէմ հաւատոյն
Եւ սուրբ զորդիսըն Զեբեդեին,
Եւ զՅորդանան ցելեալ նովին ,
Անցին ցամաք ըստ Յեսուին ։
Հրեղէն կառօք հաներ յերկին .
Զհոգին ետուր միւսոյն կրկին .
Որ համբարձման քո գուշակին ,
Տալ ըզՀոգին մետասանին .
Եւ քո փոխան լինել նոցին ,
Եւ յետ նոցա որք ըստ կարգին .
Զի որպէս նա վարդապետին
Եղեւ նըման ամենեւին ,
Եւ քեզ ընտրեալքըն յաշխարհէ
Ի գործ հրաշից նըմանեցին ։
Նա մաշկեկաւ ախտածեալ շնորհին
Եհերձ ըզՋուրըն Յորդանանին .
Սոքա զմեղաց ծովըն հերձին
Քարոզութեամբ կենաց բանին ։
Նա ըզմանկունսըն Բեթելին
Տապաստ էարկ վասն այպանին .
Սոքա ըզծնունդ մեղաց չարին
Սըրով Հոգւոյն կոտորեցին ։
Նա յամլութեան շնորհեաց զորդին ,
Զոր և յարոյց ըզմեռեալ դին ,
Գալստին առ նա եւթանեկին ,
Ըստ գալըստեան քո 'ի յութին .

Եւ յետ մահուն կենդանութիւն
Ետուն ոսկերքն 'ի տապանին ,
Ի տիպ մահուան քո 'ի վիմին ,
Որով յարեաք մեք վերըստին :
Սոքա զամուլ զեկեղեցին
Ի բազմածնունդ փոխարկեցին ,
Եւ ըզմեռեալըս յարուցին
Ի յարութեան հաւատ վերջին .
Նա զդառըն ջուրն Երիքովին
Փոխեաց 'ի քաղցր արկմամբ աղին.
Սոքա 'ի քէն աղ անուանեալ,
Զանհամ բնութիւնս անուշեցին :
Նա զՆէեման դամասկացին
Յորդանանու սըրբեաց յախտէն .
Սոքա ըզսեռըս մարդկային
Աւազանին ջուրբ մաքրեցին :
Արդ.քեզ հաճոյ վարուք սոցին
Զիմ փոփոխեա զվարս 'ի բարին ,
Եւ փոխադրեա յերկրէ յերկին
Զհոգիս մարմնով յապագային :
Հայցմամբ կառօք ամբարձողին ,
Զոր 'ի Թաբօր բերեր լերին ,
Հանդերձելոց հանդերձողին
Կարապետ քո յերկրորդին ,
Այլ հոգւոյս տուր լիութիւն ,
Որպէս նոցօք առ երկոսին .

Եւ մաշկեկեաւ մեռելութեան
Անցո ընդ գետս այս երկրային :
Ըղձանն որակ մեղաց համին
Փոխեա 'ի քաղցր և 'ի բարին
Անապական աղբիւ բանին ,
Զոր յիս արկցես ըստ առակին :
Ցարտ զհոգիս մեռեալ յախտին .
Որպէս նոքօք զերիս մարմին .
Մաքրեա ըզզօր մահու մասին
Ըստ Ասորւոյն Նէեմանին .
Զիս վերածեա ըստ տապարին ,
Փայտիւ քոյոյ կենաց կարթին .
Եւ բիբք աչաց հոգւոյս բացցին ,
Ըստ պատանւոյն յիմանալին :
Տուր աղեղամբ ինձ հըզօրին
Հարուլ ըզսիրտ Բելիարին ,
Որպէս և նա 'ի վախճանին
Նետիւք նըշան ետ արքային :
Ինձ յօրինակ պարտ է յիշել
Ըզգերութիւն Բաբելոնին :
Ցորժամ զուխտիւ սուրբ օրինին՝
Զոր ստացեր նոցա՝ անցին ,
Ածեր պատիժ 'ի ծոց նոցին ,
Ցաւուր վրիժուց գըլթել ոտին՝
Ըզպատանական լըցեալ բանին ,
Զոր աւանդեաց Մովսէս նախկին :

Քանզի արքայ քաղդէացին
Եմուտ յերկիր հրէաստանին.
Զերուսաղէմ տապալեցին ,
Զորդիս նորա խողխողեցին .
Զտաճարըն սուրբ հրով լուցին ,
Ըզսրբութիւնսըն պղծեցին .
Եւ զօրհներգուսըն Սիոնին
Ի գերութիւն խիստ վարեցին .
Որք 'ի յուռիսըն կախէին
Սուրբ զերգարանըս տաճարին ,
Եւ անդադար նըստեալ լային
Միշտ առ գետով Բաբիլոնին :
Նոյնպէս և զիմ քաղաքս առին
Խառնակութիւնք ախտասիրին ,
Անմարմնական զօրքըն չարին ,
Որ 'ի Բաբել նըշանակին :
Զմատունս երիս տիրականին
Ախտից սըրով խողխողեցին ,
Եւ ըզքառեակ ծընունդ սորին ,
Որով մատունք իւր յարգարին ,
Ի գերութիւն տարագրեցին
Յօտար աշխարհ այլասեռին .
Ի յարածել զերամ խոզին
Յայսմ աշխարհի ապարանքին :
Եւ 'ի տաճարս աստուածային ,
Յորում բնակեաց քո սուրբ Հոգին ,

Ըզհուր մեղաց բորբոքեցին ,
Կիզմամբ ախտից տոչորեցին ։
Զայգւոյս տնկեալ աջով քոյին
Եւ մշակեալ Հօր քո ձեռին
Զցանկըն քակեալ յատակեցին ,
Կըլթեն անցորդք ճանապարհին ։
Այլ որ զգերեալըն Սիոնին
Յետ դարձուցեր 'ի հայրենին ,
Շինել զտաճարըն վերըստին
Պայծառ և շքեղ քան զառաջին ,
Դարձո և զիմըս գերութիւն՝
Որպէս և զուխտըն հարաւին՝
Յօտարոտի երկրէ չարին ,
Զմիտըս գերեալ ըստ երգողին ·
Որք 'ի յերթալն իմ ողբային
Մինչ ըղսերմանսըն տանէին ,
Դարձեալ 'ի գալըն ուրախացին
Յարդիւնաբեր հունձս որային ։
Հատո զըրացեացըս եւթնեկին
Ընդ բիւր չարեացն 'ի ծոց նոցին ·
Ըզպապանելոյս շահեա զհոգի ,
Խընդրեա զարիւնըն զոր հեղին ։
Այլ և զըստեր Բաբիլոնին
Թըշուառական և զըժնէին
Հատո փոխան 'ի ծոց նոցին ,
Զոր 'ի սկըզբանցն ինձ արարին ։

Հրզօր, տուր ինձ լինել ուժգին,
Եւ 'ի դիմի հարուլ չարին.
Առնուլ զոտից մանկանց նորին
Եւ հարկանել զկարծըր վիմին.
Ասել ըզղքան մարգարէին
Ընդդէմ մահու բռնաւորին.
Ո՞ւր, ասէ, մահ՝ քո յաղթութիւն,
Կամ ո՞ւր, դըժոխք, խայթոց քոյին.
Մինչ դարձուցես առ հայրենին,
Ուստի անկաւ մարդն առաջին,
Ի փափկութեան Ադին դրախտին
Յանմահական և յերկնային:
Հայցմամբ մաքուր յորովայնին
Երեմիայ մարգարէին,
Եւ քրովբէից տեսանողին
Ձեռըդ 'ի վերայ Քոբար գետին.
Որք ընդ գերեալսն ընթանային
Որպէս հովիւ ըզկնի հօտին,
Զի մի՛ յանդիւտ մոլորեսցին
Եւ զահավէժ հոգւով լիցին:
Նա և յոգունց համանմանից,
Որք յայնմ էին ժամանակին,
Քոյին Հոգւով տեսանէին
Եւ զապագայսըն պատմէին.
Ովսեայ բարւոյ սերմանողին,
Եւ Ամովսայ քարոզողին.

Մխքեայ ըղձնունդ քո տեսողին
Ի Բեթղահէմ տուն Եփրաթին .
Եւ Յովելայ ողբերգակին ,
Որ 'ի դէմս իմ վայ տայր անձին .
Եւ Աբդիու հոգեկրողին ,
Ընդ որս 'Նաւում Եղկեսացին :
Ամբակումայ զարմանալոյն
Գանձք ելող բարձր 'ի վիմին ,
Այնմ որ զվարսիցըն հրեշտակին
Առեալ բերեր ճաշ 'ի գբին .
Սոփոնիայ հրատարակին ,
Եւ Անգէի քարող բանին :
Յովնանու որսոյ կէտին ,
Եւ Նինուէի մեծ քարոզին ,
Զիս վերածեա , տէր , ընդ նըմին
Յորովայնէ չար վիշապին ,
Հայցմամբ քոյդ օրինակին
Երեքօրեայ թաղմամբ յերկրին :
Զաքարեայ տեսանողին
Եւթնալոյս աշտանակին ,
Այն որ նըստեալ յաւանակին
Զքեզ աւետէր նոր Սիոնին :
Մաղաքեայ՝ որ էր վերջին
Ի մարգարէսն այն առաջին ,
Անուանակիր սուրբ հրեշտակին
Եւ համառօտ գրոցս նորին :

Երից մանկանց Բաբելոնին ,
Աշակերտաց Դանիէլին ,
Անանիայ , Ազարէին ,
Մաքուր մանկան Միսայէլին .
Այնք որ 'ի հուրն անկան հնոցին ,
Զի պատկերին ոչ զոհեցին .
Ցորում իջեր , տէր , առ նոսին ,
Չորրորդ եղեր ընդ երրորդին .
Փոխարկեցեր զբնութիւն հրային
Ի մեղմագոյն ցօղ երկնային ,
Որ բարձրանայր չորրեակ տասին
Ինըն կանգուն յաւելուածին ,
Ի յօրինակ եւթնից եւթին ,
Այսըմ կենաց եւթանց դարին ,
Ցորում զօրէ հուր ախտային
Վառեալ փըշմամբ մեղսասիրին .
Այն որ յաւուր ութերորդին
Բառնի 'ի սպառ գալըստ քոյին ,
Եւ մեղաւորք մեղօք ջընջին
Եւ ամպարիշտք ոչ գըտանին :
Բայց ես մեղօք յայժմուս կիզլիմ
Իբր ըզվառող այնըր հրատին ,
Եւ բարձրանայ յիս բոց չարին
Ցոյժ առաւել քան ըզհնոցին .
Փըրկեա և զիս , տէր , ընդ նոսին
Ցայրեցմանէ չար խորհըրդին ,

Ի կիզմանէ անբնաւկանին
Եւ 'ի հրատից բնութեան ախտին :
Ցօղ քո իջցէ իբր 'ի հնոցին ,
Անձրեւ կենացդ առաւօտին
Զիմ չիջուցէ ըզբոց տապին ,
Փոխարկեսցէ յամպ ցօղագին ·
Եւ զանվաղձան հուր գեհենին՝
Զոր ժառանգեն հրեշտակք չարին ,
[illegible]դառնագոյնն և զխաւարին՝
[illegible]է ծընունդ մեղացն ախտին ,
[illegible]լառեցի անձամբ անձին
[illegible]եցի փորձմամբ չարին ,
[illegible]յինէն հայցմամբ նոցին ,
[illegible]նացո լուսոյդ վերին :
[illegible]ողատանօք մարգարէին
[illegible]անկութեան տեսանողին ,
[illegible]անիխէլի հոգւով ծերին ,
[illegible]արմնով ծերոց կըշտամբողին ,
Զանյայտ տեսիլսն մեկնողին
Բաբիլոնացւոց մեծ արքային ,
Զվեմըն հատեալ առանց ձեռին
Զառ 'ի կուսէն քո ըղմարմին ·
Եւ զգաղջատեան քո օր վերջին
Որպէս տեսեալ ծանուցողին ,
Զհայր հինաւուրց անուանողին ,
Եւ զքեզ ընդ ամպըս տեսողին ·

Եղիազար Մակաբէին
Ինքնանուէր քահանային ,
Եւ ըստ հոգւոյ որդւոց նորին
Եւթըն եղբարց և մօր նոցին .
Որք 'ի վերայ հարցն օրինին
Մարմնով մեռան և ոչ լուծին ,
Եւ զԱնտիոքն երեւելին
Եւ զանմարմինն անարգեցին .
Զիս ազատեա հայցմամբ նոցին
Ի բռնութեանց Բէլիարին ,
Չարչարակցօք քո առաջին ,
Գուշակողաց զխորհուրդ խաչին :

# ԳԻՐՔ ԵՐԿՐՈՐԴ

ԲԱՅՑ այսքանեօք բըժիշկք անձին
Ոչ բուժեցաւ ախտ մարդկային .
Քանզի կարեօք ընութեամբ էին ,
Եւ բըժըշկել ոչ կարացին .
Զի ըստ հըզօր ցաւոց վէրին
Հըզօր դեղոց պիտանային .
Զոր ըզգածեալ տըկար մարմին
Ապաքինել ոչ բաւէին .
Մինչեւ զկենաց դեղդ երկնային
Էարբ ընութիւն մեր ախտային ,
Եհեղ ըզմաղձըն ցաւագին ,
Փոխեալ 'ի կեանսըն յառաջին :
Նախ 'ի Հոգւոյդ աստուածային
Մաքրեալ հոգի սըրբոյ Կուսին ,
Եւ զօրութիւն Հօրըդ վերին .
Հովանացեալ գոլով նըմին ,
Ապա Որդիդ Հօր միածին
Կամաւ իջեալ յորովայնին ,

Ճշմարտապէս եղեր մարմին,
Աստուած և մարդ՝ մի երկոքին.
Ծնեալ մարմնովս մարդկային,
Որ 'ի Հօրէ Նախ անմարմին:
Լուծեր զերկուս նախաստեղծին,
Զտերեւապատն՝ 'ի խանձարուրն.
Բանդ 'ի մըսուրըն յանբանին,
Գոլ կերակուր բանականին.
Լուսոյդ յայտնեալ լուսով աստղին,
Մոգքըն նովաւ երկիր պագին:
Դասք հրեշտակաց իջեալ յայրին,
Եւ սուրբ ծնընդեան քո սպասէին.
Հովուացն ազդեալ աւետէին,
Փառք 'ի բարձունս վերերգէին:
Ըստ նախահարցըն սուրբ ուխտին
Թըլփատեցար յութօրէին,
Զի զանթըլփատ սիրտ մարդկային
Թըլփատեսցես Հոգւով քոյին:
Օրէնադիրդ ըստ օրէնին
Մըտեր յընծայ 'ի տաճարին.
Եւ զհինաւուրցըդ ծերունին
Տըղայ գըրգուէր 'ի սուրբ գըրկին:
Զիս որ մեղօք ծընեալ յախտին,
Ծընար դարձեալ յաւազանին.
Զոր մերկացայ խաբմամբ չարին,
Շաղախեցայ յախտըս կըրկին,

Սրբեա ծնընդեամբ քո վերըստին
Ընծայելով Հօր 'ի յերկին ,
Աղաչանօք Աստուածածնին
Եւ ծերունւոյն Սիմէոնին ։
Որ յերկիւղէ ապաստանին
Մանկակոտոր Հերովդէին ,
Գնացեր յաշխարհ Եգիպտոսին
Ըստ բարբառոյ մարգարէին ,
Զիս յերկիւղէ գիշերային
Մարդախոշոշ բռնաւորին
Ամրացուցես աջով քոյին
Ի գաղտածիգ նետից նորին ։
Որ շրջեցար խոնարհ յերկրի ,
Երկնաւորաց բարձր ահագին ,
Զիս վերացո յերկրէ յերկին
Զանկեալս 'ի մեղս անդընդային ։
Որ յետ լընլոյ երից տասին
Աճման մարմնոյ քո հասակին ,
Զքեզ մըկըրտեաց սուրբ ամըրդին ,
Վըկայելով Հայր և Հոգին ,
Ոչ թէ կարօտ՝ մաքրագունին
Մեզ պարգեւիչ մաքրող բանին ,
Այլ զի ըզմեղս ադամային
Լուասցես ջըրով Յորդանանին ․
Եւ զիմ լըւա զանցանս անձին
Զախտմըն մեղաց սեւագունին ,

Որպէս երբեմն յաւազանին ,
Զոր հնացուցի մեղօք կըրկին ։
Ընդ յաղթութեան քո երրակին
Ի փորձութեան անապատին ,
Տուր ինձ յաղթել չար իշխանին
Աներեւոյթ բռնաւորին ,
Գրնալ բանիւ քո հրամանին
Յուժին վերայ և 'ի քարբին .
Կոխել ոտիւք զարշապարին
Զգլուխ կամակոր վիշապ օձին ։
Ընդ ընտրելոց մետասանին ,
Զոր ընտրեցեր գերաշխարհին ,
Հրաւիրեցեր զիս ընդ նոսին
Լինել կըցորդ լաւագունին ,
Բայց ես հոգւով հեղգըս վերջին
Խոտան գըտայ ըստ Յուդային .
Թէպէտ և ոչ տիրականին ,
Այլ մատն եղէ անձամբ անձին ։
Ի քէն մաղթեմ հայցմամբ նոցին ,
Դարձեալ ուղղել լուսոյ շաւղին .
Առնել գործով զքարոզ բանին ,
Զոր հրամանաւ քո ուսուցին ։
Ի հարսանիսըն մարդկային ,
Յոր կոչեցար ընդ մօր քոյին ,
Փոփոխեցեր զջուրըն 'ի գինին ,
Ի քէն հրաշից նախ առաջին .

Եւ զիմ լուծեալ յախտից բնութիւն
Փոխարկեսցես 'ի կարծրութիւն.
Ցամաքեցո զՋուր հեղեղին,
Արբո զդաժակ պատուիրանին։
Դարձեալ զորդւոյ Թագազարմին
Բանիւ լուծեր զախտըս Ջերմին.
Եւ ես մաղթեմ ընդ հօր Նորին
Զառողջութիւն հիւանդս անձին։
Ելեալ Նըստար բարձր 'ի լերին,
Որպէս երբեմն իջեր 'ի Սին.
Ցամբոյն խօսեալ զօրէնսըն հին,
Զնորս ուսուցեր, Բանդ 'ի մարմին.
Բացեր զբերանդ աստուածային,
Երանեցեր զորս 'ի բարին.
Ընդ տախտակաց տասըն բանին,
Նորոյս ետուր զինն երանին։
Սանդուխք եդեր յերկրէ յերկին
Ինըն մատամբք աստիճանին.
Հաներ Նովաւ զազգ երկրածին,
Դասակցեցեր իննեակ դասին.
Բայց ես այնքան եղէ ստորին
Մեղաց ախտիւք ծանրաբեռին,
Մինչ զի և ոչ ելի ընդ մին
Յաստիճանացն իններորդին։
Չաղքատացայ հոգւով չարին
Արքայութեանըդ պատճառին.

Այլ մինչ փարթամ կամ՚ի նոսին ,
Աղքատ բարեաց ամենեւին ։
Ոչ սուգ էառ հոգւոյ ներքին ,
Լալ արտասուօք զմահ իւր ինքնին ,
Զի ափոփէր յայնմ աշխարհին
Ծիծաղական անուամբ բանին .
Այլ՚ի մնոտի յայս ծիծաղիմ,
Եւ խրախանամ՚ի վնաս անձին ,
Որում և վայն փոխանակին ,
Եւ ատամանց կափմամբ լալիւն ։
Ոչ հեղ բանիւ առ հոմազգին
Խօսակցեցայ ըստ հրամանին ,
Զի ընդ պահօղ սուրբ օրինին
Ժառանգէի զերկիր վերին ։
Ոչ քաղցեցայ արդար հացին ,
Եւ ոչ ծարաւ է յիս բանին ,
Զի յագէի սիրով քոյին
Ի յըմբելոյդ աստուածային ։
Զողորմեցայ ես աղքատին
Իմոյ յուսոյդ կերպարանին ,
Զի յօր մեծի դատաստանին
Ողորմէիր Թըշուառաս անձին ։
Ոչ սըրբեցի յաղօտոյ չարին
Զիմ անմաքուր սիրտ և հոգին ,
Զի տեսութեանցդ աստուածային
Արժանացայց մինչ՚ի մարմին ։

Խաղաղարար հակառակին
Ձեղէ առ իս, ուոչ յօտարին,
Որով որդի Հօրըդ վերին
Լինել ըստ քեզ գործով քոյին ։
Հալածեցայ, բայց տըժգոհիմ
Ի գործակցաց չարախորհին .
Զոր թէ կամաւ, ժառանգէի
Զարքայութիւն քո երկնային ։
Բանիւք բազմօք նախատեցին,
Բամբասանօք զկըծեցուցին .
Բայց ոչ ընդ քո, կամ սուտ նոքին,
Այլ արդարեւ ճշմարտէին ։
Արդ պաղատիմ, տէր, ըղաղգին,
Գիրկս արկանեմ տեառնըդ ոտին .
Թեթեւացո զիս 'ի մարմին
Ի ծանրութեանց մեղաց բեռին,
Զի հնար լիցի հոգւոյս ստորին
Ելից առ քեզ մըտօք յերկին
Ընդ սանտղաձեւ բանըս քոյին
Գոնէ մաստամբք աստիճանին ։
Անապական աղդ երկնային,
Որ յաղեցեր զազգ մարդկային,
Աղ անուանեալ հայցմամբ զընդին
Զիս յաղեցես բանիւ քոյին .
Զանհամութիւնս իմոյ անձին
Համեմեսցես շնորհիւ բանին,

Զի մի՛ անհամ գլրտեալ աղին,
Արտաքս անկեալ կոխան լիցիմ:
  Լոյս 'ի լուսոյ Հօր միածին,
Լուսով լցեր զազգ երկրածին.
Եւ զաշակերտս լուսոյ բանին
Լոյս ասացեր անուամբ քոյին.
Լուսաւորեա լուսով նոցին
Զանգիտութեան խաւարս անձին,
Թէպէտ և ոչ յաշտանակին,
Այլ իբըր Ճրագ ընդ գրուանին :
  Ի նոր օրէնըս հրամանին
Հրամայեցեր զայս ըստ կարգին,
Թէ ով լուծցէ ինքեամբ ըզմին,
Փոքըր կոչի առ արքունին.
Զի՞նչ արասցէ առ այսպիսին
Հոգիս լուծօղ զամենեսին,
Որ և միոյ, թէ քըննիցին,
Չէ կատարօղ պատուիրանին :
  Պահանջեցեր ըզկնի նորին,
Առաւելուլ յարդար մասին
Քան ըզդըպրաց հին օրինին,
Զաշակերտացըն Մովսեսին.
Ես ոչ միայն չեմ յաւելլին,
Այլ և 'ի նուազ համեմատին.
Նա և թափուր ամենեւին
Ի հին և նոր կտակարանին :

Զի պարտաւոր հրոյ գեհենին
Զիս արարի ցասմամբ սրրտին.
Եւ բարկացայ ես ընկերին,
Տարապարտուց շարժեալ յախտին։
Աջօք նայիմ ցանկականին
Ի գեղ դիմաց լրբականին.
Ի սիրտս առնում զխոցուած նետին,
Ոչ զխտելով առ իս ձգողին։
Ոչ շատանամ միով խոցին
Ի միանգամ հայեցուածին,
Այլ յօժարիմ բազմադունին,
Մինչ կարծէր խոցեալ լինիմ.
Եւ այն զի ձայն քո հրամանին
Միշտ 'ի յականջս հընչեալ ուժգին,
Թէ որ հայի տարփմամբ 'ի կին,
Շնացաւ անդէն յիւրում սրրտին։
Ում դատաստանն յայտնի լինին
Ցառաջելոյ քո սուրբ ատենին,
Թէ շունչք և գողք, ուր 'ի կարգին,
Ցարքայութեան քում արտաքսին։
Բայց զի՞նչ ասեմ ըղձոսկալին,
Ըղձարտափուծն իմում անձին.
Զի թէ ատատուստ այդքան տուժին,
Զի՞նչ յանընտանականն որք ախտասցին։
Որով հարեալըս յերկուսին
Ի միահաբեր նետից չարին,

Աղաղակեմ ըստ ախտակրին ,
Դիր դեղ հոգւոյս խոցոյ ներքին .
Յաւչաց մրրտաց զախտից փոշին
Մաքրեա զներքին և զարտաքին ,
Որով յստակ տեսից յերկին
Ըզկերպարանս նախատըպին :
Եւ ընդ լըրոյ տըգեղ բանին ,
Ցունակութիւն լըսարանին
Տըպաւորեա զբան սուրբ տառին
Աստուածախօս կտակարանին :
Դիր պահապան շըրթանց լեզուին ,
Ոչ բարբառել 'ի մըտս անձին .
Այլ միշտ խօսել կամաւ քոյին
Ի շնորհ 'ի շահըս լըսողին :
Ձեռաց շնորհեա գործարանին
Ըզմիտացական գործել բարին ,
Ոչ հեշտական վարել սովին
Ի մըտսակար շօշափելին .
Եւ թէ գըլթեալ գայթակղեցին ,
Տուր հետեւել ըստ հրամանին
Սպանող անձին ըզփրկելին ,
Ի յոչ տուժել բոլորովին :
Զոտըս հոգւոյս ուղղեա յերկին ,
Եւ հաստատեա յանշարժ վիմին ,
Զի մի՛ գլորման բոլորս անձին
Անկման 'ի հուրն անխիթ լինին :

Բերան բացեալ անդուռն ունիմ;
Որով բարիս ոչ բարբառիմ,
Այլ վայրապար դատարկ բանին
Հեռուեցայ մտաստակարին.
Եւ երանի թէ դատարկէին,
Թէ և համար տալ պահանջէին,
Եւ ոչ թունոք մահաբերին
Սուտ և նենգող չարախօսին:
Որ ըստ օրէ քում հրամանին
Լըսեմ ունկամբ մարմնականին,
Թէ մի՛ երդնուլ ամենևին
Ոչ յերկրային և ոչ յերկին.
Եւ իմ խըցեալ զականջս անձին,
Ոչ տամ տեղի և մտաց բանին,
Այլ հակառակ բերիմ նըմին
Եւ անհնազանդ պատուիրանին:
Զի ոչ միայն յաթոռ մեծին
Եւ 'ի սուրբն պատուանդանին,
Այլ որ նըստեալ յերկնից երկին,
Եւ յէակից Հայր և Հոգին.
Զոր ոչ յոգւոյս բղխէ Հոգին:
Այլ է ազդումըն բանաւորկաւին.
Զի քեզ այսոն է ճըշմարտին,
Եւ ոչն 'ի բաց հրաժարելին,
Իսկ աւելին քան զայս չարին
Ի սկըզբանէ մարդասպանին.

Զորս 'ի յիւրոց անտի խօսին,
Որպէս յառաջ 'ի ձեռն օձին ։
Բայց որ եսուր գործի բանին
Զմիտս և զլեզու շունչ օդային,
Բաց ըզգերանս Հոգւով քոյին,
Լից օրհնութեամբ հոգեւորին,
Խօսել յօրէնս աստուածային,
Յաւետարանս Նորոյ կտակին,
Յիմաստութիւն տեսականին
Եւ 'ի խորհուրդ գործնականին ։
Հեռի արա զբան հերձուածին,
Զհայհոյութիւնն աններելին,
Եւ ըզտրտունջն ընդ բամբասին,
Ըզքըրթմընջիւն ընդ շոգմոգին.
Զխաբէութիւնն առ ընկերին,
Եւ զմատնութիւն նենգաւորին.
Զերդմանըն բանն երդմնահարին,
Ըզսուտ խօսելն որ է չարին ։
Ըզզըրդռութիւն կռուասէրին
Իբրեւ ըզշուն առ կերակրին.
Ոյք անհեդեդըս բարբառին,
Ի թըշնամանս միմեանց բերին.
Ըզծաղրածու խեղկատակին
Եւ զախտաշարժ բանըս նոցին.
Զանլուր բերան բազմախօսին,
Եւ ըզսնապարծ բան յիմարին.

Ըզշատախօս զխուականին ,
Եւ զղօղանջիւն զխմագրաւլին ·
Եւ զհամօրէն հոյլըս բանին ,
Որ յետ խօսիցըն զըղջացին ։
Եւ տուր ինձ բան, Բանդ՚ի մարմին ,
Ի միշտ խօսել բանիւ քոյին ·
Ի շնորհըս տալ իմ լըսողին ,
Ի շինութիւն քակտեալ անձին ։
Ոչ մատուցի հարկանողին
Ցետ աջ ծնօտին զկողմ ահեկին ,
Եւ ոչ գնացի ընդ վարողին
Տարապարհակ մըղոն կըրկին ։
Ոչ սիրեցի ըզթըշնամին ,
Եւ ոչ ցուցի գութ ատողին ·
Եւ ոչ ետու փոխ աղքատին ,
Որոց փոխան տալ ոչ ունին ·
Այլ ատեցի ըզսիրելին ,
Զար հատուցի բարերարին ։
Սիրեմ շըրթամբք շարժմամբ լեզուին,
Նըման գոլով Նենգաւորին ։
Ըզգուշացայ ոչ քո բանին
Ցողորմութիւն տալ աղքատին ,
Այլ ծախեցի զնըւազ չընչին
Ընդ մարդկայնոցըս գովեստին ·
Զի ոչ միայն ահեակ ձեռին ,
Որ են կողմանք հակառակին ,

Այլ և փողոց նըման ձայնին
Հըռչակեցի զոչինչ բարին ։
  Ըստ աղօթից պատուիրանին
Զմըտի մըտօք 'ի տուն սըրտին ,
Եւ ոչ յանդեան հրապարակին ,
Գոնէ ունել վարձ մարդկային ․
Այլ հեղգացայ ես յերկոսին ·
Առ կերպարանն և ճըշմարտին ․
Զի ծուլութիւնս յաղթեաց յուսին
Երկրաւորիս և երկնային ։
Արդ ըղձնութեամբ քո Հայր յերկնին ,
Զոր մեզ ետուր շնորհիւ քոյին ,
Տուր ինձ կարդալ բոլորովին
Ի սուրբ սըրտէ զանուն Նորին ։
Արքայութիւն տիրականին
Գայցէ տիրել իմում անձին ․
Եւ յերկրաւորս առ իս լըցցին
Կամըք Նորա որպէս յերկին ։
Զհաց առօրեայ և զմիշտ էին ,
Զմարմնոյս դարման և ըղձանին ,
Տացէ առատ կարօտս անձին
Զիմանալին և ըզգալին ։
Թողցէ զյանցանս իմում պարտին ,
Որպէս և ես պարտապանին ․
Կամ մանաւանդ թէ զերկոսին
Թողուլ տացէ , զի ինձ թողցին ։

Եւ մի՛ տացէ թոյլ փորձողին
Փորձել ըղձոյս որպէս զայլսն ,
Այլ պահեսցէ 'ի սրոյ Նորին ,
Ինք մարտիցէ ընդ դէմ չարին :
Ոչ ճգնեցի պահովք զմարմին ,
Գոնէ հանդոյն կեղծաւորին .
Եւ ոչ Հոգւովն օծի զհոգիս
Իւղով լուսոյ պատուիրանին .
Ոչ լուացի զմիտս խղճին ,
Որ 'ի յերեսս օրինակին .
Այլ պարապատամամբ որովայնին
Լուծի զկանոն սուրբ պահողին :
Աղօտ լուսոյ առօրէիս
Ճըրագ մարմնոյ աչքըս մըթին .
Իսկ աչք հոգւոյս բանականին
Միտքըս նըսեմ խաւարային :
Արդ եթէ զլոյս պատկեր քոյին
Մեղօք փոխեմ գիշերային ,
Խաւարն ո՞ր քան յիս զօրացին
Անկեալն յերկնից Արուսեակին :
Այլ աղաչեմ զլոյսդ երկնային
Զփառաց ծագումնըդ հայրենին ,
Զպատերազմ մըտաց հոգւոյս ճրագին
Դարձեալ վառեա լուսով քոյին :
Երկուց տերանցն , որք ներհակին ,
Ծառայեցի գործովք կըրկին .

Կերպարանօք խսկականնիդ ,
Եւ ճշմարտիւ խաբեբային :
Ի սէր ժլխտող մամոնային
Զիս կապեցի կամաւ յախտին ,
Եւ զքոյդ լուծի առողջային
Ըզկապ սիրոյ պատուիրանին :
Պատուիրեցեր չհօգալ զվաղուին
Ըզկերակուր և զըմպելին ,
Զի պատրաստեալ 'ի քէն լինին ,
Ըստ ագռաւուցն որ կերակրին :
Չհաւատացի խոստման բանին
Եւ ոչ տեսլեամբըն շուշանին .
Այլ ծիւրեցայ հոգովք նոցին ,
Եւ մաշեցի զկեանս ընդ. նոսին :
Ամաց յառաջ ժամանակաւ
Ամբարեցի զնիւթ երկրային ,
Որպէս անմահ մահկանացուին
Եւ անվախճան աւօրէին .
Եւ չխընդրեցի զարքայութիւն
Ըստ հայրօրէն բարւոյ խրատին ,
Զի և տըւեալըք լինէին
Ինձ հարկաւորքն և աւելին :
Մեղօք խաւար տեսարանաւս
Ոչ նըկատեմ յիս զերանին .
Արատես լինիմ այլում շըղլին ,
Նըման գոլով կեղծաւորին :

Ըզորբութիւնն աւազանին ,
Եւ զմարգարիտ քոյոյ շնորհին ,
Շանց և խոզից նըմանողին
Կամաւ ետու պըղծասիրին :
Բայց արդ խընդրեմ զոր ոչ ունիմ,
Տուր ինձ , իմ Յոյս , ըզխընդրելին ·
Հայցեմ 'ի քէն զոր կորուսի ,
Արա գտանել լուսով ճրագին :
Բախեմ ըզդուռնըդ երկնային
Նախ քան զփակելն ընդ դէմ հընգին ·
Զողորմութեան դուռըն բաց ինձ ,
Մինչ դեռ փակեալ է ճըշմարտին ։
Ընդ պողոտայն չոգայ ստորին
Լայն և արձակ ճանապարհին ,
Ի կորըստեանն օթեւանին՝
Ցորում բազումք հետեւեցին ։
Ուղղեա զոտս իմ յանձուկ շաւղին ,
Թեթեւ արա մեղաց բեռին ,
Զի կարացից ընդ սակաւին
Թեթեւ թըռչել ամպով յերկին ։
Մոյծ զիս ընդ քեզ, դուռնըդ վերին ,
Ածցես առ Հայր քո երկնային
Ճանապարհաւ նեղ և նըրբին
Ուղիղ վարուք աստուածային ։
ԱՅԼ որ չարաց ապաշնորհին
Եւ արդարոց որք 'ի բարին

Տաս հաւաստի զցօղ անձրեւին
Եւ ըզծագման լոյս արեւին,
Ինձ՝ որ մեղօք մեռեալ չարին
Եւ ապաշնորհ առ քո բարին՝
Ցօղեա ըզցօղ շնորհաց քոյին,
Եւ ըզծագումն իմանալին ։
Զեկեալքս առ քեզ ըստ հաւատին
Եւ ըզլըսօղ կենաց բանին
Լինել շնորհեա ըստ արժանին
Ի վերայ քո անշարժ վիմին.
Զի 'ի շընչել հողմոց չարին,
Եւ 'ի յառնել գետոց փորձին,
Տանըս հիմունք մի՛ շարժեսցին
Ըստ յիմարին որ յաւազին ։
Այս և ինձ ըստ բորոտին
Եւ հաւատով մերձեցողին,
Կամիմ սրբեաց բոլորովին
Եւ մաքրեցիր յաղտոյ չարին ։
Զինուորեցայ կայսեր սորին
Որպէս և պետըն հարիւրին.
Բարբառեցայց ես ընդ նըմին
Զաղերսական բանըս նորին.
Չեմ արժանի թէ ընդ յարկաւ
Մըտցես ընդ իմըս տաճարին.
Այլ հրամայեա, Բանըդ, բանիւ.
Զախտ իմ մերժեա ընդ ծառային ։

Տագնապեցայ ջերմամբ ախտին
Գոմորական զազրագութին ,
Եւ յանկողինս գարշելիս
Մեղկեալ անկայ զանկանգնելին ։
Ընդ զոքանչի որբոյ Վիմին
Զիս յարուցես , ով հզօրին ,
Զի պաշտեցից ես ընդ Նըմին
Զկենդանատուր իմոյ անձին ։
Աղբեւր կենաց , Ջուր խընդըրեցեր
Սամարուհւոյն 'ի ծարաւին ․
Եւ խոստացար Ջուր կենդանի
Փոխանակել անցաւորին ․
Շնորհեա եւ ինձ կենաց աղբեւր
Ըղձողեալս սուրբ ըմպելին ,
Գետահեղեալ յորովայնէ
Զառատաբուղխ շնորհաց Հոգւին ։
Ընդ բազմամեայ լուծեալ անձին
Պրոբատիկէ աւազանին ,
Յորում եւ ես զոք ոչ ունիմ
Զի զիս արկցէ մինչ յուզեսցին ,
Ասա բառնալ իմոյ մահճին ,
Այս է մարմնոյս Թանձրագունին ,
Ոչ մեղանչել դարձեալ կըրկին ,
Յետ ողջութեան բառ հրամանին ։
Որ 'ի խռովել ալեաց ծովին
Եւ յընկըղմել բարձեալ նաւին ,

Դու սաստեցեր և լռեցին
Ալիք ծովուն հանդարտեցին ,
Տուր և ինձ ձեռն ըստ Պետրոսին.
Վերաբերել յալեաց չարին ,
Զի մի՛ մեղաց շարժեալ ալին
Հեղձուցանէ զիս 'ի նըմին ։
Ընդ դիւատանջըն մոլեգին
Ի գերեզմանսըն բնակողին
Տանջիմ և ես յոյժ ցաւագին
Ի խորհրդոց որ չերեւին ․
Սաստեա և իմ չարագիւին
Որպէս և յայն ժամ առ նաւին ,
Եւ անդընդոց մատնեա խորին
Որպէս ըզխոզս երամակին ։
Որ զանդամօք լուծեալ մարմին
Կարծրացուցեր հոգւով քոյին ,
Շնորհեա և ինձ լըսել ձայնին ,
Թէ մեղք քո թողեալ լիցին ։
Իշխան մըտօք ընդ Յայրոսին
Բուռըն հարից տեառնըդ ոտին ,
Վասըն դըստեր մեռեալս անձին
Ի տուն մարմնոյս մահաբերին ․
Խոնարհեսցիս յիս ըստ նըմին ,
Դադարեցո զձայն կականին ․
Կալ ըզձեռաց բանականին ,
Դարձո այսրէն յիս ըզհոգին ։

Եւ ընդ միւսոյ ախտաւորին ,
Ի քղանցըս տեառնըդ հըպողին ,
Մաքրեա զհոսումըն վըտակին
Արեան մըտաց զաղջագունին :
Ցոյժ կաղացայ պատուիրանին
Եւ կուրացայ լուսով բանին ,
Կանգնեա և զիս , տէր , ընդ կաղին ,
Եւ լոյս ծագեա ինձ ընդ կուրին ,
Զի վազեցից իբր եղջերու
Ըստ կանխասաց մարգարէին ,
Եւ զարուսեակդ առաւօտին
Տեսից 'ի փառսըն հայրենին :
Ես համրացայ բարեաց բանին
Որպէս բերան այսահարին ,
Նըման գոլով խուլ և համրին
Եւ 'ի դիւաց խըցեալ խըլին .
Ընդարձակեա զկապըս լեզուիս ,
Բարբառեցո ինձ ըզբարին .
Եւ խից զականջս ընդ դէմ օձին ,
Զի մի՛ լըւայց ըստ Եւային :
Որ գօսացեալ գործնականին
Եւ չորացեալ յախտէ ձեռին ,
Բան տէրական քո հրամանին
Ի զգայութիւն փոխարկեսցին ,
Հընչեա 'ի յիմ մեռեալ մասին
Կենդանարար ձայնիւ քոյին ,

Զի կարկամեալս անհընարին
Ի գործ բարւոյ արձակեսցին ։
Այրի հոգիս լայ ընդ այրին
Իբր 'ի Նային մեռեալ զորդին .
Գըլթա և լիս , տէր , ընդ Նըմին ,
Արժանացո կենաց ձայնին ։
Եւ ընդ կընոջ մեղաւորին
Բուռըն հարից կենացդ ոտին ,
Տուր համբուրել ինձ ընդ Նըմին
Որպէս և Նա սիրով՝ սըրտին ,
Բըղխել աղբերս արտասուելըն ,
Լըսել ըղձայնդ աստուածային .
Հաւատըք քո զքեզ կեցուցին ,
Գընա յանքոյթ խաղաղութիւն ։
Կաւով մարմնոյս լըպըրծողին
Գըլթեաց ընկէց զիս Թըշնամին .
Անկմամբ իմով գայթակղեցին
Որք փոքրոգիք յիմաստս էին ,
Որ ինձ պատժոց գերագունին
Քան զիմ յանցանս առիթ լինին ,
Զպարանոցէ ծանր արձանին
Անկմամբ 'ի ծովըն գեհենին ։
Այլ՝ որ հընարդ ես անհնարից ,
Կանգնեա և զիս այժմ 'ի յոտին .
Զի որք գըլթեալ վասն իմ՝ կանգնինին ,
Եւ որ կանգունքն են՝ գոհասցին ։

Յագարակի Թըշուառս անձին ,
Յոր ցանեցեր սերմ ըղձարին ,
Ի քուն լինել հեզոյս հոգին ,
Ցանեաց որոմըն Թըշնամին ։
Որք նախ հընձոց ժամանակին
Քաղեալ լինէն 'ի բաց դիցին ,
Զի մի՛ զցորեանն առցես շնորհին ,
Զորոմըն տաս հրոյ գեհեննին ։
Յոյժ կարծրացայ 'ստ ապառաժին ,
Եղէ նըման ճանապարհին ·
Փուշք աշխարհի զինս հեղձուցին ,
Եւ անպըտուղ զանձն արարին ·
Այլ, սերմանող՝ տէր՝ ըղձարին ,
Յիս աճեցո ըղձոյս բանին ·
Զի տաց պըտուղ մի յերեսին ,
Հարիւր , վաթսուն կամ զերեսնին ։
Ոչ ծախեցի զդիւրվատնելըն
Ընդ գլուխ զանձին յագարակին ,
Զոր գողացաւ իմ Թըշնամին ,
Եւ ետ փոխան ըղկապտելըն ։
Ըղքեզ, որ գանձդ ես երկնային ,
Մաղթեմ սըրտիւ բոլորովըն ·
Տուր ինձ իմաստ գանձել յերկին ,
Եւ անդր ունել զխորհուրդ սըրտին ·
Որ 'ի գողոյն գիշերային
Գաղտնի ականն ոչ հատանին ,

Այլ զգուշութեամբ ամբաստանէին
Ըստ քո լուսոյ պատուիրանին ։
Ոչ 'ի խնդիր քո մարգարէին
Եղի նըման վաճառողին ,
Եւ ոչ փոխան անփոխանին
Ետու ըղձէր անցաւորին .
Զվաճառեցի ըստ հրամանին
Ըզցանկութիւն նիւթականին ,
Առ 'ի ստացումըն մեծագնին
Եւ ցօղածին լուսաբերին ։
Մարգըրտօրէն ծընունդ Կուսին
Աստուած և մարդ մի երկոքին ,
Տուր ինձ սիրոյդ աստուածային
Լինել խընդրող խանդակաթին .
Բաց զառագաստ փափագողիս ,
Մուտ 'ի սենեակ տարփմամբ սըրտին .
Տաճարացդ գլխ վերընտին ,
Եւ ընդգըրկեա աջով քոյին ։
Զհաւատ բոլոր մանանեխին
Զարքայութեան օրինակին
Ոչ ըստացայ խմորս անձին ,
Զի չար լերինք փոփոխէին ։
Եւ ոչ նըման Թըռչնոց երկնիցն
Յոստըս հանգեալ պատուիրանին ,
Յորում հոգիք մաքուր հանգչին
Ճառանգք երկնից սուրբ խորանին ։

Եւ ոչ եղէ խիստ ըստ համին ,
Կամ կարծրագոյն ճըճնեաց մըտին .
Զորոց մանրեա մանր ըղժանին ,
Եւ զիս կառո յոստըս ծառին ։
  Խըմոր եղէ վատթար և հին ,
Եւ ոչ յառակ աճման բանին ,
Ցայն որ թաքոյց յալերըն կին ,
Եկեղեցի ղխորհուրդ քոյին ։
Զի նա 'ի քէն առեալ նախկին ,
Նովաւ ծանեան դասքըն վերին .
Եւ ընդ զանգուածս ադամային
Խառնեալ բոլոր խըմորէին ։
Զըրկեալ միայն 'ես յերկոսին
Ցանճառելի լոյս իմաստին .
Ում արատցես հաղորդ կըրկին ,
Տացես դարձեալ զոր կորուսին ։
  Ընդ որսացեալսն 'ի յուռկանին
Հաներ և զիս յեզըր ծովին .
Բայց յընտրութեան քո ըղըարին ,
Անկայ 'ի բաց ընդ խոտանին .
Որով 'ի նոյն ջուրըս խորին
Դարձեալ իջի 'ի գէջ տըղմին ,
Ցորում անդունդք անհընարին
Զհոգւոյս մատունս պաշարեցին ։
Այլ՝ դու կարող յամենայնին ,
Վերաբերեա զիս վերըստին .

Եւ 'ի բարի սուրբ ամանին
Ժողովեսցես ընդ ընտրելըն ։
Որ 'ի հընգից նըկանակաց
Նըշխարեցեր հինգ հազարին ,
Եւ 'ի չորից գարձեալ զնոսին
Կերակրեցեր յանապատին ,
Զիս , որ քաղցեալ եմ քո հացին
Աստուածայնոյդ երկնաւորին ,
Արա լընուլ հոգւոյս նովին
Ցերկնից իջեալ և անմահին ։
Քանանուհւոյն լըւար ձայնին ,
Եւ շնորհեցեր ընդհայցելըն .
Աղաղակեմ ես ընդ նըմին ,
Շնորհեա և ինձ զիմ խընդրելըն .
Զի եթէ շուն կոչես վերջին ,
Արագապէս լըսեմ ձայնին ,
Ծեպել յընթացս 'ի կոչ հովուին ,
Եւ հալածել զօտարոտին ։
Թէ և մանկանցն անարատից
Չեմ արժանի կըցորդ մասին ,
Այլ փըշրանաց սուրբ սեղանին
Արժանացո կենաց հացին ։
Կարկամ եղէ ես առ բարին ,
Նըման կընոջըն կարկամին ,
Ձեռըն տացես ինձ ընդ նըմին ,
Զանկեալ հոգիս կանգնել յոտին ։

Որ յայտնեցեր զաստուածութիւնդ
Աշակերտաց քոց 'ի լերին ,
Եւ զանճառ փառացն հայրենին
Փայլեալ ցուցեր աչաց նոցին ,
Մաքրեա և զիմ միտըս մըթին
Եւ զգայարանըս խաւարին ,
Անդ յայտնապէս 'ի յերկրորդին
Ցագիլ փառօքդ աստուածային :
Ըստ լուսնական այսահարին
Մանկանըն հօր անհաւատին
Որ ըստ օրէ տանջիւր նովին
Ի հուր ցասման 'ի ջուր գիջին :
Ցորոց հընարըս մարդկային
Չէ ողջութեան ինձ յերկրային ,
Այլ թէ 'ի քէն , տէր երկնային ,
Ցաւոցն ախտք հալածեսցին ·
Զի ջերմութիւն տուընջենային
Եւ լուսնականքըն գիշերին
Մի՛ մեղիցեն ինձ ըստ Դաւթին ,
Եւ մի՛ մեղաց պատճառ լիցին :
Ի հարցանելն ընդ քեզ Վիմին ,
Քանից թողուլ եղբօրն յանցելն ,
Ոչ ասացեր թէ եւթնեկին ,
Այլ չորս հարեւր ընդ իննըսունին ·
Ցոր կենցաղոյս աւքըն թըւին
Անցաւորիս եւթեանց դարին ·

Թէ որչափ ենք ՚ի յայս մարմին,
Պարտ է թողուլ զըղջականին ։
Եւ ես թէպէտ եղէ վերջին
Ի յոչ թողուլ պարտապանին,
Վասն ախտաւոր բնութեանս անձին
Եւ անկատար գոլ ՚ի բարին,
Սակայն առ իս ՚ի քէն լըցցին
Քո ինձ եդեալ բան հրամանին,
Թողուլ ըզմեղս առ քեզ պարտին,
Որ քան զաւազ շատ է գծովքն.
Ոչ յաղքատիս միայն չափին
Յեւթանասնիցըն կանոնին,
Այլ առաւել քոյդ զօրացին
՚Ստ ողորմութեանդ որ ոչ թըւին ։
Կենդանական չըլայ ձայնին,
Որ ոչ թաղել զհայրըն թողին.
Այլ և մեռայ ընդ մեռելըն
Մեռելոտի գործովք չարին ։
Բուրըն հարի զմաճոյ բանին.
Բայց ոչ նըման մաճակալին.
Զի նա չհայի անդր ՚ի յետին,
Այլ ՚ի յակօսն որ յառաջին.
Եւ ես թողի զխորհուրդ վերին
Ըղճանապարհ մըտից յերկին,
Դարձայ այսրէն յերկիր ստորին,
Ուստի հաներ իջմամբ քոյին ։

Արդ բարձրացո զիս վերըստին ,
Առ քեզ հանցես յերկնից յերկին ·
Մի՛ տար դառնալ առ Թըշնամին ,
Զի մի՛ հարցէ ընդ խաւարին ։
Ի ներքինեացն երից բաժին ,
Զոր որոշեաց բանըն քոյին ,
Ցորովայնէ և. մարդկային
Եւ ընդ վարուց երկնաւորին ,
Նըւիրեցայ և ես մասին
Հրեշտակական կուսականին ,
Պատերազմել ընդ դեմ ախտին
Եւ ընդ բնութեանըս շարժողին ·
Բայց Թողլ գըտայ յապարխսին
Եւ զընդընկեց 'ի Ճակատին ,
Ցորում և նետըք մուխ չարին
Ի սիրտ հարան տիրականին ։
Զպահանջեցեր զանկարելին ,
Այլ զիս եդիր իշխան նըմին ,
Թէ որ կարողքն են՝ տանիցին ,
Եւ որք տըկարք՝ ոչ պահանջին ·
Վասն այսորիկ ոչ ունիցիմ
Պատճառ բանի խոցմանս անձին ,
Եւ ոչ դիպող զպատասխանին
Ի քո արդար դատաստանին ։
Այլ, որ քննիչ ես խորհրդին
Եւ տեսանող դաղտնեաց սրտին ,

Մարտիր փոխան պարտեալս անձին
Ընդ Թըշնամւոյն իմ յաղթողին .
Մի՛ տար տեղի յիս փորձողին
Մարմնոյ ախտիւք զիս պատրողին ,
Այլ պարագրեա Թեւօք քոյին ,
Որպէս ըզտիպսըն բիբ ակին ։
Յընթրիսըն մեծ կազմեալ մեծին
Տեառնըրդ ծառայք զիս կոչեցին .
Յորմէ 'ի բաց հրաժարեցի ,
Պատճառելով խրատու չարին ,
Վասն աշխարհի ագարակին
Եւ վասն եզանց զգայականին ,
Եւ ընդ կընոջ հեշտասիրին՝
Որով կապեալ կամ 'ի սոսին .
Լուծիչ կապից դըժոխային ,
Լոյծ ըզկապանս իմ զերեսին .
Հան 'ի հովտէս այս տըրտմագին ,
Տար 'ի տաճար յուխտեալ տեղին .
Արժանացո կենաց հացին
Եւ ըմբելւոյդ աստուածային ,
Ուրախանալ գինեաւ բանին՝
Զոր խառնեցեր անըզգամին ։
ՅԵրուսաղէմ մերոյ դըրախտին
Ընդ Ադամայ յանցաւորին
Ի յԵրիքովս իջի ստորին ,
Անկայ 'ի ձեռս աւազակին .

Ոռք 'ի լուսոյն մերկացուցին
Զհոգիս մեղաց վէրոք լցին.
Ոչ կիսամահ թողեալ գնացին,
Այլ յետ մահու պատերազմին:
Զոր և Մովսէսըն ղեւտացին
Եւ Ահարոնն քահանայն հին,
Տունըն մեծի Նահապետին
Եւ մարգարէք հնոյ օրէնին,
Զվէրըս ցաւոցն անհընարին
Եւ ըղխոցուածըս սաստկագին
Դեղով բանից անցեալ տեսին,
Եւ բըժըշկել ոչ կարացին:
Սամարացւոյդ՝ զոր կոչէին
Տոհմըն ժըպիրհ հրէականին,
Յուցից ըղջաւս իմոյ անձին
Տեսօղ աչացդ աստուածային.
Գըթա և յիս ըստ Ադամին,
Դիր դեղ հոգւոյս խոցոյս խորին.
Պատեա զգեստուքն իմ առաջին,
Զոր աւազակքըն մերկացին.
Արկ 'ի վերայ զձէթ և զգինին
Զդեղըն կենաց հոգւոյ վէրին,
Տալով զօծման դարձեալ զՀոգին
Եւ ըզբաժակ Նորոյ ուխտին:
Բարձ 'ի վերայ գրաստու խաչին,
Տար 'ի պանդոկ յեկեղեցին.

Յանձնեա զլըխոյ քահանայի՛ն ,
Զքեզ ըստ մարմնոյ պատարագչի՛ն ։
Տուր ընդ երկուս գահեկանին
Զբան հի՛ն և նոր կտակարանի՛ն ,
Տանել զարման հոգւոյս նուղի՛ն ,
Որպէս կեցցէ հացիւ մարմի՛ն ։
Նախ քան ըզգալ բարեկամին
Հոգւոյս խմոյ պահանջողի՛ն ,
Ի յերկնայնոցն երկնաւորին
Եւ զիս յերկնի՛ս ուղեւորի՛ն ,
Բնութեամբ բարւոյ բարեկամիդ ,
Զոր առեցի սիրով չարի՛ն ,
Առ դրունս լուսոյ առաւօտիդ
Կանխեմ հոգւով գիշերայի՛ն ·
Տուր ընդ երիս նըկանակին
Զդաւանութիւն երիցդ անձի՛ն ·
Եւ ըզմարմին քո երկնայի՛ն ,
Որով ծանեաք զերիս դիմի՛ն ։
Զի 'ի բարեաց գործոց մասին
Չունիմ դընել բարեսիրի՛ն ·
Միայն զհաւատ շնորհաց քոյին
Եւ ըզթոշակ կենաց վերջի՛ն ։
Ընդ դէմ անժամ աղաչողիս
Մի՛ պատճառեր ըզգըրանց փակի՛ն ,
Եւ ըզմանկանցն 'ի յանկողնի՛ն ,
Զանմեղ հոգւոցն 'ի հանգըստի՛ն ·

Եւ մի՛ տաեր զանկարելին ,
Որ չկամելոյն փոխանակին .
Զի քո կամելն ամենեւին
Է կատարեալ գործ 'ի բարին .
Այլ տուր ժըտել ըստ առակին ,
Զի ընկալայց ըզխընդրելին .
Ոչ ընդ սիրոյն , զոր կորուսի ,
Այլ ընդ ժտութեան աղաղակին ։
Ըստ մեծատանըն յիմարին ,
Որում ետուն անդք առհմային ,
Յիմս աճեցին սերմանք չարին
Եւ բազմացան 'ի միտս անձին .
Մինչեւ քակել շտեմարանին ,
Հոգւոյս մասանց բանականին ,
Եւ մեծագոյն գործել զտեղին
Յօգնաբեղուն պըտղոյ չարին ։
Զոր մանկաղաւ քո երկեղին
Հատցես ըզբոյս դառնաբերին ,
Եւ աճեցո յիս ըզբարին
Պըտղաբերել քեզ 'ի յերկին ։
Ի մաքրութեան աւազանին ,
Յորում ստեղծեր զիս վերըստին ,
Այսքըն չարեաց յինէն ելին ,
Այնք որ յօձէ անդըր մըտին .
Որոց չըրջեալ ընդ անջրդին
Յոգի յախտից ցամաքային ,

Որ հանգըստեան վայր ոչ գըտին
Յորս ըստ կամաց իւր ոչ էին ,
Եւ զի աղբեւր մեղաց ախտին
Միշտ անըսպառ յինէն վիժին ,
Որ և պատշաճ իսկ յարդարի
Տուն և տեղի հոգիս Նըմին ,
Առեալ զընկերըս եւթնեսին
Ըստ կենցաղոյս չարք ընդ չարին ,
Խառնեալ յինքեան այսն առաջին
Դարձաւ նոքօք 'ի տունս անձին .
Որ գերազանց չարըս վերջին
Եղեւ ինձէն քան ըզնախնին .
Զի յաղբերէն այլ ոչ մաքրին ,
Այլ տաժանմամբ և դըժուարին .
Եւ զգուշագոյն գոլով Նորին
Յետ ըմբըռման ամրականին ,
Որում տիրեաց դարձեալ կըրկին
Ըստ առաջնում յարացուցին .
Զոր հերքեսցես դու վերըստին
Ի յանապատն անդընդային .
Թէպէտ և ոչ ըստ օրինին ,
Այլ ըստ առատ քո պարգեւին .
Եւ ըստ չարեացըն եւթնեկին ,
Զոր մերժեսցես ըզներհակին ,
Բնակեցուսցես յիս ըզՀոգին
Ըզեւթնարփի շնորհաց քոյին .

Ըստ Մարեմայ Մագդաղենէին ,
Յորմէ եւթըն դեւն ելին ․
Եւ ըստ Զակքեայ մաքսաւորին ,
Եւ ըստ բազմացն օրինակին ։
Չեղէ նմանող քում ծառային ,
Որ ակն ունէր տեառնըդ դարձին ․
Եւ ոչ յերկրորդ կամ յերրորդին
Պահու սպասեմ գալըստ քոյին ։
Ըստ այսմ և ոչ յուսամ վեհին
Եւ անպատում խոստմանն պատուին ,
Ածել ընդ մէջ քո ըզգօտին ,
Անցեալ պաշտել ընդ ծառային ․
Այլ եմ նըման յուսահատին
Քում ծառայից հարկանողին ,
Արբեցողին և կերողին
Եւ զինչըս տեառնըդ վատնողին ․
Եւ երանի թէ արգխտին
Եւ ոչ հանգոյն չարիմաստին ,
Զի չըմպէի զան սաստկագին ,
Այլ յոյժ սակաւ չափով մըտատին ։
Բայց արդ գիտում եմ վատթարին ,
Տըգէտ կամաւ լաւագունին ․
Չեմ զգուշական պահող անձին
Արթուն մըտօք ըստ հըսկողին ։
Ի քնոյ զարթո մահաբերին ,
Զի զգուշացայց աւազակին ։

Տուր ա՛կն ունել առաւօտին ,
Զի յարգեցայց տեսլեամբ քոյին :
Արա նըման զիս ծառային
Ծառայակցաց՝ կերակրողին ,
Տալ 'ի ժամու զիմաստ բանին
Իւրաքանչիւր քաղցեալ անձին :
Զարիական տուր ինձ գօտին ,
Պընդել ըզմէջ ցանկականին .
Լոյց ըզճըրագ պատուիրանին
Յոգիս յանըլոյս և խաւարին :
Կարկամութիւն կռամոլ ախտին
Ողորմութեամբ խորտակեսցին .
Եւ քսակըն հին փոփոխեսցի
Յառանց հնութեան ունող զանձին :
Ի դասս ընտրեալ փոքրիկ հօտին
Խառնեա զծուլիս անբեր հոգին ,
Զի Հօր քո կամք հաճոյացին ,
Զարքայութիւն տալ ընդ նոսին :
Հեղեր յերկիր զհուրդ երկնային ,
Որով մարդկան հոգիք մաքրին .
Բորբոքեցո յանձն իմ ցըրտին ,
Զհոգիս ջեռո սիրով քոյին :
Դու , տէր , միայն լեր ինձ բաժին
Ըստ Պօղոսի զքեզ սիրողին ,
Զփոխանակել էից մասին ,
Ոչ տանջանաց զանազանին :

Զհաշիւն ես ոչ ընդ ոսոխին
Եսու յասնեայ Ճանապարհին ,
Առ 'ի չմատնել դատաւորին
Ընդ մատնութեան չարախօսին :
Որոց բերանքըն կարկեսցին ,
Ոչ դատապարտ լինել վասն իմ :
Զիս 'ի ձեռաց կորզեա դահճին ,
Եւ հան յանել բանտէ նորին :
Ի նոր ձորձոյ աւազանին
Սփածեայ զմեղաց կապերտըն հին ,
Որ ընկալաւ 'ի լոյս նորին
Ըզգոյն ոսխուր և զաղտեղին .
Զերծ առ յինէն զքուրձ ըզգեստին ,
Եւ ըզգեցո զուրախալին .
Եւ զպատմուճան հոգւոյս ներքին
Լուա աչաց ջուրբ արտասուին :
Զնորացուցի ըզտիկըն հին
Ի հնութենէ մեղաց զհոգին ,
Զի նոր գինի պատուիրանին
Առանց հեղման յիս պահելին .
Նորացուսցես զիս վերըստին ,
Աջըդ կարող Հօր հըզօրին .
Զի հայրատունկ որթոյդ գինին
Անապական յիս պահեսցին :
Ի վեհագոյն նըստայ բարձին
Ցաստիճանաց քոց առաջին ,

Ոչ յառաջեաւ կոչմամբ քոյին ,
Այլ յինքնաշարժ փառամոլին :
Յորժամ կոչես զազգ երկրածին
Ի հանրական կոչարանին ,
Մի՛ յանդրգնիս բան կոչողին
Ի վայր մատիր բարբառեսցին .
Այլ և անկեալս այժմ 'ի գետին
Լըւայց բարեացն 'ի քէն բանին ,
Ի վեր մատիր բարեկամին
Ի բարձրութիւնս աստուածային :
Զելից յերկինս աշտարակին
Եւ զամրութիւն ընդդէմ չարին ,
Ըզկուսութիւն հրեշտակային
Եւ որով նայն մաքուր պահին ,
Ոչ հաշուեցայ զծախըս վարձին ,
Եւ ոչ զերկունըս շինուածին ,
Այլ հիմն արկի կրօնից կարգին
Առանց գըլխոյ կատարածին .
Բայց , կատարիչդ ամենայնին ,
Կերտող բոլոր էականին ,
Զիմ կատարեա շինուած անձին ,
Յօդեա 'ի գլուխըդ վերըստին ,
Զի մի՛ անցորդք ծիծաղեսցին
Յառանց լըրման թողեալ շինին .
Այլ քո բանիւ պըսակեսցին
Հիմն և աւարտն 'ի միասին :

Իմ Թագաւոր իշխան հոգիս,
Յորժամ մըտի յաշխարհ սօմին,
'Ի աշխարհակալըս խաւարին
Եմուտ 'ի մարտ պատերազմին.
Նախ ոչ խորհել եգ 'ի մըտին,
Եթէ տասամբըք հազարին,
Իւրեւ մարմնոյ զգայարանին,
Չիցէ կարող մըղել մարտին
Ընդ այնմ որ գայ բըռնաւորին
Հանդերձ զօրօք քան հազարին.
Որք իմ տասամբք ինքեամբք կըրկին
Իմովս ընդ իս անդուլ մըրցին:
Յորս և տեսօղք զիս գովէին
Իբր ըզգըխտող չարփոյ անձին,
Ի մարտ մըտանելն ընդդէմ տկարին
Եւ ոչ քան զիս դիմադրաւին:
Այլ առաջել իմ հրեշտակին
Նախ քան ըզգալ պատերազմին,
Ըզկամս իշխող ընտրականին,
Զի օրինօք խաղաղացին:
Սակայն չեգի ունկըն խրատին
Առակաւոր քո հրամանին.
Որով անկայ 'ի մէջ մարտին,
Խոցեալ վէրօք անհընարին:
Զայլըս տեսի համամարմին
Յաղթող գըտեալ յասպարիսին,

Եւ կարծեցի զիս ընդ նոսին
Ցաղթել կռուոյ մենամարտին․
Բայց փորձութիւնքն երբեւ հասին,
Զանժուժութիւնս իմ յայտնեցին․
Ցառաջինեացն որոշեցին
Եւ ընդ վատացըն զիս լըքին ։
Այլ՝ Թագաւորդ իմ երկնային,
Ամենազօր Հօր միածին,
Լեր մարտակից տըկարս անձին
Ի հոգեւոր պատերազմին ։
Հար ըզհազարսն որ յահեկին,
Որ յայտնապէս չարեօք կռուին,
Եւ զբիւրաւորս աջակողմին,
Որք և բարեօք կերպարանին ։
Զիս ամրացո ’ի սրոյ նոցին
Ճըշմարտութեան պընդով քոյին․
Եւ պահպանեա զմէհ անդամիս
Սաղաւարտաւ քո նըշանին ։
Մոլորեցայ ըստ ոչխարին
Ի բանաւոր հօտէ քոյին․
Նըւաղեցի զթիւ հարիւրին,
Զոր յանապատ թողեր վերին ։
Եկեր խընդրել սիրով ըզմին,
Գըտեալ հաներ ուսով յերկին․
Լըցեր ըզթիւ անկեալ դասին
Ցուրախութիւն հրեշտակային ։

Եւ զիս բարձեր, տէր, ընդ բազմին,
Լուացեր յաղտոյ մեղաց տըղմին․
Ցորում՝ գարձեալ արդ թաւալիմ
Ըստ անմըտի աղբասիրին։
Նըման դարձեալ զիս արտասուօք,
Զոր շնորհեցես անզեղջս անձին
Առատ վըտակ և սաստկագին,
Ըստ յորդութեան աւազանին։
Եւ զմոլորեալս կամաւ կորկին
Դարձո ՚ի կամսդ աստուածային․
Զիշխանական կամս իշխողին
Բարձ, որ քոյումդ ոչ հնազանդին,
Թէ արարքոյ է բնականին՝
Զոր շնորհեցեր բանականին,
Այլ զի պատճառ է ինձ չարի
Ի թուլութեան թըշուառս անձին։
Զարքունական պատկեր քոյին,
Դրոշմեալ ՚ի գէմըս մարդկային,
Խոր թաղեցի յաղբեւս ախտին
Կորըստական խրատուք չարին․
Զոր խընդրեցես լուսով ճրագին
Աստուածութեանդ որ ՚ի մարմին․
Եւ տանս աւել ած ըստ բանին,
Մաքրեա յախտից ըստ աշխարհին,
Քով հրամանաւ գործեալ զայս կին
Եկեղեցւոյ օրինակին,

Կոչել զզւրացիս գերաշխարհին
Ցուրախութիւն իմոյ դարձին .
Եւ զիս կըցորդ արա նոցին
Ի խրախութիւնսն որ է վասն իմ,
Զուարճանալ ընդ ցընծալին ,
Որք ըզմեղաց սուգ ոչ առին :
Հետեւեցայ անառակին
Ի հեռաբնակ տարաշխարհին ,
Զհայրենական վատնեալ բաժին ,
Զոր ընկալայ յաւազանին .
Ցորում սովիմ կենաց հացին
Եւ ըմբելւոյդ աստուածային :
Ի յարածել խոզերամին
Չյագիմ մեղջք քաղցր եղջերին .
Զհայրըդ կոչեմ ընդ կըրսերին ,
Մեղայ ասեմ քեզ 'ի յերկին .
Թէ և որդւոյ կոչման ձայնին
Չեմ արժանի Հօրըդ վերին ,
Արա զիս մի ըստ վարձկանին ,
Որք ընդ վարձու գործեն զբարին .
'Ի ապրեցելոցն երկրորդ կարգին ,
Քանզի լուծի զսէր հայրենին ,
Ի գիրկս ընկալ խնամոց վեհիդ ,
Արժա՛ ացո սուրբ համբուրին .
Փոխարկելով զհոտ անմահիդ
Ընդ դիականեալ հոգւոյս հոտին :

Տուր ինձ ըղձիս պարարակին,
Ըմպել զգինին որ 'ի խաչին ·
Զուարճացո զգաստ անմարմին
Ընդ մեռելոյս կենաց գինւոյն ։
Երեց որդի հեբրայեցին,
Եւ կամ որ են յարդար մասին,
Որք յօրինացն ագարակէն
Ցեկեղեցի քո մերձ եկին,
Միայն լուան հեռուստ ձայնին
Պարակցելոյ մանկանց նորին,
Եւ 'ի տաճար անդր ոչ մտին
Իբր ախտացեալք ըստ մարդկային ·
Նախանձաբեկ գոլով նոցին
Առ փրկութեամբ հեթանոսին,
Որով նախնիքըն պարծէին
Զի զօրինօք քո ոչ անցին ·
Որք ոչ միայն պարարակին
Զենմամբ Որդւոյդ չազատէին,
Այլ ոչ փոքու զենեալ ուլին
Հրեշտակական կամ մարդկային ։
Թէ և նոցունց պարգեւէին
Նախնի բարիքն ամենեքին,
Կրտսակարանքն, ըստ Պօղոսին,
Եւ աւետիքն և քոյդ մարմին,
Բայց առ ինեւ չհամեմատին
Միտք այլոցիկ, զի ոչ յանգին ։

Այլ նախանձոտ իմ Թըշնամին ,
'Ի տարարշութեանն երէց որդին ,
Որք չարախօս զինէն լինին
Մինչ անդադար Հօրըն վերին ,
Որպէս Յոբայ ծանուցանին ,
Եւ այլ բազմօք որ ըստ կարգին .
Զորոց կարկել հայցեմ լեզուին ,
Եւ ոչ դըննել ունկըն բանին ,
Եւ մի՛ մատնել փորձասիրին ,
Թէ և խընդրէ զիս ընդ նըմին ։
Արարչական բնութեամբ քոյին
Մի տուն շինեալ բանականին ,
Տընտես գոլով մարդն առաջին ,
Յատակըս տանս այս երկրային .
Եւ յառաջեալ ծնընդոց նորին ,
Տընտեսք 'ի քէն զանազանին .
Ոմանք մարմնով գերափառին ,
Եւ այլք բաշխօղք հոգեւորին .
Ի վեհ սկըսեալ Թագաւորին
Մինչ 'ի խոնարհ գործակալին ,
Եւ 'ի պետէ հարցն առաջին .
Մինչ յիններորդ դաս խորանին ,
Իւրաքանչիւր ոք ըստ կարգին
Տընտեսք 'ի քէն կարգեալ լինին .
Ոմանք գոյից նիւթականին ,
Եւ այլք աննիւթ պարգեալ բանին ։

Յորում էհաս վիճակ մասին
Եղեռնական Թըշուառս անձին ,
Տընտես լինել տանըն քոյին ,
Բաշխօղ բանից աստուածային ,
Տալ'ի ժամու ծառայակցին
Ըզկերակուր կենաց հացին ,
Զոր ոչ ետու քաղցեալ անձին ,
Այլ սովամահ թողի զնոսին :
Դարձեալ տընտես հաւատարիմ
Մարմնոյ հոգւոյ միտք անմարմնին ,
Զիւրաքանչիւր պէտըս նոցին
Տնօրինաբար տալ ըստ կարգին ,
Կերակրելով բանիւ զհոգին
Եւ դարմանել չափով զմարմին .
Եւ յերկոցունց կացեալ միջին ,
Պահել անվըրէպ ըզկարգ նոցին :
Ի ծառայի գոլով մասին
Որպէս ստեղծեր կարգել զմարմին ,
Եւ տիրական իշխան զհոգին
Ըստ նախատիպըդ պատկերին .
Բայց անիրաւս 'ի յերկոսին ,
Ի յիմ անձին և յօտարին ,
Նըմանեցայ անիրաւին ,
Իմ վատութեանս օրինակին :
Որ ամբաստան զինէն լինին
Վասըն չարեացս որ միշտ գործին

Սուրբ պահապանն իմ անմարմին ,
Եւ մարմնաւորք որ տագնապին :
Եւ ես չունիմ իմաստութիւն
Զօգուտն ընտրել ժամանակին ,
Ոչ առ 'ի կեանս մինչ 'ի մարմին ,
Եւ ոչ կենացըն վաղճանին ,
Թէ ոչ 'ի լրումըն կենցաղոյս
Կարեմ գործել ես ըղձային ,
Եւ ոչ մուրալ յորոց ունին ,
Զի ամաչեմ յոչ տալ նոցին :
Այլ դու , առատ յամենայնի ,
Տուր ըզզըղջումն անզեղջս անձին ,
Դառնալ առ քեզ բոլորովին ,
Նախ քան կոչման զիս յատենին
Պարտապանաց դատաստանին՝
Մասն ինչ թողուլ գոնէ պարտին ,
Հոգւոյս զյիսունըն մար ձիթին ,
Մարմնոյս ըզքսան քուռ ցորենին .
Դարձեալ ըզկնի օծման շնորհին
Մեղուցելոյ զըղջականին ,
Բազում շնորհել զյիսներեկին ,
Տըկար բնութեանըն պատճառին :
Իսկ որ 'ի հաց քո երկնային
Անմաքրապէս ըստ իս մերձին ,
Սակաւ թողուս թըւով քսանին ,
Քանզի կարեօք չբըռնադատին :

Նա և ըղձեղան որ ըստ հացին
Գործով ծանու թանձրագունին .
Եւ զխորհրդոցն , որ ըստ ձիթին ,
Մաքրեա յինէն շնորհիւ քոյին ։
Շնորհեա և ինձ ըստ ողնատեսին
Լինել արժան քում փոխեստին .
Թէ և որդի եմ աշխարհին ,
Տուր ինձ զիմաստ մեղաց դարձին ։
Ըստ մեծատան փափկասիրին
Ես փափկացայ յառօրէին
Մարմնովս այսու անասնային
Ի փափկութեան անըզգամին ։
Զգեցայ զըհեղն և զծիրանին ,
Եւ զանկուածոց բազմագունին .
Թէպէտ և ոչ զերեւելին ,
Այլ զբազմագոյն կեղծեօք բաղին ։
Սեղան զեղեալ ամենալին
Յօդնահանճար խահարարին .
Թակոյք լցեալ զանոյշ գինին
Զյիմարութեան առաջնորդին .
Ուրախ եղէ ես յայսպիսին
Յուրախութիւն անցաւորին .
Յերգ և քընար ձայն ախտային
Փոխան երգոցն աստուածային .
Եւ յայսքանեաց բարեաց բազմաց
Զոր շնորհեցեր պարգեւ մաւին ,

Ոչ դարձուցի զտապանեւորդին
Քեզ 'ի քոյոցըն պարգեւին.
Այլ սեփհական ինձ կարծեի
Զոր ընդ յարկաւ ժողովէին
Յերկրէ, յօդոց, և ծովային
Բիւրապատիկ բարիք քոյին.
Յորոց չետու ես ազքատին,
Եւ ոչ բարձի զպէտըս նոցին.
Ոչ կերակուր քաղցեալ անձին,
Եւ ոչ ծածկոյթ մարմնոյ մերկին.
Ոչ հանգըստեան տուն տընանկին,
Ոչ օթեւան հիւր օտարին.
Ոչ տեսութիւն առ հիւանդին,
Եւ ոչ խընամ զօրս 'ի բանդին:
Ոչ ողորմակից եղէ վըշտին
Տըրտմեցելոյ յիրս առանձին,
Եւ ոչ խընդալ ընդ խընդալին,
Այլ նախանձու վառեալ նովին:
Որք և Ղազարք օրինակին,
Բազմապատիկք են և ոչ մին.
Առ դուրս անգեալ իմ արտաքին
Աղաղակեն սովամահին,
Եւ ես անլուր ձայնից նոցին
Զատելով փըշրանս ըզսեղանին.
Յորում պատառիկքըն յագէին
Եւ հացկատակք պարպատէին:

Շունք օրինաց քոց արտաքին
Գոնէ լեզուաւ ողորկէին ·
Եւ ես լըսող քում հրամանին
Լեզուաւ հարի զքո նըմանին :
Ի միտ չառի զմիտըս բանին
Զաստուածախօս քո առակին ,
Որ միշտ լըւեալ անտես լինին ,
Քան զի չունիմ ականջ ներքին :
Ոչ յիշեցի զմահ աղքատին ,
Ի հրեշտակաց տանել զհոգին ,
Յաբրահամու նահապետին
Ի հաւատոյ հանգչել գոգին :
Թէ օրինակ է մարդկային
Յաղքատութեան համբերողին ·
Զի յետ ճըրգանցըն վախճանին ,
Յարքայութեան տեառնըրդ հանգչին·
Եւ ոչ ըզմահ յըղփացողին ,
Որ 'ի դըժոխս էջ ըստորին :
Յորում լեզուն պապակէին
Ի տապ բոցոյ դառնագունին ,
Որ կարօտէր կաթիլ ջըրին
Ի Ղազարէ ծագիւ մատին ,
Ընդ թակուկաց լի բաժակին
Բարձեալ մատանց մատըռուակին :
Թէ մեծատանց որ յաշխարհի
Սա առ 'ի խըրատ բոլորովին ,

Մի՛ պարարել որդւանց զմարմին ,
Այլ փոքր ինչ տալ և աղքատին :
Արդ մի՛ լըւայց զպատասխանին
Առ մեծատունն զԱբրահամին ,
Թէ ընկալար դու ըզբարին
Զոր գործեցեր զփոխարինին ,
Եւ Ղազարոս փոքու չարին
Հատոյց ըզվըրէժ ցաւօքն անձին .
Որով սա աստ մըխիթարի ,
Դու պապակիս 'ի գեհենին .
Այլ տուր աստէն զըղջումն , ինձէն
Ապաշաւել զոր գործեցին :
Ընդ յըղփութեան որովայնին ,
Պահօք ճընշել ըզստուար մարմին .
Եւ ընդ երգոցըն պոռնըկին
Ի գինարբուսն անառակին ,
Տուր ձայն ողբոց արտասուագին ,
Լալ ինձ 'ի տուէ և գիշերին .
Զի բորբոքեալ նոքօք հնոցին
Վառուամն այրմանց չիջանիցին ,
Եւ խորափիտ մեծի վըհին
Լըցեալ , անցայց ես առ նոսին :
Եւ ընդ բարուց անողորմին
Խառնեա յիս գութ ողորմագին .
Զի յողորմելըն ինձ աղքատին՝
Ողորմութեան հասից քոյին :

Ի յիմ քաղաք մարմնոյս գըներն
Աթոռ մըտաց դատաւորքն ,
Ի յԱստուծոյ աներկեղքն
Ի մարդկանէ անամօթքն ,
Զի անձնիշխան է յայնպիսին
Ցոչ երկընչելն և յերկեղքն ,
Եւ անպատկառ ըստ խորհըրդքն .
Զի յուսմքէ ոչ տեսանին ։
Աստ և հոգիս 'ի քէն այրին
Ի փեսայէդ իւր երկնային ,
Քանզի սեղեխ օտարոտին
Ի յաւազակաց եմոյծ քոյին .
Որ անդադար այրմամբ սըրտին
Աղաղակէ մըտաց խըղճին ,
Իւր դատ առնել ընդ ոսոխին
Զըրկող մարմնոյ քաղաքականցն .
Զներքինն առնել դարձեալ վերին ,
Եւ ըզվերինն առնել ստորին ,
Որպէս կարգեալ է Արարչին ,
Հողւոյ ծառայ լինել մարմին ։
Ոչ կամելով անխրատքն ,
Լըսել ձայնի աղաղակին
Վասն երկեղի աստուածային
Եւ ամօթոյ ինչ մարդկային .
Սակայն յաշխատ առնել այրւոյն
Ցիշատակաւ խոցեալ վիրին ,

Դատաստանի լըսէ նորին
Ի նըշխարեալ ժամանակին ։
Այլ՝ դատաւորդ իմ երկնային ,
Որով երկինք ուերկիր դատին ,
Դատաւորիս իմում անձին
Դատել տացես զիս ըստ կարգին ,
Զի մի՛ յաւուր դատաստանին
Դատապարտիմ ընդ դատողին ։
Յորժամ կապես 'ի միասին
Հոգւով զմարմին յանլոյծ կապին ,
Եւ զայրեցեալդ 'ի քէն դարձեալ
Կապակցեսցես սիրով քոյին ,
Փեսայ լինել հոգւոյս հարսին ,
Ցօղմամբ 'ի գըլուխ քո վերըստին ։
Եւ զհակառակս սորա մարմին
Նըհանջեսցես ներքոյ նորին .
Ծառայապէս լըսել բանին ,
Եւ անյապաղ գործել զբարին ։
Օրինաւոր փարիսեցին
Աղօթելով 'ի տաճարին ,
Դնէր առաջի զգործեալ բարին
Ամենատես աչաց քոյին .
Հըպարտանայր յիմար հոգին
Առ հեռաւոր ազգ մարդկային ,
Եւ 'ի վերայ մերձաւորին
Աղօթակից մաքսաւորին ։

Զոր ոչ միայն զաղօթելին
Չէառ լեզուաւ մեծաբանին ,
Այլ և յարդար գործոց նախկին
Վրիպեաց սնապարծ իւրով բանին
Բայց զի՞նչ առնեմ իմումս անձին
Ախտասիրիս բոլորովին ,
Բարեաց գործոց հեղգացողին ,
Չարեաց մասանց ժողովողին .
Զի բարութեանցն ոչ հետեւիմ ,
Զոր պանձացաւ փարիսեցին :
Եւ գերազանց նըմին լինիմ
Ի փառաւոր հըպարտ ախտին :
Այլ տուր ըղձայն մաքսաւորին ,
Բաժնեալ հոգւոյս մաքսապետին .
Ապաշաւել բանիւ նորին ,
Աստուած , քաւեա զմեղս իմ անձին :
Արդարացո զիս ընդ նըմին ,
Որպէս ըղձեա միով բանին .
Խոնարհեցո զմիտս իմ ներքին ,
Զի բարձրացայց շնորհիւ քոյին :
  Ընդ Ղազարու բարեկամին
Մեռեալ եդայ 'ի տապանին ,
Ոչ քառօրեայ այլ բազմամին
Մեռեալ հոգւս է 'ի մարմին .
Ձայնըդ հընչեա յիս երկնային
Եւ լսելի արա բանին .

Լոյծ 'ի կապից դըժոխային ,
Հան 'ի տանէս խաւարային ։
Ընդ Զակքէի մաքսաւորին
Ուշ բարձրացայ յերկրէ ստորին
Ի բարձրագոյն ծառ իմաստին ,
Ի տեսութիւնդ աստուածային .
Փոքրը հասակ հոգեւորին
Բարեաց գործովք յիս չաճեցին ,
Այլ յարակայ նըւազեցին ,
Մինչ կալթնարբու զիս արարին ։
Դարձեալ յառակ հակառակին ,
Եղի 'ի ծառ մարմնոյ ժանդին ,
Ի քաղցրահամ սէր երկրային ,
Որպէս և նա 'ի թըզենին .
Ցորմէ հըզօր բանիւ քոյին
Փութով խըշո զիս ըստ նըմին ,
Ագանելով 'ի տունս անձին
Ընդ քեզ և Հայր և սուրբ Հոգին ,
Հոգւոյս զըրկման տալով մարմին
Զծառայութիւնըն չորեքկին ,
Եւ զկէս գոյից մարմնականին
Աղքատացեալ տխրականին .
Զի փըրկական առ նա բանին
Արժանացայց քոյոյ ձայնին ,
Որդիս գոլով Աբրահամին
Ըստ հաւատոց նահապետին ։

Որ յօրինակ հրեշտակականին
Եւ անմաքուր հեթանոսին ,
Նըստար 'ի յէշ յաւանակին
Զգօնացելոյն և տըրմըրդին ,
Մաքրեա և զիս ըստ առակին ,
Եւ յիս հանգիր Հոգւովդ քոյին .
Արա աթոռ քեզ երկնային ,
Բազմեաց յոգիս ըստ Քրովբէին ։
Եւ ըստ միւսում օրինակին.
Հրէից ազգաց առ Թըզենին ,
Յոր 'ի խընդրէր գտըլով պըտուղին ,
Ոչ ընձայեաց զերախայրին ,
Մի՛ անիծեր ինձ ըստ նոցին ,
Թէ և նըման եմ անբերին ,
Զի մի՛ տերեւըն հաւատին
Պըտղով գործոցն իմ չորասցին .
Այլ հաստատեա զիս 'ի բարին ,
Որպէս և զուռն 'ի սուրբ որթին ,
Զոր մըշակէ Հայրդ երկնային ,
Պըտղաբերէ յաճումն Հոգին ։
Եւ զանպըտուղ ծառըս քաղցրին
Եւ զպըտղատուս գառնագունին
Մի՛ հատաներ յայգւոյ քոյին ,
Այլ փոփոխեա բերելով յայլին ։
Հրաւիրեցայ յառաւօտին ,
Իմ 'ի սկըզբան յաշխարհ մըտին ,

Գործել յայգւի պատուիրանին ,
Ընդ քո պատկեր դահեկանին .
Եւ ես լըւայ հրաւիրողին ,
Մըտանելով միայն յայգին .
Բայց հեղգացայ 'ի գործ բանին ,
Որով չունիմ ակըն վարձին ։
Այլ, տէր տուաւ յամենայնին ,
Տուր ինձ ձըրի զպարգեւ շնորհին ,
Ըստ մըշակաց մետասանին
Մըտեալ յայգի Ադին դրախտին ։
Ի հարսանիդ աստուածային`
Զոր Հայր արար քեզ , Միածին ,
Կոչեաց և զիս ձայն քարոզին ,
Ուրախանալ յանձնառելին .
Աստ 'ի խորհուրդ քո խորանին ,
Եւ անդ յաննիւթ քաղաք վերին ,
Ցաւէժական յանպատմելին
Ցանփոխական ուրախալին ։
Եւ քանզի զգեստ պայծառ չունիմ
Արժանաւոր հարսնարանին ,
Զի սեւացոյն մեղօք անձին
Աղտեղեցի զաւազանին ,
Զգեստ և զգեցող տէր անքըննին ,
Զգեցո զիս քեւ այժմիկ կըրկին .
Եւ զպատմուճանըն զառաջին
Պայծառացո զայժմ աղտեղին ,

Զի մի՛ լուայց տեառնընդ ձայնին ,
Զընկերն անուն ընդ եղկելոյն ,
Եւ մատնեցայց նըման նըմին
Ի բանդն անել դըժոխային ։
Չիմաստնացայ ես յերկոսին
Ըստ իմաստնոց կուսից հընգին ,
Զի զդիւրագոյնն ընդ դըժուարին
Ոչ ըստացայ ես ըզբարին .
Այլ յիմարացն եղէ յետին ,
Ոչ պահելով եւղ լապտերին ,
Ընդ կուսութեան զողորմութիւն
Եւ կամ զօծումն աւազանին ։
Որք 'ի գիշերն անգործ վերջին
Ինձ արծաթով ոչ վաճառին .
Որով և դըրունք հարսնարանին
Հեղգացելոյս ընդդէմ փակին ։
Այլ աստանօր մինչ 'ի մարմին ,
Փեսայդ իմ , լուր հոգւոյս հարսին .
Զոր փոխան անդր աղաղակին
Այժմիկ գոչեմ ողորմագին .
Բաց ինձ ըզդըռունըդ երկնային ,
Մոյծ յառագաստըդ քո վերին .
Արժանացո սուրբ համբուրին
Անախտական մաքուր գըրկին ։
Ինձ մի՛ լիցի լսել ձայնին ,
Զուգխառական պատասխանին .

Այլ տուր վառել շիջեալ ջահին
Մըտաց կուրիս լուսով քոյին ։
Նըմանեցայ չար ծառային,
Ի տաղանդացն ոչ շահողին,
Եւ գերազանց գըտայ նըմին,
Զի կորուսի զպարգեւ շնորհին ։
Ոչ գործեցի ըզքոյն կըրկին,
Քառեակ զերկուս, տասըն զհընգին,
Զի տիրէի բոլորովին
Տասըն քաղաք զգայականին.
Այլ թագուցի յերկիր ըզմին
Ծըրարեալ ախտիւք վարշամակին ։
Չարկի զարծաթն 'ի սեղանին,
Զի խընդրէիր ըզտոկոսին.
Այս է ըզքան պատուիրանին
Ի լըսելիս բանականին,
Որք են սեղան իմանալի
Իմաստութեան կենաց հացին ։
Վասն այսորիկ ես ակն ունիմ
Ընդ մէջ հատմանն և խաւարին,
Մինչ 'ի խընդիր գաս տաղանդին,
Զոր շնորհեցեր յաւազանին ։
Այլ փըրկողիդ իմոյ անձին
Լալով յինէն այս ասացին.
Թէ մինչ 'ի ձեռս է ինձ բարին,
Տուր քեզ հաճոյ լինել նովին.

Որով լըւայց զուրախալըն
Ընդ ծառայի հաւատարմին ,
Թէ մուտ 'ի տուն իմ երկնային
Ցուրախութիւն անճառելըն քոյին ։

# ԳԻՐՔ ԵՐՐՈՐԴ

Որ զփրկական խորհուրդ խաչին
Ցայտնեալ ցուցեր յերեկոյին ,
Եւ զկենարարըդ քո մարմին
Բաշխեալ ետուր ընդ բաժակին .
Արա և զիս ընդ սուրբ դասին
Հաղորդ լինել քում սեղանին ,
Կենաց հացիդ՝ յորմէ սովիմ ,
Եւ ըմպելոյդ՝ ում ծարաւիմ ։
Որ մաքրեցեր յաւազանին
Մաքուր ձեռօք զոտըս նոցին ,
Եւ ուսուցեր զխոնարհութիւն ,
Զոր նախ բանիւ՝ յայնժամ յիրին .
Լուա և զիմ տիղմըն չարին ,
Աղաչանօք սըրբոյ գընդին ,
Եւ ըզգընացս ուղղեա զոտին
Խոնարհութեամբ ելիւք յերկին ։
Որ ըզբնութիւն քո մարդկային
Ցուցանելով՚ի գիշերին ,

Տագնապեցար դու յերկրեղին ,
Աղօթեցեր առ Հայր յերկնին .
Փըրկեա և զիս զաղտնի նետին
Եւ յերկիւղէ գիշերային ,
Մասունք հոգւոյս իմ և մարմնին
Յերկիւղ քո սուրբ բեւեռեսցին :
Որ կապեցար ընդ կապելոյն ,
Արձակեցեր զհանգոյց կապին .
Զիս արձակեա յինքնակապէս
Մեղաց կապից դըժոխային :
Որ ընդ մեղօք դատապարտին
Կացեր անմեղդ 'ի յատենին .
Յորժամ փառօք գաս հայրենի ,
Մի՛ դատեսցես զիս ընդ նըմին :
Որ ձաղեցար 'ի թուք պըղծին
Վասն ամօթոյ նախաստեղծին .
Ջընջեա զամօթ մեղաց լըրբին ,
Որով զերեսս իմ ծածկեցին :
Որ ներեցեր չար ծառային
Ածել ձեռամբ քեզ ապտակին .
Հար ուժգնակի զգէմըս չարին ,
Որպէս և զիս էհար ուժգին :
Որ ոչ թողեր հասել վրիժին
Ի խոր մեղաց անդընդային ,
Այլ դառնապէս լալով սրտին ,
Քաւիչ եղեր ուրացողին .

Կանգնեա և զիս նըման նըմին
Ի գըլորմանէ սայլթաքողին ,
Յորդ արտասուս տալով աչացս
Եւ ջուր գըլխոյս նըման ծովին :
Որ ըզգեցար ըզծերանին ,
Արկեր քղամիդ կարմիր յանձին ,
Նախատանաց զոր կարծէին
Ջինուորք Պոնտոս Պիղատոսին .
Ըզքուրձ մեղաց մերկեա յինէն ,
Զյորդան կարմիր արեան գունին ,
Եւ ըզգեցո զուրախալին ,
Որ զգեցուցեր զմարդն առաջին :
Ի ծունր իջեալ կատակէին ,
Խաղ առնելով ծիծաղէին ,
Յոր հայեցեալ զօրքն երկնային ,
Ահիւ երկիր պագանէին ,
Զի ըզքնութեանս ադամային
Բարձցես զամօթ մեղսասիրին .
Եւ զիմ հոգւոյս մըտաց խըղճին
Լուծցես զամօթըն աղբամագին :
Որ ըզգըլուխ քո զերկնային ,
Յորմէ սարսեալ Սերովբէին ,
Ծածկեալ ձորձովըն կըռփէին
Եւ եղեգամբ հարկանէին ,
Վասըն գըլխոյ հողեղինին
Խոնարհելոյ կընոջն ոտին ,

Զի վեհագոյն երկնից գահին
Ընծա դիցես 'ի քոյդ մարմին·
Եւ զիմս անկեալ մինչ 'ի գետին
Եւ խոնարհեալ ոտից չարին
Վասն գործոց անօրինին՝
Որ զիս յերկիր կործանեցին,
Մի՛ Թողուցուս խաղաղ՝ նովին
Որպէս մանկանց գընդակ խաղին·
Այլ փրրկեսցես 'ի Թըշնամւոյն,
Յօդել 'ի գլուխ քո վերըստին։
Որ 'ի բոլոր քոյին մարմին
Եւ բովանդակ մասն անդամին
Աւեր սաստիկ զհարուած գանին
Յետ վըճռոյ դատաւորին,
Զիս որ յոտից մինչեւ ցըգլուխ
Ցաւօք նեղիմ անհընարին,
Առողջացո դարձեալ կըրկին,
Որպէս շնորհօք աւազանին։
Որ փոխանակ մեղաց փըշին,
Զոր մեզ անէծքըն բուսուցին,
Պըսակ 'ի փշոց 'ի գլուխ եդին
Մըշակք այգւոյն Իսրայելին·
Խըլեա ըզփուշ մեղաց յինէն,
Զոր յիս էհար իմ Թըշնամին·
Եւ ողջացո զխայթուած վիրին,
Զի սպիք մեղացըն ջընջեսցին։

Որ ընդ պըտղոյ քաղցրագունին
Դառնախայրի մահացուցին,
Ճաշակեցեր զխառնեալ լեղին.
Եւ ըզքացախն 'ի ծարաւին.
Ըզդառնութիւն թիւնաւորին,
Զոր 'ի մասունս հոգւոյս արկին,
Մաքրեա 'ի բաց հանդերձ նովին,
Եւ քաղցրացի սէր քո 'ի սմին:
Որ փոխանակ մահաբերին
Ծառոյն բուսեալ 'ի մէջ դրախտին,
Բարձեր յուսոյ ըզփայտ խաչին,
Ի Գողգոթայ հաներ տեղին.
Զիմ առ 'ի մեղս անկեալ զհոգի
Եւ ծանրագոյն բարձող բեռին,
Թեթեւացո քաղցըր լըծով
Եւ փրկողի բեռամբ խաչին:
Որ յուրբաթու ժամ երրորդին,
Յօր պատրանաց նախաստեղծին,
Բեւեռեցար, տէր, 'ի փայտին
Ընդ անօրէն աւազակին.
Զեռք որ զերկիր հաստատեցին,
Տարածեցեր զայն 'ի խաչին
Փոխան նոցա ձըգման ձեռին,
Որ 'ի ծառոյն մահ կըթեցին,
Զիս որ յանցեայ նըման նոցին
Եւ առաւել քան ըզնոսին,

Ձեռամբ սրնկեալ տնկոց Գոմորին
Պրտուղ կրթեալ սոդոմային ,
Մի՛ տուժեսցես չափով չարին ,
Մի՛ պահանջեր զհամար պարտին .
Այլ լեր քաւիչ իմոյ յանցին
Որպէս նոցա յանկոյս վայրին :
Որ բարձրացար 'ի սուրբ խաչին ,
Բարձեր զյանցանըս մարդկային ,
Եւ ըզբնութեանըս թըշնամին
Բեւեռեցեր դու 'ի նըմին .
Զիս ամրացո ընդ հովանեաւ
Ամենայաղթ քո նըշանին .
Եւ 'ի ծագելն յարեւելից ,
Լուսաւորեա լուսով նորին :
Որ աջակողմ աւազակին
Բացեր ըզդուռն Ադին դըրախտին ,
Յիշեա և զիս յորժամ գայցես
Արքայութեամբ քո հայրենին .
Լուայց և ես ըզցընծալին
Զքո ասացեալ պատասխանին ,
Այսօր ընդ իս իցես յԱդին
Ի հայրենիս քո առաջին :
Որ ողբալով բախմամբ սըրտին
Տեառնըդ իմոյ մայր առ խաչին ,
Յորժամ լըսէր ըզծարաւին ,
Հեղոյր արտօսըր ցաւագին .

Տացես և ինձ հեղուլ վասն իմ՝
Յորդ արտասուս նըման ծովին ,
Զի լըւացից զյանցանս անձին
Եւ զաղտ հոգւոյս պատմուճանին :
Որ յահագին գոչման ձայնին
Բարբառելոյ զելի ելին՝
Հիմունք երկրի տատանէին ,
Լերինք բարձունք սասանէին .
Եւ վարագոյր հին օրինին
Վերուստ 'ի վայր պատառէին ,
Եւ գերեզմանըք բանային ,
Մարմինք սըրբոցըն յառնէին ,
Արեգական լոյս քօղարկեալ
Խաւարանայր միջօրէին .
Նա և լուսինն , օրինակին
Փոփոխելով յարեան գունին .
Քանզի ըզտէրդ իւրեանց տեսին
Մերկ 'ի խաչին , չհանդուրժէին .
Որ փոխանակ բանականին
Անբան տարերքըն սարսէին .
Արդ ընդ վիմացն , որ շարժէին ,
Շարժեա զանշարժ սիրտս 'ի բարին .
Ընդ մեռելոցն , որ կանգնէին ,
Կանգնեա զմեղօք մեռեալ հոգիս .
Ընդ պատառել վարագուրին
Վասըն պարտեացն ադամային՝

Զիմ պատուաեա զՀնութիւն չարե
Զընջեա ըզգիր մեղաց անձին .
Ընդ խաւարեալ լուսաւորին՝
Հերքեա յինէն զգունդ խաւարին .
Ընդ լուսանալ յիններորդին՝
Լուսաւորեա զիս վերըստին .
Ընդ մերկանալ քո 'ի փայտին՝
Ընդ մերկութեան նախաստեղծին ,
Զիս ծածկեսցես փառօք քոյին
Յաւուր մեծի հրապարակին :
Որ փոխանակ խաչահանուաց
Տանըն լըքեալ Հրէից ազգին
Աղօթէիր առ Հայր յերկին ,
Թողուլ ըզմեղան որ գործէին .
Ինձ որ հոգւով հաւատացեալ
Երկրպագեմ քեզ, Միածին ,
Թող զիմ զյանցանս որ գործեցի ,
Մի յիշեսցիս մեղքն առաջին :
Որ յետ լընլոյ գրելոց բանին ,
Աւանդելոյ առ Հայր զՀոգին ,
Տիգով հարեալ զկնաւորին՝
Աղբեւր բըղխեաց 'ի սուրբ կողին ,
Ջուրն 'ի լուացումն աւազանին ,
Արիւնն յարբումն խորհըրդին ,
Վասըն վիրացըն կողածնին՝
Որով մեզաւ մարդն առաջին .

Զինքեան խօսեալ բանս օրինաց
Դնէր առաջի հրէից ազգաց ։
Մարմնով աճէր և զարգանայր ,
Որով մանկունք հասանէն յայր ·
Իմաստութիւնն իմաստնանայր ,
Որ իմաստնոց զիմաստըն տայր ։
Որում հնազանդ էն հրամանաց
Դասք անմարմնոց հոգեղինաց ,
Լինէր հնազանդ մարմնով ծնողաց ,
Ըստ օրինացն իւր հրամանաց ։
Ամս երեսուն այնպէս լռէր ,
Եւ ոչ նըշանըս ցուցանէր ·
Եւ ոչ բանիւ վարդապետէր ,
Այլ թագնաքար յերկրի շըրջէր
Մինչ 'ի լընուլ թիւ երեանին
Ցայր կատարեալ չափ հասակին ,
Զի մի՛ առ աչս երեւեսցին
Տնօրէնութիւնքըն մարդկային ։
Ցայնժամ գա՛յ 'ի Յորդանան
Առ Յովհաննէս 'ի Բանին ձայն
Անկարօ՛տըն մաքրութեան
Առ 'ի մաքրել զազգըս մարդկան ։
Ում Կարապետըն վըկայէ ,
Գառն Աստուծոյ վերաձայնէ ·
Ի մըկըրտել զնա հրաժարէ ,
Թէ ինձ 'ի քէն մաքրիլ պարտ է ։

Քանզի ծանեաւ 'ի հրեշտակէն,
Այն որ կոչեաց յանապատէն,
Թէ սա է Բանն 'ի սկզբանէն,
Զոր ծանուցեր յորովայնէն։
Թոյլ տուր արդէն, տէրն ասելով,
Եւ Յորդանան իջանելով.
Եւ Մըկրտիչըն մերձ կալով,
Ստեղծօղն ինքեան մըկըրտելով։
Հայր 'ի վերուստ աղաղակեալ,
Դա է Որդի իմ սիրեցեալ.
Աղաւնակերպ Հոգւոյն իջեալ,
Զանձն էակցին մասամբ ցուցեալ։
Ի յանապատ Հոգւով վարէր,
Քառասնաթիւ աւուրս պահէր.
Որպէս Մովսէս 'ի Սինա էր,
Եւ Եղիաս նովին ճընչէր։
Եւ զի սա տէր գոլով նոցին,
Եւ անկարօտ յամենայնին,
Ցինքն ոչ տայր թոյլ մերձիլ քաղցին
Մինչ 'ի լընուլ քառասնեկին.
Այլ զի մարմին էր մարդկային,
Ծածկեալ նովաւ լոյսն երկնային,
Արկեալ կամաւ փափաք հացին,
Իբըր կարթիւ կեր փորձողին.
Որ մերձենայր յերկրորդ Ադամ,
Ըստ առաջնոյն խորին խաբմամբ.

Գնէր առաջի, որպէս յայնժամ,
Բանըս պատրօղս երիւք փոփոխմամբ.
Եթէ Որդի ես Աստուծոյ,
Որպէս լըւայ ձայն 'ի վերոյ,
Գործովք ըզնոյն ճշմարտեցոյ,
Առ 'ի քարանց հաց լինելոյ:
Զոր ոչ սաստեալ ըմբերանեաց,
Իբրը կարող յանդիմանեաց.
Այլ հեզաբար պատասխանեաց,
Մեզ յօրինակ վարդապետեալ.
Թէ ոչ հացիւ միայն կեցցէ
Մարդ երկրածին, զի կըրկին է.
Հաց ըզմարմինըն բուծանէ,
Բանըն զհոգին կեցուցանէ:
Ի տաճարին այն աշտարակ
Դարձեալ կանգնի չարըն դիմակ.
Ի յայդմանէ զքեզ 'ի վայր արկ,
Ի հրեշտակաց լեալ ընդունակ:
Որում տըւեալ պատասխանի
Ըզգրեալըն յօրէնսըն Մովսէսի,
Մի՛ տար ըզքեզ 'ի փորձ չարի,
Զի տէր Աստուած քո ոչ փորձի:
Հանէ դարձեալ բարձր 'ի լերին,
Եւ ցուցանէ զփառըս ներքին.
Զոր խոստանայ տալ ստեղծողին,
Եթէ երկիր պագցէ նըմին:

Որում սաստեաց նա տիրապէս ,
Լիրբըն փախեաւ ծառայապէս .
Հրեշտակք մատեան 'ի յայն հանդէս ,
Եւ պաշտեցին աստուածապէս
Ի կերակրոց ինչ հիւթական ,
Որչափ մարմնոյ պատշաճական ,
Ոչ 'ի յերկրէ յօդեալ մարդկան ,
Այլ նորաստեղծ արարչական ։
Դարձեալ յետ փորձըն կատարման ,
Ցայտնէ զբնութիւնն աստուածական
Նըշանօք զարմանազան ,
Զոր ոչ տեսին ազգըք մարդկան ։
Նախ յաղթելով չար իշխանին ,
Ապա առեալ զաւար նորին .
Զի իրաւունք դատաստանին
Բռնադատող մի' կարծեսցին ։
Վասն այնորիկ բնութեամբ մերով
Մեր յաղթողին յաղթեաց մարմնով ,
Առ 'ի չպարծել չարին այսով ,
Թէ յաղթեցայ մերկ Աստուծով ։
Եւ մեզ ուսցուք յօրինակէն ,
Նախ խորտակել ըզչարին զէն ,
Ապա սաստել դիւացն անդէն ,
Զազգըս մարդկան բուժել յախտէն ։
Եթէ ախտից մեղաց յաղթեմք .
Զախտըս ցաւոց մարմնոց բուժեմք .

Եթէ զօրէնսըն կատարեմք ,
Ապա քարոզ լինել կարեմք :
Արդ մինչ վանեաց զընդգիմակայն ,
Առ Յովհաննէս գայ Յորդանան .
Զոր անուանէր 'ի լուր մարդկան
Գառն Աստուծոյ և քաւարան :
Դառնայ յաշխարհըն Գալիլեայ ,
Ի յանուանեալ գեղըն Կանայ :
Յերրորդ աւուր գալոյ նորայ ,
Ի հարսանիսըն կոչի նայ .
Յորս ինքն և մայրըն անդր ընթանան ,
Յայտնել ըզփառսն արարչական :
Սկիզբըն գործոյ սքանչելական
Առ 'ի տեառնէ եղեալ յայնժամ .
Զի որ ըզջուրըն հիւթական
Փոխէ 'ի տունկսըն սեռական ,
Դարձոյց և այժըմ նոյն հրաման
Զջուրն 'ի գինի անապական ;
Այն որ զընութիւնըս լուծական
Արար կայուն անմահական ,
Ցայժմուս լուացմամբըն յաւազան ,
Եւ անդ լուսոյն աստուածական :
Ի ճանապարհ վաստակեցաւ ,
Որով երկինք հաստատեցաւ .
Այլ է հանգիստ աշխատելոց ,
Եւ ճանապարհ մոլորելոց :

Առ Ջըրհորին ծարաւելով,
Զբնութիւն մարմնոյն ցուցանելով.
Սամարուհւոյն Ջուր խընդրելով,
Ըզջուր կենաց խոստանալով:
Այլուր առ ինք ձայնիւ կոչէ
Ըզծարաւիս, զի արբուսցէ.
Եւ որ ըստ գրոց կատարեսցէ,
Գետոց բղխել յորովայնէ:
Դարձեալ Կանայ Գալիլէին
Յայտնեաց ըզփառսն աստուածային,
Տալով որդւոյ թագաւորին
Զառողջութիւն ընդ հրամանին:
Պրոբատիկէ աւազանին
Ութուերեսուն ամ հիւանդին
Ասաց բառնալ զիւրեաւ մահճին,
Շըրջել Նովաւ յօր շաբաթին:
Յետ Յովհաննու մատնիլ բանդի
Ճրագին դըրնիլ ընդ գըրուանի,
Զայնըն քարոզ յանապատի
Լռել սըրով Հերովդէի,
Արեգականըն լոյս ծագէր,
Բանըն փոխան ձայնին խօսէր,
Զազգըս մարդկան լուսաւորէր,
Զախտըս մարմնոցն 'ի բաց մերժէր:
Նախ զաշակերտսըն ժողովեաց,
Զորս 'ի սկըզբանց յառաջ ընտրեաց.

Երկոտասանս խուռն անուանեաց ,
Եւ թանասուն զորս առաքեաց :
Նոքօք 'ի լեառըն հետեւի ,
Եւ ժողովեց որք ըզկընի ,
Խոնարհութեամբ բազմեալ նըստի ,
Բանայ զբերանըն կենդանի .
Ցորմէ բարի բանըս բըղխեալ,
Կենդանարար ջուր արբուցեալ,
Երանութիւնս իննեակ տուեալ,
Որոց գործովքըն հետեւեալ :
Նոյն որ երբեմն առ Մովսէսիւ
Սինէ խօսէր ահեղ ձայնիւ ,
Սա աստ խոնարհ և հեզ բանիւ
Լըսու զօրէնսն որ խիստ գանիւ .
Առ որս ընդդէմ զնա կարծէին
Օրէնական տուեալ բանին ,
Ասէ . չեկի զի լուծանին ,
Այլ 'ի լընուլ զնըւազ թերին :
Անդ ասացաւ թէ մի՛ շընար .
Բայց ես ասեմ , թէ հայեցար :
Ի սպանմանէ անդ արգելար .
Բայց աստ գեհեն , թէ բարկացար :
Ի յերդմանէ ուղիղ յԱստուած
Չէ յօրինացն այս արգելած .
Բայց առ յինէն է հրամայած ,
Թէ մի՛ երդնուր ոչ յարարած :

Եւ այսպիսի բանիւք բազմօք
Խրատեաց զաշխարհ ամէն նոքօք ,
Ուսոյց մաքուր լինել պահօք
Եւ ողորմած՝ որ ոչ կեղծօք :
  Եւ մինչ հոգւով կերակրեցան ,
Բազումք մարմնով բժշկեցան .
Կոյրք լուսով պայծառացան ,
Զլոյսն՝ որ յերկնից՝ աչօք տեսան :
Զձայնըն կենաց խուլք լուան ,
Եւ 'ի մարմնի անմահացան .
Համրոց լեզուք բարբառեցան ,
Եւ Աստուծոյ խօսակցեցան .
Ձեռք կարկամք պարզեցան ,
Եւ գօսացեալք առողջացան .
Իսկ եղջերուք կաղք ընթացան ,
Անդամալոյծք կանգնեցան :
  Ցաստուածակոխ լեռնէն իջեալ ,
Եւ ըզբորոտըն զայն սրբեալ .
Կափառնայում քաղաքն եկեալ ,
Զհարիւրապետըն ծանուցեալ .
Զհաւատըն մեծ յայնմի արար
Քան զԻսրայէլ հըզօրաբար .
Զծառայն հիւանդ յախտ մահարար
Կեցոյց բանիւ կենդանարար :
  Զոքանչն անկեալ կայր Սիմոնի
Ցախտըս ջերման յոյժ տագնապի .

Զըգեալ ըզձեռըն կենդանի ,
Ցարոյց առողջ վաղվաղակի ։
Բազմաց եղեւ նա կենսատու ,
Ցորժամ եհաս մուտ արեւու ․
Որ զՆսայեայ բանըն լընու ,
Թէ զցաւըս մեր 'ի մէնջ առնու ։
Զանձըն նենգօղ խորամանկին
Կըցորդ չէառ Ճանապարհին ,
Զորջք աղուեսուց ըզչար հոգին ,
Որպէս ասի ըզՍիմոնին ։
Միւսումն որ էր յաշակերտաց ,
Այն որ գընաց ըզհետ ասաց ,
Թողել զմեռեալն ոչ հրամայեաց ,
Այլ քարոզել զբանըն կենաց ։
Ընդ աշակերտսն եմուտ 'ի նաւ ,
Այն որ կապէ զծով աւազաւ ․
Զոր 'ի շարժելըն մըրըրկաւ ,
Հանդարտեցոյց մի հրամանաւ ։
Եկեալ յաշխարհ գերգեսացոց ,
Պատահեցան տանջեալք յայսոց ․
Զմարգիկն արագ առողջացոյց ,
Զդեւսըն խոզիւքըն խորացոյց ։
Լուծեալ մարդոյն ըզմեղս եւթող
Որպէս հըզօր տէր և յաղթող ․
Զմարմինն այնքան արար կարող ,
Մինչ զի մահճացն եղեւ բարձող ։

Ի յանցանելն առ մաքսանոցն ,
Եստես Նըստեալ ըզՄատթէոս .
Ծանուեաւ զՀոգւոյն որ 'ի Նմա լոյս ,
Կոչեաց որպէս զԵղիսէոս :
Աշխարհական սիրոյն կապանս
Խըզեալ սիրովն աննիւթական ,
Չեղեւ արգել ինչ և խափան
Լըսել ձայնին աւետումնական :

Յայրոս անուն զուստր իշխանի ,
Ախտըն մահու հանեալ զոգի ,
Կանգնեալ բանիւ նորին լինի ,
Որպէս 'ի քնոյ զարթուցանի :
Ի ճանապարհըն յայն բարձ
Տեսանես կինըն հուպ լինի .
Քղանցքիւք զգեստուն յախտէն բուժի ,
Հաւատըն մեծ հրատարակի :

Կուրաց երկուց առ ոտս անկեալ ,
Ձեռին հրամանաւ լուսաւորեալ :
Համըր դիւէ զոսմըն կապեալ ,
Շնորհեաց խօսել ըզգօնացեալ :

Ըզգօնացեալն 'ի մէջ կոչեաց ,
Զօդել ըզձեռըն հրամայեաց .
Զմեռեալ անդամն 'ի կարգ Թըւեաց
Այլ անդամոցըն կենդանեաց :

Դիւահարին խուլ և համըր
Շնորհեաց ըզխօսս և ըզլըսել .

Որով ըզգաւքըն մահաբեր
Բեղզեբուղաւ , ասէն , հաներ ։
  Նըստեալ 'ի նաւ յեզըր ծովըն ,
Վարդապետէր առ ցամաքըն
Ըզսերմանեացն առակ խորին ,
Զոր եւ ցանել յերկիր բանին ։
Ոմն 'ի թըռչնոց օդականին
Առ ճանապարհ քաղեալ հատին ,
Ոմն յապառաժ տապով կիզին ,
Եւ այլք 'ի փուշըն հեղձանին .
Իսկ որ յոգին բարւոք անկաւ ,
Եբեր պըտուղ առհմականաւ .
Բարեբախտից պատահեցաւ ,
Ըստ հաւատոց պարգեւեցաւ ։
Օրինաւորըն երեսնաւոր ,
Եւ կուսութիւն վաթսընաւոր ,
Իսկ պատարագքըն բանաւոր
Վըկայքըն արեամբ հարիւրաւոր ։
Դարձեալ հարիւր բերեալ պըտղոց ,
Գաւառն երկնից մըճակելոց .
Եւ փափկութեան դըրախտըն մերոց ,
Երկիրս նորոգ տեղի վերջնոց ։
  Եւ զորոմանցն յագարակին ,
Զոր 'ի վերայ ցանեալ չարին ,
Ի հընձողաց խըրձուենք կապին ,
Եւ ընդ ցանօղն 'ի հուր մատնին ։

Յայնժամ՝ արդարքն արեգական
Փայլեն ծագման լուսոյն նըման ․
Որք 'ի յորումն ոչ փոխեցան ,
Այլ Աստուծոյ միացին ցորեան ։
Նա և ըղձաւորըն մանանխոյ ,
Որ փոքր է նա սերմըն խոտոյ ,
Աճէ լինի ծառ մեծարգոյ ,
Մինչ զի զթըռչունս բառնալ յոստոյ ։
Դարձեալ խօսի վասըն խմորոյ ,
Յագարակին գանձ ծածկելոյ ,
Զվաճառականըն մարգըրտոյ ,
Եւ ուռկանին ծովարկելոյ ։
Որք և բանիւ զանազանին ,
Իրօք 'ի նոյն միտըս բերին ․
Զարքայութեան որդիս յայտնեն ,
Որ 'ի նուաղից բազումք եղեն ։
Եկն 'ի քաղաք իւր Նազարէթ ,
Յօր շաբաթու 'ի ժողովն երթ ․
Զգիրս Եսայեայ , զոր ոչ ուսաւ ,
Ի փորձողաց լուր ընթերցաւ ։
Որք նախանձու բորբոքեցան ,
Հանին լերինըն յարտեւան ․
Դահավիժել զնա կամեցան ,
Որ գնայր ընդ օդըն յանդիման ։
Զճրագ օրինացըն Յովհաննէս ,
Որ հրաժարեալ էր յաշխարհէս ,

Digitized by Google

Ղիչոյց արեամբըն Հերովդէս
Ցիւրում ծննդեանն աւուր հանդէս ։
Որ մինչ 'ի բանդն էր՝ առաքէր
Եւ ըղձալոցըն հարցանէր ․
Դու՞ 'ի ներքին բանդըն գայցես ,
Եթէ զայլ ոք առաքեսցես ․
Զի աւետիս տամ խընդալով ,
Եւ կարապետս լինիմ յուսով ,
Որպէս յերկրի ձայն բարբառով ,
Նոյն 'ի դըժոխս որոտալով ։
Զի դու փեսայ ես երկնային ,
Ես հարսնածու մաքուր հարսին ․
Դու արեգակն առաւօտին ,
Եւ ես ճըրագ գիշերային ։
Ում վըկայէ բանիւ յայտնի
Սոյն Յովհաննէս յայլում վայրի ․
Եւ գաւանէ ըզսա Որդի
Հօր Աստուծոյ անմեկնելի ․
Որ հաւատայ Որդւոյ , ասէ ,
Զյաւիտենից կեանսըն տեսցէ ․
Եւ որ Որդւոյ չհաւատասցէ ,
Ըզբարկութիւն տեառըն կրեսցէ ։
Մինչ 'ի քաղաքըն անուն Նային
Երբեմն երթայր առաւօտին ,
Ըզմիամօր զպզպրւոյն որդին
Եւտես բարձեալ մեռեալ ըզգին ։

Ի յարտասուս մօրըն նայէր ,
Արագ ըղձուդ սըրտին սփոփէր ·
Մանուկ դու , քեզ ասեմ , ձայնէր ·
Եւ ընդ բանին յարուցանէր ։
Ի նոյն քաղաք մինչդեռ բազմէր ,
Փարիսեցւոյն տունըն ճաշէր ,
Կինըն պոռնիկ համարձակէր ,
Ըզշիշ եղոյն նարդեան բերէր ·
Ըզգլուխ բոլոր էիցս օծէր ,
Առ ոտս անկեալ տեառն արտասուէր ։
Զոր հաւատով տէրըն կանգնէր ,
Թողեալ լիցին քեզ մեղք , ասէր ։
Որ կերակրէ զաշխարհ ամէն ,
Ետ քաղցելոց հաց գարեղէն ·
Եւ 'ի հընգից նըկանակէն
Յաւել նըշխար հինգ հազարէն ։
Եւ որ գըտնէ յամպս ըզգընաց ,
Մինչ անմարմին էր , բան ասաց ,
Նոյն և մարմնով թեթեւ գընաց
Ի վերայ ջուրցըն կոհակաց ·
Ըզպետրոսի ձեռըն կալաւ ,
Մինչ 'ի ծովուն ընկըղմեցաւ ·
Ալեօք մըրրիկ զեղուին 'ի նաւ ,
Հողմոյն սաստեալ , հանդարտեցաւ ։
Քանանուհւոյն լըւաւ ձայնի ,
Վասըն դըստերըն այսահարի ·

Առեալ զմանկանցն անարժանս
Ըզհացն՝ եւ շան տիրասիրի ։
Զկինըն կապեալ դիւին կարկամ
Անկեալ յերկիր ութուտասն ամ,
Կանգնեաց յախտէն առողջանդամ
Կենդանարար բանիւն յայնժամ ։
Սովեցելոց դարձեալ շնորհէ
Լի կերակուր յանապատէ ․
Քանզի յեւթանց նըկանակէն
Ըզչորս հազարսըն կերակրէ ։
Խօսի բանիւ նա հարցական
Ընդ աշակերտսն երկոտասան
Վասըն կարծեացըն հրէական,
Թէ ո՞ւմ ասեն զինէն նըման ։
Ոմն ասելով թէ Եղիայ,
Եւ միւսն ասէ զԵրեմիայ ․
ԸզՅովհաննէս ասեն նոքա,
Եւ կամ ըզմի նըման սոցա ։
Որք ոչ լըւան ձայնին յամպոյ
Ի Յորդանան վըկայելոյ,
Լուարուք Որդւոյ իմ սիրելւոյ,
Որ է կամաց իմոց հաճոյ ։
Իսկ որ լըւաւ զձայնըն Հոգւով,
Ներկեաց ընդ միտս անեղ գունով,
Աղաղակեաց դաւանելով,
Դու ես Որդի Հօր, ասելով ։

Որով լըսէր զպատասխանին
Ի բերանոյն սուրբ զերանին .
Եւ զխուրական անուն վիմին
Շնորհէր Նըմա զանշարժելին :
Ցետ վեց աւուր ըստ Մատթէին ;
Եւ ութօրեայ ըստ Ղուկային ,
Որ մին զաւուրսն եցոյց միջին ,
Միւսըն զնախնին և ըզվերջին ,
Հանէ 'ի լեառըն առանձին
Զնա և զորդիսըն Զեբեդին .
Ցայտնէր ըզփառսըն հայրենին ,
Եւ ճըշմարտէր զբանըս Նորին :
ԶՄովսէս բերեալ 'ի մեռելոց ,
Եւ զԵղիաս 'ի յանմարմնոց ,
Ցուցեալ թէ չէ ումն 'ի յայլոց ,
Այլ տէր բոլոր արարածոց :
Զի ասէին վասըն Նորուն
Լուծիչ գըրոյն և շաբաթուն ,
Զօրէնսդիրըն երբեր նոցուն
Եւ որ վառեալըն էր նախանձուն :
Եւ զի յերկուց բան հաստատի ,
Մինչեւ յերիսն օրէնսդրի ,
Երկուս 'ի հնոցն ածեալ լինի ,
Երիւք Նորովքըս վըկայի :
Ի յայս խորհուրդ զերիս միայն
Արար գիտող այս խորհրդեան .

Եւ զի Յուդա անմիաբան ,
Չէր արժանի այնմիկ տեսլեան ։
Ամպ հովանի նոցա լինէր ,
Եւ Հայր յամպոյն աղաղակէր .
Դա է Որդի իմ՝ վըկայէր ,
Եւ զպետրոսեան բան հաստատէր .
Ոչ եթէ Բանն 'ի դմա բնակեալ ,
Այլ որ յերկուցըն միացեալ .
Ոչ որոշեալ ոչ բաժանեալ ,
Որպէս Նեստոր յերկուս հատեալ ։
Ի գոչմանէ ահեղ ձայնին ,
Ի ծագմանէ լուսոյ արփին ,
Սարսեալ յերկիր անկանէին ,
Եւ 'ի ծածկելըն կանգնէին ։
Պետրոս յահէն գոլ զարհուրած ,
Խօսէր զերից տաղաւարաց .
Անգիտանայր թէ զինչ ասաց ,
Հոգին յայտնէր զերրեակ անձանց ։
Եւ պատուիրէր զայս ոչ պատմել ,
Մինչեւ 'ի մեռ ելոցն յառնել .
ԶԵղիայէ սկըսաւ խօսել ,
Զերկրորդ գալըստեան իւր յարդարել ։
Եւ 'ի լերինն օթագայեալ ,
Առաւօտուն վաղիւն իջեալ ,
Ըզլուսնական այսըն մերժեալ ,
Եւ ըզմանուկըն բըժըշկեալ ։

Բայց անդրանիկն արարածոց ,
Նոյն անդրանիկ և մեռելոց ,
Պաշտանջի հարկս 'ի ստեղծուածոց
Ընդ անդրանկաց եբրայեցոց ։
Զոր Պետրոսի տալ հրամայէ ,
Ոչ յարծաթոյ որ 'ի յերկրէ ,
Այլ արկանել կարթ 'ի ծովու ,
Զստատերն առնուլ 'ի ձրկանէ ։
  Ի յօրինակ բնութեան մարդկան
Տասըն բորոտքըն սրբեցան .
Ինունքըն տալ փառս ոչ դարձան ,
Բայց 'ի միոյն օտարական ։
  Թըքով լուսոյ կենարարին ,
Լոյս շնորհեցաւ 'ի ծնէ կուրին .
Ձեռն որ եստեղծ զմարդն առաջին ,
Ի նոյն նիւթոյ լոյս ետ նըմին ։
  Առ Ղազարու բարեկամին
Զինքն 'ի յերկուց յայտնեաց Բանին .
Մի էութիւն , գործըք կըրկին ,
Աստուածային և մարդկային ։
Արտասուելովն ըզսիրելին
Եւ ո՞ւր եդէքն ասել զմարմին ,
Այսու զընութիւնըս մարդկային
Ցուցանելով ըզհաստատին ։
Իսկ 'ի կոչել զանուն նորին
Ի դըժոխոց դրանց ըստորին ,

Լըսել հոտեալն 'ի տապանին
Եւ գալ արտաքըս զոյգ ձայնին ,
Այսու զընութիւնն աստուածային
Եցոյց խառնեալ հողեղինին ։
Քանզի ձայնն ոչ էր անմարմին ,
Այլ 'ի մարմնոյ խառն ընդ Բանին ․
Ոչ 'ի յերկուս բաժանելով ,
Եւ երկակի կերըպ կրելով ․
Ոմն ըստ մերումս արտասուելով ,
Ոմն ըզմեռեալըն կոչելով ,
Այլ 'ի յերկուց միացելում
Անճառաբար մի եղելում
Կըրկին կըրից ներգործելով
Ախորժաբար կամաց միում ։
Ընդ յարութիւնըն Ղազարու
Հըրեայք լըցան չար նախանձու ․
Ի յԵփրայիմ քաղաքն այնու
Գընաց յայն կոյս Յորդանանու ։
Եւ յԵրիքով քաղաք դարձեալ ,
Զանէծս Յեսուայ անդուստ բարձեալ ․
Ի տուն Զակքեայ սիրով մըտեալ ,
Եւ զըրկողաց օրէնս եդեալ ։
Առ Ճանապարհն Երիքովի
Լըսաւ կուրացն աղաղակի ․
Խոնարհաբար առեալ զանեղի ,
Լոյսըն շնորհեաց պարգեւ լուսի ։

Մերձեալ զատկին հրէականի,
Բեթանիա եկաւորի.
Ընդ Ղազարու յընթրիս բազմի,
Ի Մարեմայ Նարդեամբ օծի:
Որոյ Քրովբէք աթոռ փառաց,
՚Նըստաւ յանարդ յիւր արարած.
Եւ զոր օրհնեն գապք հրեշտակաց,
Գովեն մանկունք ըստընդիաց:
Էջն օրինակ Հրէից ազգաց,
Եւ յաւանակն հեթանոսաց.
Ոմն օրինօքն ըզգօնացած,
Ոմըն տըրմուղ ըզհետ կամաց.
Յորըս բազմի Բանն Աստըւած,
Մաքուր յոգիս երկուց ազանց,
Որպէս ըզվէմ անկեան քարանց
Միացուցիչ կըրկին կողմանց:
Ոստս 'ի ծառոց առեալ ծերոց
Ի ձիթենեաց պտղաբերաց,
Իմաստութեան Նըմանելոց,
Ողորմութեան տիպ ցուցելոց:
Արմաւենիս բերեալ տղայոց,
Ի բարձրութեան ձեւ արդարոց,
'Դ առաջ խաղան ձայնիւ երգոց
Սուրբ արարչին արարածոց:
Ցանպըտղութեան դէմըս Հրէից,
Կամ 'ի մեղաց պըտղոյն բերից,

Առ Թըզենին ձգեալ անիծից ,
Եղեւ ցամաք փոյթ 'ի հիւթից ։
Ի ձիթենեաց լերին նըստէր
Եւ զաշակերտսն ուսուցանէր ․
Զապագայից խըրս պատմէր
Եւ ըզգալըստեան երկրորդ յայտնէր ։
Տայրն կուսից այն առակաւ ,
Հինգն իմաստուն լի լապտերաւ ,
Հինգըն յիմար 'յորոց չառաւ
Ողորմութեան եւղ ամանաւ ։
Եւ ծառայից այն տաղանդօք ,
Միումըն հինգ մեծաց շնորհօք ,
Միւսումն երկու միջակ բարեօք ,
Այլումըն մի փոքումբք գործօք ։
Յորժամ փառօքըն հայրական ,
Եւ հրեշտակօքն անմարմնական
Գայ 'ի դատել զորըս ստեղծան
Զբանականաց ազգ ամենայն ,
Զբարիսն 'յանճառ կեանըս կոչէ ,
Որ աստ բարւոյն հետեւող է ․
Զչարսըն բանիւ անիծանէ ,
Եւ ընդ չարին 'ի հուր մատնէ ։
Յայնժամ մի ոմն յաշակերտաց ,
Յուդա անուն Սկարիովտաց ,
Գաղտ 'ի Հրէից ժողովն գընաց ,
Մատնել 'ի մահ զտէրըն կենաց ։

Ընդ երեսնից Թիւ արծաթեն
Ծախէր զարիւն մերոյ գնողին ·
Վաճառակուր գոլ եղկելին ,
Կորոյս ըզշահն ընդ վաճառին ։
Ցերեկոյի հինգշաբաթի
Անհաս վերնոցըն խոնարհի ·
Լոյսըն սփածաւ ղենջեակ կտաւի ,
Ջուրըս լուանայր հողեղենի ·
Եկեր ըզգառըն հին զատկի ,
Եւ ըզբաղարջն ընդ եղեգի ։
Ելից զօրէնըն Մովսէսի ,
Ճըշմարտութեանն օրինակի ·
Ըզհինն 'ի նորըս փոխելով ,
Ըզստուերըն 'ի լոյս ճըշմարտելով ,
Փոխան գառինն ինքըն գոլով ,
Գառն Աստուծոյ նուիրելով ։
Ընդ բաղարջին հաց անխըմոր
Ետ ըզմարմինն իւր զերկնաւոր ,
Ըզկուսականն անսերմնաւոր ,
Եւ ոչ յախտից գոլ երկրաւոր ։
Եւ ընդ գառինն արեան ուխտին
Զարիւնն իւր ետ մեզ ուխտ կըրկին ,
Եւ եղեգան դառնադունին
Փոխան ըզվարս աստուածային ։
Առեալ զպատառըն Յուդայի ,
Եւ ել արտաքս 'ի գիշերի ։

Պետրոս խօսէր խրախուսելի ,
Եւ կըշտամբիւր հաւախօսի :
Ըզմետասանըն յորդորէր ,
Ոչ երկընչել քաջալերէր •
Զիւր յաշխարհէ փոխիլն ասէր ,
Եւ ըզգալըստ Հոգւոյն պատմէր :
Ի վերնատանըն խորհըրդոյ
Եւ կեդրոնեան յայն կոյս ձորոյ •
Եմուտ պարտէզ ընդ պարտիզոյ ,
Եմոյծ զԱդամ դրախտին ներքոյ :
Երիւքն եղեալ առանձնաբար ,
Հոգայր ըզկրեցըն տըրտմաբար •
Փըրկել զաշխարհ հոգւս յօժար ,
Բայց է ընութիւն մարմնոյս տըկար :
Ոչ ումն ուժեղ և զօրաւոր ,
Եւ ումն անզօր վըտանգաւոր ,
Այլ մի և նոյն գոլ միաւոր ,
Կըրէր ըզկիրսըն կամաւոր :
Ծունըր դընէր խոնարհական ,
Որում կըրկնի ծունր ամենայն •
Բանըս խօսէր աղօթական
Վասն իմ ընդ Հօր իւր էական •
Եթէ փըրկել մարդկան հնար է
Առանց մահու իմ որ գըրեալ է ,
Բաժակ մահուս յինէն անցցէ ,
Ոչ իմ կամաւ՝ այլ քոյդ տեսցէ :

Այս Հօր կամաց չէ հակառակ ,
Որպէս կարծեն ոմք են ներհակ .
Այլ հաւասար յայս և միակ
Ցուցցէ զերկուսն անընդգրկմակ ։
Առ յերկեղէն քըրովբից հասեալ ,
Երակաձեւ կայլակ վէժեալ .
Ի զօրանալ հրեշտակ մերձեալ ,
Զօրհնական գիրըն լըցեալ ։
Զի կատարեալ էառ ընութիւն
Աստուածըն Բան ըզմարդկութիւն ,
Պարտ էր զերկիւղ և զտըրտմութիւն
Ցիւրումըն կրել անօրէնութիւն ։
Էհաս Ցուդաս , որ մատնելոց ,
Համդերձ դասուք ուրացելոց .
Անկան նըման ստորանկելոց ,
Որք յաւիտեան չեն կանգնելոց ։
Ցուդաս մերձեալ համբուրելով ,
Առիթ մահու նըշան տալով .
Փոխան սիրոյ զնա մատնելով ,
Զար ընդ բարւոյ վըճարելով ։
Պետրոս առ գութ Ջերմըն սիրոյ
Ըզծառային չարաբարոյ
Էհատ սուսերբ զականջըն աջոյ ,
Որ ոչ լըսաւ տեառըն իւրոյ ։
Իսկ տէրըն մեր արագապէս
Ցունկըն մերձեալ ըղձըղչկապէս ,

Առողջացոյց աստուածապէս ,
Զոր ոչ տեսին կուրացն հանդէս :
Կալան կամաւ զանկապելըն ,
Կապեալ ըզձեռս արձակողըն ,
Ի յապարանսըն տանէին
Կայիափայ և Աննային :
Այլ աշակերտքըն ցըրուէին ,
Պետրոս ըզհետ երթայր նըմին .
Ի յաղջկանէ շարժեալ Վիմըն ,
Թողոյր երից ըզբաղձալըն :
Զի տկար բնութիւնըս մարդկային
Առ Աստուծոյ մի՛ պարծեսցին ,
Ընդդիմանեալ հնարից չարին
Առանց նորին հըզօր ձեռին :
Նըշանակեալ հաւըն խօսէր ,
Առ 'ի Պետրոս տէրն ակնարկէր .
Զբանըն յիշեալ դառն արտասուէր ,
Ի գըրըմանէն դարձեալ կանգնէր :
Ծառայն զերես տեառն ապտակէր ,
Յորմէ Սերովբէն թեւասքօղէր :
Ժանդըն վըկայս չարեաց բերէր ,
Օրինազանց դատապարտէր :
Պեղծ բերանով թըքանէին
Յայն՝ որ թըքով լոյս ետ կուրին :
Զդէմըն լուսոյ ապտակէին ,
Զայն որ փայլեաց լոյս 'ի լերին :

Ի յուրբաթու առաւօտին
Եսուն յատեան Պիղատոսին ·
Ծառայն յաթոռ դատարանին ,
Տէրն 'ի դատել կայր առաջին ։
Ի հարցանել Պիղատոսի ,
Տէրն ոչ առնէր պատասխանի ·
Զի կանխատաց գիրըն լըցցի ,
Եղէ ես մարդ որ ոչ խօսի ։
Զոր եստ տանել առ Հերովդէս ,
Առ 'ի նորին դատել հանդէս ·
Եւ Հերովդի անգոսնելով ,
Արհամարհեաց նըմանապէս ։
Բայց որ դըլուխ եղեւ անկեան ,
Միջնորդ գոլով Հօր և մարդկան ,
Սովաւ նոքա նախ հաշտեցան ,
Ապա բնութիւն բոլոր մարդկան ։
Որոյ ըզգեստ է լոյս փառաց ,
Արկին հանդերձ նախատանաց ·
Նախ ըսպիտակ հասարակաց ,
Ապա քղամիդ կարմիր ներկած ·
Զի որ զգեցեալն էր , էր կըրկին ,
Աստուած և մարդ մի երկոքին ·
Սպիտակն 'ի լոյս՝ աստուածային ,
Կարմիրն 'ի գոյն արեան՝ մարմին ։
Ի յընտրութիւն կամաց նոցա ,
Խընդրել զՅիսուս թէ զԲարաբբա ,

Աղաղակեն խաչել ըզնա ,
Զգողն արձակել փոխան Նորա ։
Պիղատոսի զձեռսըն լուացեալ ,
Ի յարենէն անպարտ եղեալ ,
Ի գլուխ ինքեանց , ասեն , բարձեալ
Եւ 'ի նոցունց որդւոց ծընեալ ։
Ապա 'ի մահ դատապարտեալ ,
Զմահապարտաց գանըն հարեալ ,
Ի զինուորաց ձեռըս տըւեալ ,
Որք յապարանսն ըզնա տարեալ .
Ի հանդերձէն մերկանալով ,
Եւ զգեցուցին կարմիր գունով .
Պըսակ 'ի փշոց նախատելով ,
Եւ եղեգան գաւազանով ,
Ի ծունր իջեալ կատակէին ,
Զգլուխն եղեգամբ հարկանէին
Զփուշ անիծիցըն բարձողին ,
Եւ առ 'ի կեանս ըզմեզ գրողին ։
Յետ այնր 'ի խաչըն տանէին .
Բառնայր ուսով ըզփայտ խաչին
Մինչ 'ի տեղի Գողգոթային ,
Ուր էր եդեալ մարդն առաջին ։
Ետուն ըմպել գինի զմըռսեալ ,
Եւ կերակուր լեղեաւ խառնեալ .
Զոր ըստ մահուն չափ ճաշակեալ ,
Եւ զբովանդակն այն ոչ արբեալ .

Զի ըզձեռլին իւր ստեղծուածոյն
Զառ 'ի մեղաց ճաշակ մահուն,
Փոփոխեսցէ ըզդատուննագոյնն
Ի համ կենացըն քաղցրագոյն ։
Մերկացուցին զերկրորդն Ադամ,
Զի զգեցուսցէ ըզհինն Ադամ.
Զհանդերձն յինքեանս բաժանեցան,
Պատմուճանին վիճակ արկան.
Ըզձեռսն և զոտսըն ծակեցին
Ըստ յայտնապէս դաւթեան ձայնին,
Ընդ փայտ խաչին բեւեռեցին
Զմատունսն որ գրեաց 'ի տախտակին ։
Ձեռք ընդ ձեռին տարածելոյ,
Ոտք ընդ ոտին ընթանալոյ.
Փայտ ընդ փայտին դատըն պըտղոյ,
Կեանք ընդ մահուն փոխարկելոյ ։
Ի մէջ երկուց անօրինաց
Կայր մերկացեալ տուողն օրինաց.
Զոր ոչ տեսին ազգըն կուրաց,
Բայց 'ի միոյն յաւազակաց ։
Ետես խաչեալ և հաւատաց,
Թէ է մահու տէր և կենաց ։
Յիշեա զիս, տէր, աղաղակեաց.
Ընդ իս լիցես, պատասխանեաց ։
Վասն այսորիկ արեգական
Ըզլոյսն արար գիշերանման,

Ծածկեալ ըզլոյսըն զգայական
Վասըն լուսոյն արփիական .
Ըզստուերըն քօղ արկ մերկութեան ,
Զի մի՛ տեսցէ ակն անարժան .
Եւ զի լուսոյն մեծի ծագմամբ
Ճաճանչ փոքունց խաւարեսցան :
Ի մէջօրեայն նըսեմացաւ ,
Յորժամ Ադամ մեղօք մեռաւ .
Ի յիններորդն 'ի լոյս դարձաւ ,
Յորում մահուամբ մահըն լուծաւ :
Քացախ ետուն 'ի ծարաւի
Այնմ որ բըղխեաց գետ յԱդենի ,
Եւ 'ի վիմէն յանապատի
Երկոտասան վըտակ բարի :
Յերրորդ ժամու պատրեալ օձին
Զմիտըս նախնոյ մօրն Եւային ,
Ի վեցն անկեալ մարդն առաջին
Հաւանական բանիւ նորին .
Ի սոյն ժամու տէրն 'ի խաչին ,
Զի քաւեսցէ զմեղըս նոցին .
Եւ յորժամ ել Ադամըն հին ,
Եմոյծ ըզգողն 'ի մէջ դրախտին :
Էլի էլի , աղաղակեաց ,
Իմովս ընդ իմ զՀայր աղաչէր .
Նոցա չյիշել զմեղս աղօթէր .
Եւ ըզմեզ ոչ թողուլ հայցէր :

Դարձեալ ձայնիւ աղաղակեաց ,
Զհոգին կամաւ Հօր աւանդեաց .
Եւ ընդ ինքեան վերաթեւեաց
Զհոգիս մարդկան Հօր ընծայեաց ։
Ոչ ըստ մերումս արտաշընչէ ,
Այլ արտաքոյ մերոյս գործէ .
Զի մերձ 'ի մահ ձայն մեր լռէ ,
Իսկ նա հընչմամբ մեծաւ գոչէ ։
Թէ. ոչ այլուստ՝ աստ իմանի ,
Եթէ կամաւ նա մեռանի .
Որպէս ասաց զինքըն նախկի ,
Դընօղ ուառող անձինն յայտնի ։
Նոյն Բանն, որ էր ծընունդ նա Հօր ,
Եղեւ մարմին յորովայն մօր .
Ճըշմարտապէս մեռաւ մարմնով .
Զի փըրկեսցուք մեք Աստուծով ։
Անմահ բնութիւնն աստուածային
Մեռաւ բնութեամբ մահկանացուին ,
Եւ մահացուն խառնեալ 'ի նմին
Եղեւ անմահ ընդ անմահին ։
Ոչ ոմն անմահ ոմըն մեռեալ .
Զի այս երկուք են բաժանեալ .
Այլ որ անմահ , նոյն և մեռեալ .
Եւ որ մեռեալ , նոյն և մնացեալ ։
Որպէս ծընունդըն սքանչելի ,
Նոյնպէս և մահըն հրաշալի .

Եւ երկուքեան անքըննելի ,
Զի Աստուծոյ է արարչի ։
Զի անդ որ էր դարձեալ լինի ,
Եւ էութիւնն ոչ կորընչի ·
Եւ աստ անմահըն մեռանի ,
Եւ 'ի մահուն էր կենդանի ։
Որպէս և հուր ընդ երկաթոյ
Տանջի ուռամբ հարկանելոյ ·
Թէ և նըման չէ այս ազգոյ ·
Զի երկոքեանն են 'ի նիւթոյ ·
Այլ դուզնաքեայ նըմանելով ,
Հոգւի կրակից մարմնոյ գոլով ։
Բայց չէ և այս ճըշմարտելով ,
Զի բաժանի մեռանելով ·
Իսկ էութիւնն աստուածական
Յառեալ բնութիւնըս նիւթական
Անքակտելի է միական
Յորովայնէն մինչ յաւիտեան ։
Ուստի հոգւի իւր մարդկային ,
Զոր աւանդեաց առ Հայր յերկին ,
Հանդերձ բնութ̃ին աստուածային
Էջ 'ի դժոխսն որ 'ի բանդին ։
Էր բովանդակ և 'ի մարմին ,
Մինչ բաժանեալ եղեւ հոգւին ·
Եւ ոչ թափուր ծոց հայրենին ,
Եւ ընդհանուր էից բնութիւն ։

Եւ զի Աստուած էր որ մեռաւ ,
Ցայտնեն զարմանքն որ գործեցան .
Երկիր հիմամբք սասանեցաւ ,
Եւ վայրագոյր ընդ մէջ հերձաւ .
Վէմք 'ի յինքեանց պատառեցան ,
Եւ գերեզմանք մահու բացան .
Մարմինք սրբոց բազմաց յարեան ,
Ի հաւատալ մեզ յարութեան :
Եւ զի մեռեալն էր կենդանի ,
Թէպէտ և մահն էր հաւաստի ,
Ցայտնէ կողին խոցուած տիգի ,
Կայլակ աղբերցն կրկնակի .
Ջուրն 'ի լուանալ մեղուցելոց
Ի մահ նորա մկրտելոց ,
Արիւնն 'ի սնունդ մաքուր հոգւոց
Առ 'ի Քրիստոս տղայացելոց :
Կողին խոցմամբն , որ պատառեցաւ ,
Ըզկողածնին մեղըս ջընջեաց .
Զեկեղեցի այնու շինեաց ,
Եւ ընդ դրախտին մեզ պարգեւեաց :
Որ եղելոցըս շնորհ բաշխէ ,
Ըզնոյն պարգեւս Յովսէփ հայցէ .
Եւ զոր փառաց լոյսըն ծածկէ ,
Մաքուր կտաւօք ըզնա պատէ :
Բանն որ ըզբանըս ստեղծանէ ,
Ի բարբառոյ բանից լռէ .

Որ շունչ բոլոր զգայնոց շնորհէ,
Հաստատելոցն ոչ տարբերէ։
Զաչս որ զանդունդըս նըկատէ,
Ցովսէփ ձեռօք կափուցանէ.
Զունկն որ լըռեալ շըրթանց լըսէ,
Դիպուած մահուն խըփուցանէ։
Զձեռան որ զերկինըս հաստատէ,
Երիզապլինդ պարասանդէ.
Զոտս որ ընդ օդ վերաթեւէ,
Տըկար բնութիւն կասաւոյ կապէ։
Խունկ և զըմուռ նըշան թաղման
Մարմնոյն բերին անապականն.
Որոյ եթերն է օթարան,
Մարմնով եղաւ 'ի նոր տապան։
Վիմամբ ընդդէմ եդեալ գըրան
Զվէմն արդելըն ըզգըլուխ անկեան.
Եւ զարեգակն անստուերական
Ի գուբ ծածկեն նըսեմական։
Անքուն էիցըս պահապան
Նընջէ մահուամբ 'ի գերեզման.
Եւ յոր երկինք չեն բաւական,
Կընքի յայրին պարագըրական։
Որով մեռեալք համանգամայն
Ցառնեն ձայնիւ կենդանական,
Ինքըն մեռեալ անօրինական
Կայր 'ի բանդին գըժոխական։

Ցորմէ սարսեն զօրքըն վերին ,
Զինուք պահեն ազգ երկրածին ․
Եւ տըրտմութեան մեր բարձողին
Կանայքն ողբով եւղըս բերին :
Նընջէր առիւծն 'ի խոր բանդլին ,
Մըռընչելով չար գազանին ,
Այն որ ըզծնունդս ադամային
Կըլեալ պահէր յորովայնին :
Մինչեւ ժայթքեաց զամենեսին ,
Զինքըն կորոյս դիւօք նորին :
Զաւարն առեալ ըզգերողին ,
Դարձոյց անդրէն առ հայրենին :
Ոչ արգելեաց վէմն երկրաւոր
Ցելեց ըզվէմըն հոգեւոր ,
Այլ յառաւօտն երրորդ աւուր
Ծագեաց յերկրէ լոյս երկնաւոր :
Ի կոյս մօրէ ծընեալ մարմնով ,
Ըզկուսութիւնն ոչ խախտելով ․
Ի կոյս երկրէ նոյն յառնելով ,
Եւ զկնիքն ամբողջ իսկ պահելով :
Մի զօրական զնորա տեսեալ
Դասք զինուորացն , եղեն մեռեալ ․
Ըզկափարիչ վէմըն բարձեալ ,
Ահեղ լուսով վերանըստեալ ,
Ձայն աւետեաց կանանցն երգէր ,
Նըման փողոյն հընչման գոչէր ․

Յարեաւ խաչեալըն զոր խնդրէք ․
Մի՛ զարհուրիք , այլ խընդացէք ․
Աշակերտացըն պատմեցէք ,
Եւ զԵւայի պարտըն լըցէք ․
Ի Գալիլեա երթայք տեսէք ,
Եւ աշխարհի քարոզեցէք ։
Այլոցն երթեալ վաղվաղակի ,
Բայց Մարիամ կայր յարտասուի ․
Նոցա ’ի գնալըն պատահի ,
Յողջոյն տուեցն երկըրպագի ։
Մարիամու Մագդաղենի
Ցուցաւ Նըման պարտիզպանի ։
Կարծէր ըզնա անյուսալի ,
Բարձօղ մարմնոյն տէրականի ։
Ծանօթըս տայր ընդել ձայնով
Ի յանուանէ զնա կոչելով ․
Զոր Մարիամ բաղձմամբ սիրով
Հըպել ’ի նա փափաքելով ,
Տէրն արգելու զնա ասելով ,
Մի՛ մերձենար զգալի գըթով ․
Զի չեմ ելեալ առ Հայր ամպով ,
Ադամային զգեցեալ մարմնով ։
Եւ յերկնային ծառըս կենաց
Նախ ադամեանքն են մերձակաց ,
Եւ ոչ Եւայ ձըգմամբ ձեռաց ,
Որ հան զԱդամ յանճառ փառաց ։

Այլ գլխաւորութեան պտուղս առաջին
Պարտ է նուիրել Հօրըն վերին ,
Որ իմ բնութեամբ է Հայր-յերկին ,
Եւ ձեր շնորհօք աւազանին :
Աստուած կոչի իմ ըստ մարմնոյ ,
Զի է սա մասն արարածոյ ·
Եւ ձեր Աստուած բնութեամբ բարւոյ
Տէր և ստեղծիչ գոլ յանգոյոյ :
Ընդ հակառակս ընթանալով
Պետրոս և Յովհաննէս սիրով ,
Զպատանըն լոկ տեսանելով
Եւ զվարշամակն ուրոյն գնելով ,
Ի հրեշտակաց ծալեալ գոլով
Ա՛ռ 'ի պատիւ մեծ խորհրդով ,
Զինքըն գըլուխ մեր պատմելով
Եւ զմեզ անդամըք յօդելով :
Բայց զընտուորացն անդէն դարձեալ ,
Հրէից պատմեն զհրաշքըն տեսեալ ·
Զորս արծաթով կուրացուցեալ ,
Ցիւրոցն ասեն զնա գողացեալ :
Ի նմին աւուր յայլում դիմաց
Ցայտնի երկուցըն Կղէովպանց ·
Ըզվկնճմանէ նոցա եհարց ,
Իբր ըզտըրգէտըս կըշտամբեաց :
Ի Մովսիսէ կարգաւ պատմեաց
Զոր վասն ինքեան նա գուշակեաց ·

Ի բեկանել հացին յայտնեաց,
Եւ նոյնժամայն զինքըն ծածկեաց։
Եւ մինչ դարձան և պատմէին
Առաքելոց մեռասանին,
Միաչաբաթն երեկոյին
Եմուտ փակեալ դրամբք առ նոսին.
Շնորհեաց նոցա փըչմամբ զՀոգին,
Զայն որ կորոյս մարդն առաջին.
Իշխան արար յերկրէ յերկին
Թողուլ ըզմեղս մարդկային։
Յորում Թովմաս անդ ոչ գոլով,
Յանել նոցա չհաւատալով,
Յետ ութ աւուր դարձեալ գալով,
Յոր հաւատոց չօշափելով,
Զխոցուած տիգին ձեռամբ տեսեալ
Ի նոյն մարմինն որ յարուցեալ,
Տէր և Աստուած խոստովանեալ
Զայն որ 'ի խաչըն բեւեռեալ։
Ոչ յարութեամբն այլափոխէր,
Կամ 'ի նուաստից փառաւորէր.
Որպէս և չար ոմըն կարծէր,
Անապական նա ոչ ասէր։
Վերկայէ բանն ընդդէմ չարաց,
Զոր յարուցեալ վասն իւր ասաց,
Թէ նոյն մարմին եմ յոսկերաց,
Եւ 'ի յառնելս ոչ փոփոխած։

Բայց աշակերտքն նորա գնացին
Ի ժամադրեալ նոցա տեղին,
Այլակերպեալ զՏէրըն տեսին
Որպէս երբեմն 'ի սուրբ լերինն :
Ութն 'ի նոսա յերկուանային,
Բայց 'ի յերկոցն՝ որ նախ տեսին :
Տէրըն խօսէր մետասանին,
Եւ առաքէր յերկիր զնոսին .
Ըզհեթանոսս աշակերտել,
Երրորդութեամբըն մըկրտել.
Ըզպատուիրանն ուսուցանել,
Ինքըն յաւէտ ընդ մեզ լինել :
Դարձեալ յայտնի այլանըման
Առ ծովակին Տիբերական,
Ցուցեալ գործովքըն հրաշական
Զինքն 'ի բնութիւն արարչական :
Ձըկանց ծովուն հրամայելով,
Յուռկանս նոցա ըմբռնելով,
Եւ նորաստեղծ հաց առնելով,
Զուկն 'ի կրակին խորովելով.
Եւ ընդ նոսին ճաշակելով,
Զիւր զյարութիւնըն ստուգելով :
ԶՊետրոս երից հարցանելով,
Զուրացութիւնըն քաւելով.
Եւ զկընի իւր հրաւիրելով,
Զարչարանօք խաչակցելով :

Եւ զՅովհաննէս յաւէտ սիրով
Ասաց պահել բանիւն իւրով։
Եւ 'ի յաւուրըս քառասուն
Զինքըն յայտնէր ամենեցուն.
Խօսէր ըզբանն ոգւոցն արթուն,
Արքայութեանն առնէր գիտուն։
Եւ 'ի լընուլ քառասնեկին,
Ըզկերակուր խընդրէր վերջին,
Զմասըն ձըկան խորովածին
Եւ ըզխորիսխ քաղցըր մեղուին։
Հանէ զնոսա Բեթանիա,
Իբր ըզՄովսէս լեառըն Սինեայ.
Եդ 'ի վերայ գըլխոց նոցա
Զձեռն իւր յօրհնել բանիւ զնոսա.
Եւ զաւետիսըն հայրական,
Որ է Հոգւին սուրբ մաքրական,
Ասէր ինքեամբ առաքական,
Որպէս մի տէր և համակամ։
Եւ 'ի յերկինըս վերացեալ,
Վերայ թեւոց հողմոց ելեալ.
Նովին մարմնովըն համբարձեալ,
Որով մեռաւ և յարուցեալ։
Նըստոյց յաջմէ Հօրըն փառաց
Զբնութիւնս անկեալ կոխան դիւաց.
Երկըրպագեալ 'ի հրեշտակաց
Եւ յամենայն երկնաւորաց.

Մինչեւ ներքոյ գարշապարաց
Նորա դիցեն հոյլք Թշնամեաց
Աներեւոյթ հակառակաց
Իերեւելի մարդկան չարաց ։
Յորժամ փառօք Հօր եկեսցէ
Նովին մարմնովն որ 'ի Կուսէ ,
Զբնութիւն մարդկան յարուցանէ ,
Եւ ըստ գործոց հատուցանէ ։
Զարացն ըզչար վըճիռ հատցէ ,
Յաւիտենից հրովըն տանջէ ․
Իսկ որ բարիքն են՝ պըսակէ ,
Անճառ փառօք փառաւորէ ։
Զեկեղեցի հարսնացուցէ ,
Եւ ընդ ինքեան միաւորէ ․
Որպէս անդամ 'ի գլուխ յօդէ ,
Եւ ժառանգորդ Հօր իւր առնէ ։
Ի հրեշտակաց դասըս կարգէ ,
Զի զանկելոց Թիւըն լըցցէ ․
Զանճառ իմաստըն ծանուցէ ,
Բանըն բանիւ վարդապետէ ․
Մինչեւ նըման ինքեան գործէ ,
Որպէս խոստումնըն անսուտ է ․
Զի տեսանի 'ի նոցանէ
Իբրեւ ըզՀայր և 'ի Հօրէ ։
Բայց վայելումըն Թէ զինչ է,
Եւ ոչ մտօք ոք հասանէ ․

Անմահութիւն բանըս գիտէ ,
Իանախտութիւն միայն թէ է .
Ըզհարսանեաց անուն բերէ ,
Զոր Միածնին Հայր իւր առնէ .
Եւ ինք փեսայ անվախճան է ,
Եւ յաւիտեան թագաւորէ ։

Արդ որ այսպէս հաւատասցէ ,
Որպէս և գրեալքս 'ի սկզբանէ ,
Զոր ծանուցաք փոքր 'ի շատէ
Յուղղափառաց հարցն աւանդէ ,
Զարքայութիւնըն ժառանգէ ,
Յանբաւ բարիսըն վայելէ ։
Եթէ գործովք հաւասարէ ,
Եւ ոչ նովքն մեռուցանէ ։

Բայց որ արդէն չհաւատասցէ ,
Այլ ընդդիմակ և ներհակ է ,
Յորժամ յերկնից եկեալ տեսցէ ,
Յակամայ կամս երկըրպագէ .
Թէպէտ և ոչ օգուտ բերէ ,
Այլ անձամբ զանձըն կոծեսցէ ։
Զորս գեհեննիւ դատապարտէ
Զչհաւատացեալըն 'ի նոցանէ ։
Իսկ մեք հանցուք փառս ընդ Նըմայ
Հօր և Հոգւոյն միշտ յարակայ ,
Յանցեալըն յայժմուս և յապագայ ,
Երրորդութեանըն մըշտակայ ։

# ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ

## ԵՐԳՈՂԻՆ

ՎԱՍՆ Աստուծոյ խօսել զայս բան
Ինձ ոչ էր անկ և ոչ նըման .
Զի սիրտ յիմար անձն անարժան
Ոչ է տեղի իմաստութեան ։
Պարտ է սըրբոյն սուրբ բնակարան ,
Եւ մաքրելոյն մաքուր կայեան .
Ապա լինել աստուածաբան ,
Եւ անձառիցըն վիպասան ։
Բայց փափաքումն ոգւոյս բնական
Ստիպեաց քան զոյժըս գերական ,
Եւ գըթութիւնքըն հայրական
Համարձակել ետ ինձ այսքան ,
Ի գրել բանիւ աստուածական
Ոտիւք չափել ներտաղական
Վասն էութեանն անհասական
Եւ Բանին Հօր մարդեղութեան .
Ոչ նորաձեւ և անմըշան
Յինէն չինած առանց հիման ,

Այլ՚ի վերայ անշարժական
Վիմին եդեալ սա կեփայեան :
Եւ զի ոտիւք է պարզական ,
Եւ ոչ բանիւ անչափական ,
Մի՛ յայս լեզուաւ պարսաւական
Բարբառեսցի անփափակ բերան :
Քանզի բազումք նախ վարեցան
Այսպէս յիմաստս աստուածական ,
Զի արարչին բանի գիտութեան
Տացեն այսու բան գովութեան :
Որպէս դաւթեան սաղմոսարան ,
Եւ Սողոմոնին առակարան ·
Մեծըն Գրիգոր աստուածաբան ,
Եւ սուրբ Եփրեմ ասորական :
Նոցին և մերս հետեւանան
Բան դըւզնաքեայ համանըման ·
Ոչ մի տաղիւ վերջ յանգական ,
Զի մի՛ ծուլից լուր ծանրանան ,
Այլ խըրատաբար փոփոխական ,
Զի ընթերցողք ոչ ձանձրանան :
Թէ արժանի առնէք յիշման
Զիս ըզՆերսէս անձն անարժան :
Ի թիւ եւթանց տանց հարիւրոց
Կատարեցաւ բանս հաւատոց ·
Ի վեց հարեւր թուական Հայոց ,
Յինըն հարեւր չորք Հոռոմոց :

Ի տկարանալ հռովմայեցւոց
Եւ զօրանալ հագարացւոց,
Ընդ բորբոքել մեղաց մերոց
Յոյժ բարձրագոյն քաղդէացւոց,
Մասուտ Սուլտան յիկոնացւոց
Եկեալ յաշխարհ գերմանացւոց,
Առեալ զաւանս քաղաքայնոց
Մինչ 'ի կողմանս եփրատացւոց։
Իսկ հայրապետ հանուրց Հայոց,
Անուն զուարթուն Գրիգորիս,
Ժառանգ նախնոյն սուրբ աթոռոց,
Անուանակիր սեռ ազգայնոց,
Ի Ծով անուն դղեկէն ելեալ,
Զոր սեփհական ինքեան շինեալ,
Ի յանառիկս ամրոց հասեալ,
Հռոմայական Կլայ յորջորջեալ.
Յորմէ նախնի տերանցն ելեալ,
Յահէ նեղչացըն փախուցեալ,
Ըզսա կամաւ սրմին տուեալ,
Լինել յաւէտ սեփհականեալ։
Արդ յայսպիսում ժամանակի
Դառն և դըժնեայ և անբարի,
Յորում բնակեմք յայսմ ամրոցի
Ի գետապատ քարանձաւի,
Ի յԵփրատայ պարագրելի,
Որ յԱզենայ քառորդ հոսի,

Ցելից կուսէ հեղին շարժի ,
Ի մեւս փոքուէ մրտիւք պատի ·
Ինքս ամբարձեալ խըր ըղկըղղի ,
Ցալեաց ծովուց ոչ երկընչի ·
Ի մարդկանէ ոչ զարհուրի ,
Զի է հնարից անյաղթելի :
Զոր անօրէնիչն ամենայնի
Տեղ պատրաստեաց ապաւէնի
Սուրբ աթոռոյս ըսքանչելի
Ի բարկութեան ժամանակի ·
Ցորում նեղիմք յանօրէնաց
Ի յարտաքին չար գազանաց ,
Եւ ոչ նըւազ՚ի դըրժանաց
Ի ստուտանուն քրիստոնէաց :
Ցորոց փըրկիչըն մեր կենաց
Մինչեւ ցայսօր ամբողջ պահեաց ,
Որք և յապայն ժամանակաց
Ցանձն եղիցուք նորին կամաց :
 Ի սմա գրեցի զբանս հաւատոյ ,
Ոտանաւոր տաղիւ չափոյ ,
Ես անարժան գոլով բարւոյ ,
Ներսէս եղբայր տեառնըս մերոյ :
Ոչ՚ի յինէն բան ըստ մարմնոյ ,
Զի իմաստ ոչ է յիս մարդոյ ·
Այլ՚ի տաուից սըրբոց նիւթոյ ,
Որք խօսեցան բըղխմամբ Հոգւոյ :

փոքըր բանիւ կարճ 'ի կարճոյ
Միայն ըղձիւսըն ցուցելոյ,
Ընթերցողաց վերծանելոյ
Արագ մըտացըն հասելոյ·
Հակառակաց պապանձելոյ,
Որք ընդդիմակք են հաւատոյ·
Եւ ճըշմարտից հաստատելոյ
Մանկանց սըրբոյ եկեղեցւոյ:
Ի յիշատակ բարեաց հոգւոյ
Բարեպարիշտ ծնողաց մերոյ,
Ցազգէն գոլով Պահլաւունոյ
Համատոհմից արշակունեւոյ,
Եւ հարազատ եղբարց մերոյ·
Նախ վեհագոյն տեառն իմոյ,
Որ է յաթոռ սուրբ Գրիգորոյ,
Գոլ համանուն համանմանոյ:
Եւ երկոցունց աշխարհայնոյ,
Գերփառունակ պատուեցելոյ·
Վախըլ անուն ըստ արքունոյ,
Եւ զօրավար կոչեցելոյ·
Եւ Մարեմայ քեռ ընտրելոյ,
Ի յայրութեան բարի մնելոյ·
Որ յետ մանկանց՝ որ ըստ մարմնոյ,
Ստանայր մանկունս ըստ Աստուծոյ:
Եւ համօրէն նոցին ծնընդոյ
Յոգնաշաւիղ բարեզարմոյ,

Որք կենդանիք յաստիս լուսոյ,
Եւ որք նընջեն առ Աստուծոյ :
Զոմանց հայցել միշտ պահելոյ
Խաղաղական կենօք բարոյ ·
Զոմանց խընդրել ժամանելոյ
Անճառ կենացն հանդերձելոյ :
Եւ խընդրողին զբանըս գըրոյ,
Երիցագոյն եղբօրորդւոյ,
Որ Ապիրատ յորջորջելոյ
Ըստ Նախնեաց հարցն անուանելոյ ·
Սա եղիցի պատճառ բարւոյ
Յիմաստութիւն կըրթել հոգւոյ,
Ի ստորնայնոցս ամբառնալոյ,
Եւ յերկնայինսըն հըպելոյ :
Եւ բոլորից հնազանդելոյ
Այսմ աւանդից աստուածայնոյ
Տացէ Յիսուս պարգեւ բարոյ
Այժմ և յաւուրն իւրում վերջնոյ ·
Ի փառըս Հօր, պատիւ Որդւոյ,
Ի գոհութիւն տուողին Հոգւոյ,
Որ միշտ երգի յաբարածոյ
Յիմանալեացն և 'ի զգալոյ :

# ՆԵՐԲՈՂԵԱՆ

## ԿԵՆՍԱՏՈՒ ՍՈՒՐԲ ԽԱՉԻՆ

ԱՌ Ի ՍՐԲՈՑ

ՀՕՐԷՆ ՄԵՐՄԷ

ԴԱՒԹԷ

ԱՆՅԱՂԹ ՓԻԼԻՍՈՓԱՅԷ

ԱՍԱՑԵԱԼ

ՈՏԱՆԱՒՈՐ ՉԱՓՈՎ

ԱՍՏԱՆՕՐ

ԵԴԱՒ

# ՏԵԱՌՆ ՆԵՐՍԻՍԻ

## ՆԵՐՔՈՂԵԱՆ

## ԿԵՆՍԱՏՐՈՒ ՍՈՒՐԲ

## ԽԱՉԻՆ

**ԲԱՐՁՐԱՑՈՒՑԷՔ ԶՏԷՐ**

*Աստուած մեր միաբան,*
*Մարգարէ՛ն յառաջ ձայնեաւ առ*
*մեզ հրաման.*
*Երկիր պագէք պատուանդանին արքունական,*
*Աստուած արարած սրբոյ խաչիս մեր*
*փրկութեան:*

Պատմեմ և ես ըզնոյն ապշումըն բարձրաձայն ,
Յայտնել ըզխորըս նախաճառըն քըննութեան ։
Զի օրինակըն թէ Սիոն ճըշմարտութեան
ՅԻսրայելէ զայս պահանջէր պատիւ արժան ,
Ի յապացոյցն որ էր միայն ըստուգութեան՝
Երկըրպագել Տեառն Աստուծոյ տալըով հրաման ,
Եւ՝ որ յայտնի եղէ տեսող Աստուածութեան՝
Պարտիմ առնել զայս հասարակ որոց աստ կան ։
Զի զոր տօնէք դուք, ժողովուրդ հանդիսական ,
Ոչ յարացոյց որպէս Սիոնն տեղ գիտութեան ,
Այլ այս նըշանըս քառաձեւ տերունական
Տաճար սեղան է և աթոռ աստուածական .
Նա՛ և լեառն իմանալի անհասական ,

Ուր յորդորեմք երկրպագել ձեզ
միաբան ։
Դուք, որդիք Նոր Սիովնի Նորոյ
ծննդեան,
Օրհներգութեամբ պատուել ըզսա
էք պարտական ։
Եռափափաք քրիստոսազարդ է
այս նշան,
Աստուածասէրք, յերկիր մածիք
իւր յանդիման ·
Զի սա 'ի կեանս է փոխադրող որ-
դւոց մարդկան,
Որ հրեշտակաց և երկնայնոց է սեփ-
հական,
Ի հեշտութեանց գոլով սոյն զէն
արիութեան,
Եւ յաշխարհէս ըղձից՝ հոգւոց վեր-
ածական ։
Արդ այսքանեաց մեծաց բարեաց
եղեալ պաշտպան,
Իւր գոհութիւն մատուցանել մեզ
է արժան ·
Եւ գովասան երգոյս եղեալ կըցոր-
դական,
Միշտ 'ի խոնարհ երկիր պագէք ա-
մենեքեան ։

Այլ և ըղձանր և ըղձըլսեմ՛ կերս մարմնական

Եղեալ 'ի բաց, Թողիցուք այսօր յերկնից կայան :

Քանզի ո՛չ նայիմք 'ի սոսկ փայլս եղական ,

Այլ որ 'ի սա է Բանն անեղ մեզ յանդիմանն :

Ոչ է սաղարթ միայն յերկրէ տունկ նիւթական ,

Ուր զօրութիւն է կառավարն էիցս համայն .

Առ որ հըպել խմբք կարօտ բուն մաքրութեան ,

Մարմին գոլով ախտից տեղի ներ-գործութեան :

Քանզի նորմա մաքուր երամ սրով-բէական

Թեւօք ծածկեալ թերեւս մատչէր 'ի պաշտաման ,

Հողոյս ապա ո՞րքան պիտոյ ըզգու-շութեան՝

Յողջոյն մատչել աննիւթ հըրոյ աս-տուածութեան :

Ո՛վ սըխրալի մեծ խորհրդոյս յայտնութեան ,

Ցորժամ քըննեմք ըզբազմանուն
խաչիս նըշան ·
Որոյ բնութիւն է փայտ էիցըս միա-
բան ,
Եւ սեռըն մի յորոց յերկրէ ծառք
զանազան ·
Իսկ ձեւըն խաչ, որ է յայտնի գոր-
ծի սպանման ,
Բայց իմանի խաչ Աստուծոյ կեն-
դանական ։
Ո՛վ յասացեալս ոչ հիասցի լը-
ւեալ զայս բան ,
Զգործի սպանմանն եղեալ կենաց
ներգործական ։
Տեսակ սորա է գուժարկու մեռե-
լութեան ,
Եւ զօրութիւնն արագ առ կեանս
վերածական ։
Բնութիւն ունի մահու ընկոյն
համանըման ,
Եւ զօրութեամբ եղեւ բաշխօղ ան-
մահութեան ·
Զի ճըշմարիտ տըւող կենաց Աս-
տուածըն Բան ,
Աստ հանգուցեալ՝ յեղաշըրջեաց
գոլ իւր նըման ։

Ցիտուս որ կեանս մահուամբ բաշխեաց անապական ,
Եւ խաւարաւ լոյս տարածեաց իմացական ,
Նովաւ և սա ցուցաւ մեզ խաչ աստուածական ,
Զոր և առել մի՛ ոչ կալցի պատկառական ։
Զի է պարծանք ընտրոյ և Թագարքունական ,
Որպէս գրէ Պաւղոս անօթն այն ընտրութեան .
Տիմոթէոս որդեակ , լիցիս 'ի խրախութեան ,
Անամօ՛թ քարոզ խաչին վըկայութեան .
Կըցորդ ունիս ըզզօրութիւնն անպարտական ,
Որով Աստուած արարածոցս եղեւ պաշտպան .
Զոր 'ի ճառելըն կորուսեալքն յիմարանան ,
Այլ փըրկելոցս է զօրութիւն աստուածական .
Նովաւ և եմ ես յերաշխեպս յուրախութեան ,

Որ ոչ ունիմ ամօթ ըզխաչըն փըր-
կական ։

Ապա մահու այս գուժարկու
սուրբըս նըշան ,

Ոչ պատկառանք՝ այլ պարծանաց է
պարծական .

Վասըն զի մահ եղեւ 'ի սոյն ոչ
տըրտմական ,

Այլ տըւաւ Աստուած մարմնով
մարդկան փոխան ։

Որոյ զուարթուն գերեզմանին այն
պահապան ,

Քաղցրիկ հընչէր տըրտմեցելոցն ա-
ւետեաց բան .

ԶՅիսուս խընդրէք ըզխաչելեալ
տէրն իմ 'ի ձայն .

Յարեաւ կանխաւ , մի' այլ ողբայք
զանմահըն Բան ։

Ուսի՛ր , Եկեղեցի , զխաչիս անու-
նըս թէ ո՛րքան ,

Ի սուրբըն հրեշտակաց տեսանըն
իւրեանց տըւեալ նըշան ։

Է սա նըշան աստուածային սիրոյն
մարդկան

Սեուն անապակ և անսայթաք հաս-
տատութեան .

Ձի մերկ յայտնեաց զայն միածին
Որդւոյն և Բան ,
Որ մերկացաւ աստ 'ի խաչիս մեղաց
փոխան .
Տրւեալ յայտնի հօրըն գըլթոյ մեզ
գըրաւական ,
Որք տարեցաք , լինել 'ի նա միշտ
ապաստան ։
Նոյն և որ զերտ եցոյց ըզգաէրն
անզրուգական ,
Բարեկամաց ես մեռանիմ խմոց փո-
խան ։
Արդ 'ի մահուն եղեալ 'ի յայս սե-
ղան զէնման
Պատարագին տիեզերացըս հաշտու-
թեան ,
Եւ տակաւին աստ տեսանի 'ի տա-
րածման ,
Անմեկնելի միշտ միացեալ մինչ յա-
ւիտեան ։
Բարձաւ միայն ըստ մարմնական
անօրէնութեան ,
Եւ զօրութեամբ նորաւ 'ի տեղըս
հաճութեան .
Ցընցուղ արեանն 'ի բեւեռացն է
յայտնաբան ,

Որ կաց մածեալ դեռ 'ի յանդխնան
անապական :
Արդ, ժողովուրդ, սարսափեսցես
լուեալ զայս բան ,
Ոչ մերձենալ աստ խըր 'ի լոկ փայտ
նիւթական ·
Այլ համբուրիւ հըպեալ 'ի խաչս
ոք սիրական ,
Ցինքն ընդգըրկէ ահեղ ըղձարուս աս-
տուածութեան :
Տէրն իմ Յիսուս աստ կայ բազ-
մեալ մեզ յանդիման ,
Ընդէ՞ր հեղգամք ողջագուրել զոտ-
սըն արժան :
Զի թէ հանգչէր նա 'ի խորանն օ-
րինական ,
Յիւր զենարանս ծրշաւ լցի միշտ
անվախճան :
Լեառն Աստուածոյ պարարտ է
խաչըս պատուական ,
Ուր հաճեցաւ լինել 'ի սպառ ան-
զրաւական :
Այլ և կա՛ռք սա անուանի իւր սեփ-
հական ,
Յորում հեծեալ դարձոյց զգերեալ
ազգըս մարդկան :

Չորեքգլխմի կառացըն տեղ է և
նըման ,
Քառատառաջեայ կառըք խաչիս և
բազմական .
Ուր բարձրացաւ Էմմանուէլն յար-
քայութեան ,
Յաղթահարեալ ըզթըշնամին մինչ
'ի վախճան ։
Ահա ցուցաւ գոլ ճըշմարիտ կառըք
տէրական ,
Զարքայն տեսցուք բազմեալ յա-
թոռս անհասական .
Որք ճաշակէք ըզնա այսօր և յա-
ւիտեան ,
Հաւատացէք զայս զէնարանս իւր
բնակարան ։
Նա և ըզտեղն ուր այն բեւեռքն
'ի խոց հարան ,
Տեսէք ահա ոչ կըցեցաւ , դեռ կայ
նըշան ։
Առ որ հարցեալ մարգարէին նախ
տեսութեան ,
Որ հիանայր ընդ սոսկալին տնօրէ-
նութեան .
Տէր իմ , ընդէ՞ր վէրք 'ի քո ձեռս
անպարտական ,

Որ պատառեաց զըղջատակնիքըն մարդկութեան ։
Պատասխանէ. Ցիմ սիրելեացն 'ի հրէաստան
Ես ընկալայ, և զայս պահեմ 'ի յապագայն ։
Այս հաստատէ մեզ ըզզենումն անմահըն Բան,
Որ յարակայ պատարագի գեղ քաւութեան ։
Զի անմա՜հըն մեռանի աստ մեր փոխան,
Եւ Նոյն մընայ յանմահութիւնն անճառական .
Սուրգապակէս միշտ ճենճերի զո՞հ փըրկութեան,
Եւ մընա՛յ դարձեալ 'ի կեանս իւր սեփհական ։
Գողով Աստուած 'ի ծոցըն Հօր անտեսական,
Եւ 'ի յերկրի մարդ համագոյ հողոյս բնութեան .
Նոյն և Աստուած այսպէս ընդ Հօրն իւր էական,
Ցոր ճըշմարիտ մեք հաւատամք անկարծական ։

Անպարագրելին Աստուած էիցս ան-
հասըն Բան
Պարագրեցաւ մարմնով յարգան-
դըն կուսական .
Եւ ծընաւ յօդմամբ մարմնոյ անյօ-
դական ,
Աստուածածին եղեալ ծընօղըն աս-
տուածական ։
Որ մատնեցաւ 'ի սպանող խաչի ան-
պարտական ,
Մըկըրտեալ Աստուած 'ի մահըն
մարմնական ։
Ուստի և խաչըս կընքեցաւ խաչ
տէրական ,
Զոր ողջունեալ՝ ելից շնորհօք Աս-
տուածութեան ։
Նոյն լինելըն Նա , յոր հաղորդիմք
ամենեքեան ,
Պատարագի 'ի մեզ պըտուղ Նորո-
գութեան ։
Արդ լըւարուք ամենեքեան ձայն
ցընծութեան ,
Հաւատացեալ ուղիղ բանիս դաւա-
նութեան .
Եւ ըղհոգւոյ աչըս մըծիտ և հրա-
շագան ,

Տուք լըծակից մարմնոյ աչացըս ան֊
սուլթեան :
Որպէս և տա հայր 'ի խաչըս սգալ֊
ական ,
Տեսցէ մըտօք ըզՄիածինն 'ի տա֊
րածման ,
Եւ տակաւին զկըրկին ցընցուղ
Ջրոյ և արեան
Ի կենարար կողէն կայլակ՝ մեղաց
Ջընջման ,
Առողջանող և բուսուցիչ սուրբըն
սերման ,
Որ բեղնաւոր ծընաւ հաստակըս զա֊
նազան :
Ունայնութեան իւրում փառացն
առեալ փոխան ,
Զերկըրպագուս ընդ տիեզերս որ
նոր ծընան ,
Ուր բարձրացաւ խաչըն պարծանք
և ապաստան ,
Եւ նա օրհնի 'ի յիւր նըշանըն մի֊
բերան :
Քանզի սուր խաչ , անդ և խաչեալն
է յանդիման .
Խաչեցելութիւն տառ հաստատուեալ
կըրկին անգամ :

Զի հաւատոց Պաւղոս ասաց զայս
ստուգաբան ,
Գաղատացւոցն յորժամ գրեաց
մեղադրական՝ ։
Ապա ուր խաչս իսկ է վըկայ հաս-
տատութեան ,
Խոստովանիմք լինել տեսող խաչե-
լութեան ։
Արդ որք տօնէք խաչիս հանդէս
քրիստոսական ,
Ի Գողգոթա տեսէք ըղձեղ ՚ի պաշ-
տաման .
Անդ՝ ուր չիրիմն էր նախահօրըն
հանդըստեան ,
Որ կանգնեցաւ՝ առեալ ըզխաչս իւր
զաւազան ։
Քանզի փայտիւ վիրաւորեալ հինն
այն Ադամ ,
Անկեալ դընէր ՚ի յայն խըշտին
տարտամութեան .
Առ որ հասեալ որ այլացաւ յերկ-
նիցն Ադամ ,
Գըթայր ՚ի նա իբր ՚ի պատկեր իւր
և նըման .
Եւ երեւեալ որդի նախնոյն հօր
սերական ,

Արդարութեամբ անմեղ մեռաւնոր-
մին նորման .

Զըրգեաց 'ի վեր զԹաղեալն 'ի տիղ-
մըն Գաղաւթան ,

Ցերկնից երկինս նըստոյց յաԹոռըն
հայրական .

Կախեալ 'ի փայտն , որ անիծից էր
առԹական ,

Ցեղաշըրջեալ՝ արար սըրբոցըն սըր-
բարան :

Այլ և ըղձեղն , ուր նախահայրն
էր 'ի Թաղման ,

Արար որդւոցըս ցընծուԹե խորախ-
ճանարան :

Նա և եղաւ 'ի գամբարան 'ի հան-
գըստեան ,

Եւ զայն շնորհեաց մեր յարու-
Թեանըն գըրաւական :

Արքայ զօրեղ տէր և յաղԹող
անպարտական ,

Որ պարտուԹեամբ կանգնեաց նըր-
շանըս յաղԹական .

Եւ զայս գործի այնքան շնորհացըն
բաշխական ,

Ստացաւ աԹոռ՝ բնակել յասպա և
անվախճան :

Արդ որ կամի զիսկըն խաչիս մեծ-
անձնութեան ,
Ի հանդերձեալն ակըն կայցի ստոյգ-
գիտութեան ։
Թէպէտ բազումք բարեպաշտել
սաստ կամեցան ,
Եւ ցուցանել ըղսա անհեղ յաչըս
մարդկան ,
Ոսկի՛ ձոյլըս կռեցին խաչանը-
ման ,
Յակա՛նցըն շափիւղից ցուցեալ ըղնա
զարմանազան ,
Ոչ թէ այսու փառացն հասին որ-
քանութեան ,
Այլ ըղտըղայ բարըս մարդկան ձըր-
գեալ միայն 'ի փափագման ։
Այլ սա էանց գեր երկնայնոցն
իմացութեանց ,
Յերկնից երկին անյարացուցն ե-
լեալ սահման ։
Նըստի 'ի փառսն ուր Սրովբէիցն է
պար շըրջան ,
Որ միշտ օրհնեն ըղտէրն իւրեանց
սաստ զանազան .
Որպէս լըւայք մարգարէիցն , որոց
տեսան

Ըղ Քերովբէսըն բազմաչեայ և ըղ-
Սրովբէսըն վեցթեւեան .
Ձեռահիւսակ երեքսրբեանըն յա-
րաձայն ,
Երգաբանեն տեառն որ 'ի խաչս 'ի
մի բերան :
Որում ցուցաւ նախ յարացոյց
ազդեցութեան ,
Ցօրհնական խորան սեղանըն քաւ-
ութեան ,
Ցորոյ անկիւնան եղեալ անբան ա-
րեան նըշան ,
Լինէր կընիք ժողովըրդեանըն հաշ-
տութեան .
Զի Քերովբէք անդ տարածեալ
էին շըրջան ,
Հովանացեալ ծածուկ տեղւոյն այն
սրբութեան :
Խաչիս պատկեր էր քառաթեւ
սուրբըն սեղան ,
Գառն Աստուծոյ եբարձ 'ի սա զմե-
ղըս մարդկան :
Ի փորուածոյ ձեռացն առուքն ի-
ջեալ արեան ,
Ցայթեալ ներկեաց զեղջերըք սորա
կարմրանըման .

Եւ Սերովբէքըն ճըշմարիտքըն հրա-
բերան ,
Եռուն յայնժամ նըման ըղփառս ե-
րեքսըրբեան .
Օրհնեալ է փառք տեառն 'ի տեղ-
ւոջս արքունական ,
Աղաղակեն շուրջ-Քերովբէքըն բազ-
մաչեան :
Եկեղեցի , եկ և ուսիր զայս ձայն
արժան ,
Եւ լեր կըցորդ մաքուր հոգւոցն
օրհներգութեան .
Փոխ հատուսցուք պէսպէս ըղըա-
նըս գովասան ,
Աստուածազօր սըրբոյ խաչիս փա-
ռաւորութեան :
Օրհնեալ ես փայտ քրիստոսական
Աստուածազարդ սուրբըդ նըշան ,
Որ դու միայն երանութեան
Ցեւցս հասեր գեր քան ըղըեան .
Եւ պահանջես պատիւ արժան
Ի մարդկայինս ազգէ համայն :
Երկըրպագեմք ամենեքեան
Քեզ, փրկութեան մեր զէնարան :
Օրհնեալ ես, փայտ սէ՜ պըսակեալ,
Յորում Քրիստոս է թաղ եղեալ .

Որ 'ի ստորին վայրըս բուսեալ,
Ծայր քո յերկինս եղեւ հասեալ:
Տերեւախիտ կանաչացեալ,
ՅԻսրայելի ազըն ծաղկեալ.
Պըտղովդ ամէն եզերս լըցեալ,
Որք յաշխարհի՝ քեւ յագեցեալ:
Օրհնեալ ես, փայտ սր̃ զարդարեալ,
Որ յԱստուծոյ ես պաճուճեալ.
Ագին տընկոյն գերհրաշացեալ,
Այնմ որ Քրովբէքն են շուրջ եղեալ:
Ի քեզ դիւրաւ մեր մերձեցեալ,
Ի մահուանէ գըտաք զերծեալ:
Զըրի շնորհաց այդըր ծաղկեալ,
Փայտ դու կենաց ես Ճըշմարտեալ:
Օրհնեալ ես, փայտ սուրբ բարերար,
Քան զգեղեցիկն այն մահարար.
Զի նա պըտղովըն ցանկարար
Պատրեաց ըզկինըն դիւրաբար.
Իսկ դու զորդի Կուսին բարձար՝
Որ տարածեալն էր կամակար,
Եւ ճաշակեալ զլեղին յօժար՝
Զկեանըս մարդկան տղբիւրարար:
Օրհնեալ ես, փայտ սուրբ տէրունի,
Ցուպ՝ յոր անկեալն Ադամ հասանի.
Զոր նախ խընդրէր յոյժ բաղձալի,
Այսօր 'ի ձեռս առեալ կանգնի.

Գոհաբանօղ ձայնիւ լինի
Գաւազանիդ մխիթարի ։
Կենաց ես տէր յոյժ բաղձալի ,
Փայտդ՝ որ ըղձեւք միշտ պալըսալի ։
Օրհնեալ ես , փայտ , կենաց տապան
Ցիմանալի ծովու ծըփման ,
Օժանդակող ոգւոց մարդկան ,
Եւ մերձ յերկին վերածական ·
Դուռն 'ի կողման քո՛ւմ վերնատան ,
Սուրբ տէրունի կողին բերան ·
Ուստի հոգին ներմարդական
Արձակեցաւ Հօր բարձրաձայն ։
Օրհնեալ ես , փայտ գերազարդեալ ,
Տունկ Սաբեկայ աստ ճըշմարտեալ ·
Յոր Աստուծոյ գառնըն կախեալ ,
Զմեղս աշխարհի անմեղ բարձեալ ։
Ոչ զԻսահակ միայն փըրկեալ ,
Որպէս ըստուերն եղեւ գըծեալ ,
Այլ զհամօրէն ազգըս գերեալ ,
Մաքուր և սուրբ արեամբ գընեալ ։
Օրհնեալ ես, փայտ սանդուխք կենաց
Յերկինս 'ի վեր ճանապարհաց ·
Նըստեալ 'ի քեզ տէր հրեշտակաց ,
Պաշտօն էառ 'ի հրեղինաց ։
Զոր 'ի բացուստ տեսեալ , ասաց
Դուռըն Յակոբ երկնից 'ի բաց ·

Հրաշանալով դէմ քո վայրաց ,
Տուն Աստուծոյ զԲեթէլ կոչեաց ։

Օրհնեալ ես, փայտ սուրբ և մաքրած,
Ի յԵգիպտոս նախ նըկարած ․
Արեամբ սեմոցն անդըր կընքած
Ի սատակչէն եղեն զերծած ․
Որպէս 'ի քեզ գառնըն մածած
Փըրկեաց զԱդամըն մահացած ․
Եւ ըզմարդկան ոգիս էած ,
Յերկնից երկրին լուսով կազմած ։

Օրհնեալ ես, փայտ սուրբ գեռակայ,
Որոյ խորհուրդն յառաջ խաղայ ։
Ծովուն հրաման Մովսէս քեւ տայ ․
Ըզվէմն հարեալ, աղբիւր խաղայ ։
Բայց տէրըն քեւ խրախոյս մեզ տայ ,
Զմիտըս պընդեալ առ ինք բառնայ ․
Բաղուկն 'ի քեզ ձըգեալ նորա ,
Պարտիչ եղեւ Ամաղեկայ ։

Օրհնեալ ես, փայտ սուրբ, ամպեղէն
Գոլով և սիւն լուսոյ հրեղէն ․
Կըրող ըզտարր աստուածեղէն ,
Զայն որ մեռաւ մեզ փոխարէն ։
Յառաջընթաց մարդկան յԷդէն
Յերկիրն՝ ուր կեանքն է հոգեղէն ․
Յուսըս բարձեալ նըշան և զէն ,
Որ պատառես պահնկըն հրեղէն ։

Օրհնեալ ես, փայտ սուրբ պարարտիչ,
Դու դառնութեան մեր անուշիչ․
Ի հոսանուտ կեանըս մըտիչ,
Քաղցր և ախորժ ըղձնոյն գործիչ։
Ի Մեռային նախ ջուրն ազդիչ,
Այս խորհրդոյ կանխաւ գըտիչ․
Փայտ սուրբ, Ջըրոյս մեր անուշիչ,
Եւ իմաստից մարդկան ուղղիչ։

Օրհնեալ ես, փայտ սուրբ Միածնին,
Նոյն տապանակ Հօրըն Բանին։
Սափոր յերկնից մանանային,
Եւ գաւազան շուշան ծաղկին․
Զի զերկուսին զմիտս և զմարմին
Պարախառնեալ ընդ Հօր Բանին
Կրեցեր 'ի քեզ 'ի հանդիսին,
Ներքոյ երկնիցըն խորանին։

Օրհնեալ ես, փայտ, վէմ իմացեալ,
Նոր քառանգիւն տախտակ գըծեալ,
Ցորում Աստուած ստոյգ ծանուցեալ
Մարմին և գիծ Բանըն ձեւեալ։
Ոչ 'ի Սինա օրէնս տըւեալ,
Այլ 'ի Սիոնի 'ի քեզ բաշխեալ․
Որոյ շնորհաց ըղձիւրն սըփռեալ,
Աշխարհ ամէն յինք ժողովեալ։

Օրհնեալ ես, փայտդ տիրական,
Իմանալի սուրբ գաւազան․

Որ, մինչ ցամաք անապատական,
Ետուր զկաղինն արքայական,
Զայն ծոցածին Որդին և զԲան,
Սաղարթ փըթթեալ կանաչութեան.
Նա և 'ի քէն ջրոյն և արեան
Ծով ծաւալեալ ծիծաղական:

Օրհնեալ ես, փայտ սուրբ, գայխոռն՝
Զոր Նոր Յիսուս յուսոյն բարձաւ.
Ընդդէմ մահու խորախուեցաւ,
Եւ պարտելոյն վերայ ելաւ:
Զթագաւորեալ մեղսոյն կալաւ,
Արեգական ընդդէմ հարաւ.
Ըզքէն կախել զնոյն զօրացաւ,
Եւ ստոյգ փրկիչ մարդկան ցուցաւ:

Օրհնեա՛լ ես, փայտ սուրբ Քրիստոսի,
Այնմ՝ որ Կուսին ծընաւ որդի.
Նա առ ըզքեզ ընդ Յայելի,
Եւ հար 'ի խորոխոյն ծամելի:
Զճաշակ մահու իւր ըղձալի,
Արար Նըմին զառն և լեղի.
Եւ ըզգեստնեալ զչարըն յերկրի,
Ի սպառ մեռոյց անկանգնելի:

Օրհնեալ ես, փայտ ամէնօրհնեալ,
Ի շըրջանակ ծովուս ձըգեալ.
Կարթ վերածող մարդկան եղեալ,
Որ ծանրութեամբն էր կորացեալ.

Բայց վէշտայլն, որ անդ բունեալ,
Կարթ ըմպանող 'ի քիմս արկար.
Որ երբըր ձագ մի քեւ կապեալ,
Նոր Իսրայէլ եղեւ զերծեալ:
Օրհնեալ ես, փայտ, սուրբ աշտանակ
Ոսկեձոյլ ականակապ.
Գընդըլն լուսոյ ներպարունակ,
Ուստի ծագեալ լոյսն անքանակ.
Նըշոյլ իւեւթն Հոգւոյն էակ,
Նովաւ յաշխարհս է հեղինակ.
Կընիք և շնորհ սուրբ անապակ,
Ցորմէ ձըգեմք լոյս համարձակ:
Օրհնեալ ես, փայտ սուրբ փըրկչական
Հրեղէն հացին գոլով սեղան.
Զոր Սերովբէք յորժամ բարձան,
Սուրբ ունելեաց կարօտացան:
Բայց դու, տեղի և բնակարան
Անանջըրպետ Նըմին արժան,
Կրեցեր ըզհուրն Աստուած և Բան,
Եւ ոչ կիզար Նիւթ տարրական:
Օրհնեալ ես, փայտ փառաւորեալ,
Նոր մորենի աստէն ծաղկեալ.
Կուսին սըրբոյ հանգունակեալ,
Աստուածածնին տիպ բաղդատեալ:
Բայց նա, որ հիւթ կանաչացեալ՝
Մարմին հոգւով կենդանացեալ,

Ի հրոյն Թերեւըս զարհուրեալ՝
Յորժամ 'ի ծոցն արտափայլեալ։
Քանզի մարմին ներքնաւորեալ,
Հողոյ զանգուած սուրբ և մաքրեալ,
Ուստի խորշէր յինքն հիացեալ,
Ի յաւետիսըն պակուցեալ.
Զիա՞րդ լիցի, պատասխանեալ,
Ինձ 'ի յայն հուրըն մերձենալ,
Որոյ պատգամ ես դու իջեալ,
Ահեղակերպ դիմքըդ ծագեալ։
Իսկ դու, ցամաք փայտ մի գըտեալ,
Յոժ դիւրակէզ դիմօք ցուցեալ,
Զայն ատրաշէկ բոցըն տարեալ՝
Փայլակնացայտ ընդ քեզ հարեալ.
Ուստի եռանիգն արեանն իջեալ
Առ քեզ հրեղէն գետ խաղացեալ,
Սակայն ցամաք փայտդ ոչ կիզար,
Այլ համարձակ նոճաւ ձուլար,
Առաւե՛լ դու հրաշացեալ
Եւ խմաստից վերոյ դասեալ։
Սուրբ և ահեղ խաչըդ պատուեալ,
Յերկնից երկլինս պայծառացեալ,
Որում և Կոյսն աստուածարեալ
Յոժ կամաւոր երկըրպագեալ,
Արեամբ որդւոյն զփայտըդ ներկեալ
Խանդաղանօք ողջագուրեալ։

Ի քէն անհեղ հուրըդ նայէր,
Եւ զաստեղաց պարըն կընքէր.
Զոտարերք հեցըս շարժըլէր,
Եւ խռովութեան գոյժ արկանէր։
Երկեր խուռովքըս տատանէր,
Եւ զլուծանելըն հիմանց խընդրէր,
Թէ ոչ այդ հուրըդ պահպանէր,
Եւ հրամանաւ անդէն պընդէր։
Նա և երկին յոյժ սարսափէր,
Զիւր լուսաւորըն պարփակէր,
Առեալ՝ի սուգ նօքօք նըստէր,
Զտէրըն իւր՝ի խաչ նայել չկարէր։
Եւ ստորակայ լուսնիս որ էր,
Զտիպ պատկերին յարիւն փոխէր.
Ինքըն յինքեան յոյժ պատկառէր,
Ցոչէութիւն դառնալ հայցէր։
Իսկ զանորակն որ նըկատէր,
Զհուր և ըզլոյս իւր ոչ բերէր։
Այլ քող ըզգստուերին նըմին ձըգէր,
Խաւար լուսոյ փոխան շնորհէր։
Զի Ճըշմարիտ արքայն յայտնէր,
Տարրըն տեղի տայր և լըռէր.
Որ իբր Աստուած երկըրպագէր,
Ի յարարչէն ահէ թաքչէր։
Ո՛վ հրաշալի փայտ դու չընչին,
Ոստ մի ցամաք Լիբանանին,

Զխաչդ տարար զանտանելին
Հուր և ըզլոյս 'ի միասին ,
Եւ նոյն բնութիւն քո ոչ փոխեն.
Որպէս տարերքս՝ որ երերին •
Զի ես դարձեալ փայտ դու կըրկին ,
Թէ և օտար արեամբ Էին :
Ո՛վ հրաշալի գործս՝ որ ցուցաւ ,
Ցեղաշըրջումն էից եղաւ ,
Անհիւթն 'ի գոյն մարմնոյ դարձաւ ,
Լուսինն յարեան երանգ ներկաւ :
Իսկ խաչըս նիւթ որ կառուցաւ ,
Ընդ հուր և լոյսըն խառնեցաւ •
Զայն փոփոխիչն յինքեան տարաւ ,
Եւ նոյն միացեալ ոչ ծախեցաւ :
Ո՛վ այս հրաշիցս անճառութեան ,
Որ յայտնեցաւ դէմ յանդիման :
Հուր երկնայինքն՝ որ նայեցան ,
Ցառ քեզ բոցոյդ արագ շիջան •
Իսկ դու ցամաք փայտ մարմնական ,
Տարար ըզնոյն անկիզական •
Եւ սըրբեցար , գեր քան ըզբան ,
Էին աթոռ և բնակարան :
Ո՛վ հրաշալի ճառիս ընթաց ,
Զոր կարգ բանիս բացայայտեաց :
Ի հրոյ Էիգ երկիր դողաց ,
Եւ զապառաժըս պատառեաց •

Բայց զայդ ուղէշ փոքր յանտառաց.
Եւ զծիղ խոտոյդ 'ի յեղեգանց
Անպտուխ շընորհ նորին պահեաց,
Ցոյժ բարձրագոյն ըսքանչելեաց :

Օրհնեալ ես, փայտ շնորհօք լցեալ,
Սուրբ ողկուզին հընձան եղեալ.
Ցորում պտուղ Կուսին ճըմլեալ,
Մատուռուակեալ քեւ եղեաք բերկրեալ:
Նա զԹըշնամին 'ի քեզ կոխեալ,
Խայտառակեաց նըշաւակեալ.
Ըզմահաձըրն դառըն մըթերեալ
Ցայտ համարձակ յերկիր հեղեալ :

Օրհնեալ ես, փայտ լուսով մածած,
Իմանալի կամուրջ ձըգած.
Մեղաց ծովուն վերոյ կապած,
Ուղիղ հետոց շաւիղ ոլրած :
Դու, զորս 'ի քեզ տապաստանած,
Փըրկես յալեացըն մըրըրկած.
Ի մահուանէ ածես զերծած,
Հանգուցանես առ տէր Աստուած :

Օրհնեալ ես, փայտ սուրբ պանծալի,
Իմանալի տառ քարտիսի.
Ուր մերն անջինջ կըտակ գըրի,
Տեառն Աստուծոյ մարդեկ որդի.
Ոչ մելանաւ՝ որ եղծանի,
Կամ հին տախտակ քառանգիւնի,

Այլ սուրբ արեամբըն Յիսուսի ,
Որ անդրանիկն է ամենի ։
Օրհնեալ ես, փայտ սուրբ, գաւազան
Դու քաջ հովուին ցուպ տածութեան.
Որով գառինքն որոշեցան ,
Յեկեղեցիս ամուր փական .
Եւ զքո նըշանըդ փըրկական
Կնիք 'ի ճակատս առեալ, ցընծան .
Յապագային օրըն պանծան ,
Ի սատակչէն ոյք քեւ զերծան ։
Օրհնեալ ես, փայտ սուրբ փըրկական,
Միշտ բարեխօս բարառնական ։
Դու հրեշտակացըն ցուցական
Տեառնըն խուրեանց փառք սըրբութե՛ ։
Եկեղեցւոյ փառք պերճութեան ,
Առաքելոց պարծանք նըշան ,
Մարգարէից հանդիսարան ,
Մարտիրոսաց պըսակ օծման ,
Քահանայից շնորհ բաշխական ,
Վարդապետաց քանոն ուսման ,
Թագաւորաց զէն յաղթութեան ,
Եւ իշխանաց յոյժ քաջութեան ,
Զօրաց նոցին միշտ պահապան ,
Ախոյանաց քաջ օգնական ,
Նահատակաց վէգ և վահան ,
Վըտանգելոց օժընդական ,

Գարտեցելոց մեծ ապաստան .
Նոյն նեղելոցըն բաւական ,
Հալածելոց տէր և պաշտպան ,
Փախուցելոց պատըսպարան ,
Հարթուցելոց խաղաղական ,
Վըշտաց հընար ըսփոփութեան ,
Ցընծացելոց դու շնորհաբան
Եւ մեծատանց ըզգուշական ,
Գանձ աղքատաց անդըրժական ,
Անըզգամաց ես զգօնարան .
Ըստահակաց խրատ գիտութեան ,
Վայրապարաց լուծ նըհանջման ,
Թագ կուսանաց վայելչութեան ,
Կնիք ամուսնաց պարկեշտութեան ,
Տղայոց յաւէտ ես պահապան .
Դաստիարակ իմաստութեան ,
Ծերոց 'ի մի ժողովարան ,
Ի ճանապարհս մեզ օգնական ,
Աշխատելոց հանգըստարան
Եւ նաւելոց տեղ դադարման ,
Մոլորելոց դարձ ուղղութեան ,
Տառապելոց յարկ ապաստան ,
Այրեաց պաշտպան ակնածութեան ,
Որբոց խընամ 'ի նեղութեան ,
Մենացելոց պար շըրջական ,
Ճըգնաւորաց ժոյժ զօրութեան ,

Աշխարողացըն ցանկական ,
Ախտացելոց դեղ ողջութեան ։
Դիւաց ընդդէմ ահ պարտութեան ,
Իսկ մեզ ես զէն պատրաստական ։
Մեղուցելոց սուրբ քաւարան ,
Եւ անմեղաց յար պահապան ․
Նիշ կենդանեացըս փրկութեան ,
Յոյս մեռելոցըն յարութեան ։
Արդ յամենայն իր զօրացեալ ,
Եւ յամենից բերան գովեալ ,
Օրհնեալ ես , փայտ երկրպագեալ ,
Սիւն յոր 'դհանուրըս հաստատեալ ։
Դու յապառնին փրկիչ ծագեալ ,
Յորժամ 'ի հուր լինիմք փոխեալ ։
Յահեղ այն օրն համառօտեալ ,
Որ օրն է մեծ և բարձրացեալ ,
Յառաջ նըշան տեառն երևիս ,
Յերկնից յերկիր փայլեալ թափիս ․
Մեծ կարապետ որոց սիրիս ,
Եւ հրաւիրակ տալ զաւետիս ․
Ոչ , որպէս այժմ , անդ տեսանիս ․
Այլ իմացման զոյգ զարդարիս ։
Լուսով փայլակըն բոլորզիս ,
Ի չորս անկիւնս արտափայլիս ։
Զանտանելի փառըս 'նտարցիս ,
Նախ հաւատոց պանծանք յայտնիս ․

Անհաւատից ընդդէմ զինուս,
Յանդիմանեալ զչարըն կարծիս ։
Յարեւելից ճառագայթիւս,
Լոյս 'ի յաշխարհս ամէն սփռիս.
Լուսաւորաց կընիք լինիս,
Զնոսա ծածկեալ՝ գերափայլիս ։
Յայնժամ պըսակ փառաց բաշխես,
Զորըս յարեան սուրբք՝ պաճուճես.
Երկնաթըռիչ թեւըս շնորհես,
Սուրբ փեսային ընդդէմ հանես ։
Իսկ զանհաւատս դատապարտես,
Ծուլիցն ըղհուրըն ցուցանես.
Եւ դու 'ի մէջ կաս որոշես,
Զաջն և զահեակ բացայայտես ։
Յորժամ մաքուր կարգըն դասի,
Ակումբն 'ի գլուխն յարախառնի,
Եւ քում կարօտ ձեռին լինի,
Որ յայս այսօր ոչ յոյս ունի,
Որդին ապա հօր հնազանդի,
Զի լի զհաստակ մարմնոյն ունի.
Անճառ խորոց ծով ծաւալք,
Աստուած լինի յամենայնի ։
Յորժամ մարդկան գործ վըճարի
Եւ փոխարէնք նոցին բաշխի,
Ապա բերան ամէն խօսի,
Միայն ըղմիտ տիպ պաշտելի ։

Որ ես անօթ փառօք 'ի լի ,
Ցերկնից ցուցեալ լոյս աշխարհի ·
Պարծանք ամէն քրիստոնէի ,
Փառըք փրկչին մեր Քրիստոսի :
   Աստանօր բանըս հանգիցէ ,
Իրաւապէս ըզկայ առցէ ·
Զի անդ ժըպիրհն ոք ձեռնարկէ ,
Որ 'ի մարմինն գեռ կապեալ է :
Ընկեզեցի այսօր պարէ ,
Զպայծառ նըշանս ձայնիւ պատուէ ,
ԶՅիսուս 'ի սմա փառաւորէ
Այժմ և յապայն որ գալոց է :

ՏԵԱՌՆ

# ՆԵՐՍԻՍԻ

ՉԱՓԱԲԵՐԱԿԱՆ ԲԱՆԻՒ

## ՄԱՂԹԱՆՔ

ԱՌ ՍՈՒՐԲ ՀՐԵՇՏԱԿՍՆ

ԵՒ

ՀՐԵՇՏԱԿԱՊԵՏՍՆ

ՄԻՔԱՅԷԼ ԵՒ ԳԱԲՐԻԷԼ

ԵՒ ԱՌ ԱՄԵՆԱՅՆ

ՀՐԱԲՈՒՆ ԵՒ ԵՐԿՆԱՅԻՆ

ՍՈՒՐԲ

ԶՕՐՈՒԹԻՒՆՍՆ

12

# ՏԵԱՌՆ ՆԵՐՍԵՍԻ

## ՄԱՂԹԱՆՔ

## ԱՌ ՍՈՒՐԲ ՀՐԵՇՏԱԿՍՆ



*Ր.ՑԻ պաղատանօք առ Հոգեղէնսդ
Մեք տկարքս և հողեղէնքս ,
Որք մերձաւորք էք Աստուծոյ
Մաքուր բնութեամբ և կայանիւ .
Սուրբ պաշտօնեայք և պատուաւորք ,
Հզօր բանին իւր կատարողք ,
Երիցս երիս՝ ինննեակ դասուք ,
Երրեակ և մի Աստուածութեանն ։

* Այս փող միաձեւ է ընդ Ներբողենին. Հրեշտակաց, զոր սոյն Երանելւոյս շարա-գրեալ է ։

Որդւոց մարդկան նախախնամողք ,
Եւ յերկնայնոցն վերբերողք ․
Մա՛նաւանդ մեզ ծանուցեալք
Եւ երկրայնոցըս մերձաւորք ,
Սուրբ Գաբրիէլ և Միքայէլ
Հրեշտակապետք Բարձրելոյն ,
Որ Աստուծոյ կայք առաջի ,
Մաղթել ըզմերըն փրկութիւն ։
Ընկալարուք վէհք 'ի տնանկաց
Զընծայս բանի աղքատանաց ,
Իբըր ծովու կաթիլ մի ջրոյ
Կամ եթերին նըշոյլ ինչ հրոյ ․
Զոր անմահից ընծայ տօնի
Մահկանացուքս ընծայեցաք ,
Անմարմնական հոգեղինացըդ
Մարմնաւորքս և հողեղէնքս ,
Բարեբախտից և երջանկաց
Թըշուառականքս և Թարմատարք ․
Բարձրագունից և երկնայնոց
Խոնարհ բնութիւնս և երկրաւորք ․
Եւ յաննխաղ ձերում բարեաց
Փոխատրեցէք մեզ ըղպախտոյս ,
Զաստուածայինն և զհոգեւոր
Զառ 'ի վերուստ շնորհաց զեղումն ․
Մաղթել ընդ մեր բարերարին ,
Զոր և առնէքն 'ի սկըզբանէ ․

Զգործըս ձեռաց քոց, ասելով,
Անտես 'ի քէն մի՛ առնիցես ։
Զնոյն պաղատանս 'ի յայսմ աւուր
Խընդրեմք 'ի ձէնջ առաւելուլ
Յաղագըս մերս եկեղեցւոյ
Եւ ընդհանուր սուրբ հաւատոյ ,
Երկըրպագուաց ընդ ձեզ հոգւով
Ամենասուրբ Երրորդութեանն ,
Խաղաղական շնորհել ըզկեանս
Ի կըրկնակի մեր ներհակաց ։
Նա և ըզմերս անարժանից
Ըզպաղատանս այս աղօթից
Ձեր բուրվառօք իմանալեօք
Խընկարկեսջիք մեծ արքային ։
Ուստի զըրումըն մաղթանաց
Յառատաձիր պարգեւողէն
Ձեր ընկալեալ մեծաւ սիրով,
Մեզ 'ի վերուստ առաքերելով ։
Եկեղեցւոյ տալով գըլխոց
Առաջնորդել մարդկան հոգւոց ։
Վերաբերել զամենեսին
Ընդ ձեզ յերկնից արքայութիւնն ,
Արժանանալ բանիւ առ տէր
Ասել. ահա ես և մանկունք ,
Յորմէ լսել զբարին անուն ,
Եւ զանթառամն առնուլ պըսակ ։

Քահանայից կատարողաց
Անմահ զենմանն սպասաւորացն,
Մաքուր հոգւով յորդորեցէք
Սպասաւորել հրեղէն հացին ։

Ճըգնաւորաց, որք 'ի մայրինի,
Լերուք նըպաստաւորք եւ ջանակիցք .
Առանց մեղաց պահել զնոսին
Ի թըշնամւոյն գաղտնի նետից ։

Թագաւորաց բարեպաշտից
Եւ իշխանաց քրիստոնէից,
Հայցեմք լինել նըպաստակից
Ի ճակատուն բարբարոսաց ։

Եւ համօրէն ժողովըրդեանն,
Որ ըստ ազգի եւ հասակի,
Յիւրաքանչիւրըն վըտանգից
Փըրկօղ լինել 'ի փորձութեանց ։

Անմեղ տղայոց գոլ պահապան
Ի յարկածիցըն դիւական,
Եւ մանկական ախտոց նոցին
Դաստիարակք խոհեմութեան ։

Զերիտասարդըս մաքրելով
Յառողջ խորհուրդս եւ 'ի մաքուրս,
Եւ զկատարումնըս հասակաւ
Խրատել յիմաստունս կատարեալս ։

Զալեւորեալսն 'ի դոյն ապախտակ
Ծաղկել հոգւով որպէս հերովք .

Զծերս 'ի հրահանգըս հանճարոյ
Վերէլս 'ի սիրտըս դընելով :
Կուսից մաքուր լինել սըրտիւ ,
Ի բնակութիւն սուրբ փեսային .
Կանանց պըճնել խոնարհութեամբ
Եւ բարեզարդ ըզգաստութեամբ :
Զամուսնացեալըն ըստ աշխարհի
Աստուածային սուրբ օրինօք ,
Յորդորելով 'ի սըրբութիւն
Եւ 'ի սիրոյ կատարելութիւն :
Ուղեւորաց ճանապարհի
Լերուք 'ի նոյն ընթացակից .
Եւ նաւելոց , որք 'ի ծովու ,
Ըղեկավարք և նաւապետք :
Եւ 'ի բնաւից պատահարաց ,
Ցերեկելեաց և յանկարծակից ,
Ըզպահպանիչըն 'ի ձեռն հայցեմք
Եւ ըզփըրկիչըն պաշտպանեմք :
Ի դիւական բըռնութենէ
Եւ 'ի պատրողըն խաբմանէ ,
Ի մարդկային յայտնի չարէ
Եւ 'ի ծածուկ նենգութենէ :
Որք 'ի մեղաց անկեալ տըղմի`
Ի քուն մահու են յարթմընի ,
Զձեռըն նոցին կարկառեցէք ,
Եւ 'ի խորոցըն վերբերէք :

Տանջեցելոցն առ 'ի դիւաց
Կամ 'ի յախտից մարմնականաց ,
Լերուք ցաւոցն ապաքինիչ ,
Եւ չար այսոցըն հալածիչ ։
Որք 'ի բանդի՝ արձակեցէք ,
Եւ զկապելոց կապանս լուծէք ։
Զգերեալսն 'ի յարկսըն դարձուցէք ,
Եւ ըզծառայսն ազատեցէք ․
Զտարակուսեալսըն փրկեցէք ,
Եւ նեղելոց անդորրեցէք ։
Տուք մեծատանց ըզգուշութիւն ,
Եւ աղքատաց յուսադրութիւն ։
Եւ ըզհոգիս ամենեցուն
Ի սէր բարեաց յորդորեցէք ։
Աստէն զաշխարհ աշխարհայնովք ,
Անդ զԱստուած աստուածայնովք ․
Յաղօթըս սուրբըս միշտ կանխել ,
Ջերմ արտասուս յաչաց բըխել ․
Յաղթող մեղաց լուանալ զոգիս ,
Եւ լուսաւոր առնել ըզմիտս ․
Պահովք զմարմինըս մեր ճընշել ,
Հոգեւորօքըն կերակրել ․
Ողորմութեամբ կարօտելոց
Զարքայութիւնն երկնից գըտնել ․
Ըզցանկութիւն մարմնոյ սանձել ,
Ըզսէր Հոգւոյն 'ի մեզ շարժել ․

Զատելութիւն 'ի մէնջ հերքել,
Եւ սուրբ սիրով ըզմեզ կապել.
Ըզկեղծաւոր վարըս մերժել,
Ըզճըշմարիտըն հաստատել.
Զագահութիւնըն հալածել,
Ըզզուարթարար բարըս տընկել.
Ի բարկութեանց 'ի բաց լինել,
Ըզհեզութիւն յանձինս ուղղել.
Ի տըրտմական կըրից մեկնել,
Յիշմամբ բարւոյն ուրախ առնել.
Ըզհեղգութեան արմատն այրել,
Զարիութիւնըն բորբոքել.
Զհըպարտութեան խորհուրդ վանել,
Զխոնարհութիւնն ուսուցանել:
Այլ և տարերց բարեխառնիւք
Տուք ըզպըտղոց առատութիւնս.
Ի ցամաքնէ զպահպանութիւն,
Որք առ 'ի խորատ գան 'ի վերուստ:
Տուք խռովութեանց խաղաղութիւն,
Եւ յերկիւղից անհոգութիւն.
Ի տըրտմութեանց զուրախութիւն,
Եւ 'ի վըշտաց ըսփոփութիւն.
Ըզտարաժամ մահուց բարձումն,
Զանպարտ արեանցըն դադարումն.
Եւ յամենայն կեանս ըստ մարմնոյ,
Լերուք պաշտպան մեզ և հոգւոյ:

Իսկ 'ի մահուան աւուր մերոյ ,
Բնութեանս կապիցըն լուծելոյ ,
Մինչ բարեկամքըդ գայք մեզ հեւր
Ի հեռաւագնաց երկնից ուղղոյն ,
Թէ 'ի գործոցըն կերակրոց
Ունայնացեալըք ընկեցիկք ,
Զերկիս միայն ընդերկանեալս
Ընկալարուք ըղձաւատոյն :
Եւ ըզփրկչութիւն աստուածայնին .
Եւ ըզպատուակերպ տիրականին
Եւ զզգամանականըս մեր հոգի ,
Ըզհամազգիս ձերոյ բնութեան ,
Հեշտալիս աւանդեցէք ,
Եւ քաղցրութեամբ ըզձեզ ցուցէք :
Եւ 'ի յայսոցն օդականաց
Անխռովաբար զմեզ անցուցէք .
Եւ ընդ հոգւոց սուրբ անդրանկաց ,
Որք 'ի վերինն Երուսաղէմ ,
Դասաւորեալ անդ հանգուսջիք ,
Մինչ 'ի շարժել պահապանացն :
Յորժամ արծուիքըն սըլանան ,
Ընդ գէշ մարմնոյն զամն միանան .
Փողով մեծաւ ձեր ժողովիլն
Առ աթոռով դատաւորին ,
Յայնժամ լերուք մեզ օգնականք ,
Ո՛վ Ճըշմարիտ մեր բարեկամք .

Զի դասեսցուք յաջակողմեան ,
Լըսել ըզձայնն երանական .
Լինել ժառանգ արքայութեանն ,
Եւ երկնայինն ուրախութեան .
Լընուլ զտեղին անկեալ դասին ,
Ըստ խոստացեալ անսուտ բանին .
Պարակցելով նմանեակ դասուդ ,
Ի հարսանիս Հօր Միածնին ,
Երրորդութեանն երգել ըզփառս
Ընդ ձեզ յաւէտ միշտ յաւիտեանս :

## ՏՈՒՆՔ ՀԱՐԻՒՐ ԸՍՏ ՀԱՐԻՒՐՈՑ ՈՉԽԱՐԱՑՆ

Օ անձին բարեաց ծընող բանիս
Մի՛ մոռանայք առնողք վեհիցս,
Զներսէս եղբայր Հայրապետիս,
Որոյ անուն ասէր Գրիգորիս ։
Յորմէ խընդրոյ զինջեալ, ըստ իս
Ցարմարեցաւ շինուած Ճառիս,
Եւ եղանակք շարականիս
Առ 'ի պատիւ մեծի տօնիս ։
Արդ յիշեսջիք ընդ Տեառն և զիս,
Լըսօղք վերնոցըն գովեստիս.
Եւ դուք յիշեալ առ տէրունիս
Լինիք յերկնից նորայն բարիս ։

# ԱՍԱՑԱՒ ԵՒ ԳՐԵՑԱՒ

# Ի ՆԵՐՍԻՍԷ

# Ե Պ Ի Ս Կ Ո Պ Ո Ս Է

# ՑԵՂԲՕՐԷ

# ԿԱԹՈՂԻԿՈՍԻ ՀԱՅՈՑ

# ՏԵԱՌՆ ԳՐԻԳՈՐԻՍԻ

# Ի ԿԼԱՅՍ

# Հ Ռ Ո Վ Մ Ա Յ Ա Կ Ա Ն

# Ի ԹՈՒԻՆ Ո Ծ Ա·

# ՏԵԱՌՆ

# Ն Ե Ր Ս Ի Ս Ի

## Յ Ա Ղ Ա Գ Ս

## ԵՐԿՆԻՑ ԵՒ ԶԱՐԴՈՒՑ ՆՈՐԱ

ԲԱՐԱՌՆԱԲԱՐ
Ի ԴԻՄԱՑ ՆՈՐԻՆ
Ի ՉԱՓ ԵՐԿՈՏԱՍԱՆԻՑՆ
ՊԱՐԶԵԱԼ ՈՏԻՑ

Ի ԽՆԴՐՈՑ
ԱՌՆ ԲԺՇԿԱՊԵՏԻ
ԵՒ
ԱՍՏԵՂԱԳԻՏԻ

ՄԽԻԹԱՐԱՑ

# ՏԵԱՌՆ
# ՆԵՐՍԻՍԻ
## ՑԱՂԱԳՍ ԵՐԿՆԻՑ
## ԵՒ
## ԶԱՐԴՈՒՑ ՆՈՐԱ

---

ԻՄ եղական գոլով բնութիւն և
սկզբնական ,
Ցանեղէ՛ն ձրգեալ կամար անզու-
գական ,
Անջրպետեմ զջուրսըն վերին և
ներքնական ,
Որպէս պատմէ զինէն Մովսէս աս-
տուածաբան ։
Ես եմ միջոց ընդ անմարմինսն և
մարմնական ,

Ունիմ առ իս յերկուց բնութեան-
ցըն յատկական .
Ըստ անմարմնոյ՝ զոչ 'ի ձեռաց շօ-
շափական ,
Եւ ըստ մարմնոյ՝ գոլով աչաց տե-
սողական ։
Միատարր եմ միագոյն համանը-
ման .
Հինգերորդ , ծածկոյթ քառից՝ ո-
րոց ծընեան ։
Անքանակ եմ և չափից անչափա-
կան .
Այլ և թըզաւ միով չափիմ , թէ
ոչ մարդկան ։
Պարունակող եմ անզգայնոց և
զգայական ,
Պարունակիմ յայլմէ վեհէ անտե-
սական .
Բոլորակ եմ կիսագունդ որպէս
խորան ,
Բնութեամբ կայուն , անձամբ շար-
ժուն անկայական ։
Հիմն և աստառ եմ գոյութեանցս
այս նիւթական .
Անդունդք 'ի խոր , բարձունք 'ի
վեր , մինչ վերանամ ։ .

Մինչ հայելով ոչ վտանգին կամ
ձանձրանաման ։
Հողմոց հընչմամբ ոչ տատանիմ,
այլ կանգուն կամ ․
Յորոտմանէ ոչ սասանիմ, այլ զօ-
րանամ ։
Քանզի 'ի ծոց իմ՛ են սոքա խլրտու-
ծընեան ․
Եւ ըստ կամաց իմոց շարժին, չեն
ապըստամբ ։
Ես եմ պատճառ երից սեռից
կենդանութեան ․
Օդականաց, երկրաւորաց, ւոր ծո-
վական ։
Նոցին մահու դարձեալ լինիմ ես
գերեզման,
Եւ յարութեան միոյ ընութեան որ
բանական ։
Փարթամութեան ամենայնի եմ պա-
հարան,
Որ պատուականք և պանծալիք են
առ մարդկան ։
Ժամանակաց ամենեցուն բաշխո-
ղական,
Ոմանց բազում ոմանց նուազ ա-
ւուրս տամ ։

Ոչ 'ի յինէն այլ 'ի վերուստ բաժա-
նեցան ,
Այն՝ որ գիտէ զօգտութիւն տալ որ-
դւոց մարդկան ։
Ունիմ առ տիւ՝ պայծառատիպ
մի կարկեհան ,
Եդեալ 'ի լանջս ըստ վակասին ա-
հարոնեան .
Փեսայօրէն ջերմամբ սիրոյ յոյժ ըղ-
ձական
Գիրկս արկանէ հարսին իւրոյ խո-
նաւութեան ։
Իսկ առ գիշեր՝ սափրակափայլ
բիւրեղանման ,
Որ միշտ աճէ և նուազէ հընգետա-
սան .
Ձայնէ ըղձիւ ժամանակաց աւուրց
մարդկան ,
Զոր և քընարըն տասնաղի երգէ
դաւթեան ։
Բնաւորելով գիշերին խոնաւ և հիւ-
թական ,
Միաւորեալ յամուսնութիւն կի-
ղողական .
Ցորոց խառնից գոլ համայնից ծը-
նընդական ,

Բուսոց, տընկոց, և ըղձայնոց՝ որք
շընչաւական.
Ցիս ընդ սոսա կանթեղքս եւթն
են 'ի վառման,
Որք մոլորեալ՝ տան անմոլար իմաստ
մարդկան.
Ունին յինքեանս ըզթիւ աւուրց ա-
րարչութեան,
Եւ ըզխորհուրդ եւթանց դարու-
ցըն կատարման ։
Ի և քաղաք յիս պանծալի պա-
րագրական,
Ցոյց աշտարակք՝ կենդանատուք եր-
կոտասան.
Որք են եւթնից մոլորականացըս կայ-
արան,
Ցորս 'ի մըտանելն՝ աղջըկն կանուխ
ըզվաղորդայն ։
Ոմանց բարի տան գիտողք և խոտ-
տանման,
Այլոց ըղչար թէ լինիցի խօսքն ըղ-
բան ։
Ի զի լինի և կատարի, զոր խօսե-
ցան,
Ի զի սխալող և ընդունայն բար-
բառեցան.

Եւ այսր իրի պատճառ է յոյժ խորհրդական ,
Զոր տեսանացուք փոքր 'ի շատէ ըստող-ունկան :
Զի թէպէտ են յանկենդանեաց նոքա ուսանեան ,
Սակայն շարժմամբ անձանց ունէին ինչ ազգական ·
Ու 'ի յինքեանց ըղձայութեանց գօ-գուսարին տան ,
Այլ 'ի բանէն՝ որով երկինք հաս-տատեցան :
Եւ չեն զարմանք ըմբռնչելեաց՝ որք յայս փութան ,
Թէ 'ի շարժմանց սոցա լինին նախ-գիտական ·
Զի թէ անբանք յայս խակապես ընաւորեցան ,
Եւ յարմարոց լինի ազդումն գի-տութեան ,
Ի կերպարանս ազգի ազգի առող-նշան ,
Ծանուցանեն բանաւորաց զառա-ջիկայն :
Նա և Ջրոյ բնութիւն կերկին տրակենան ,

Արթուցանել և ողողել բնաւորե-
ցան ․
Ըղձոյն կ. հուր ներհակաբար բերէ
յինքեան ,
Լուսաւորել և հըրդեհել իւր զօ-
րութեան ։
Միով բարի և օգտակար ներգոր-
ծեցան ,
Միւսովըն չար ուսապականիչ ու-
նակացան ․
Ոչ թէ ինքեանք յոր և կամին փո-
փոխեն յայն ,
Զի անըղձգայք չուշին բնութիւն
փոփոխական ․
Այլ որ եստեղծ , եդ 'ի նոսա զայս
բընական ․
Եւ չէ հընար լուծանելոյ , բայց իւր
հրամանն ։
Արդ թէ փոքունք 'ի յեզերց
հաւատացան ,
Զի նախադէտ լինել յինէն պատ-
րաստեցան ,
Չէ անտեղի զայս իմանալ թէ կար-
գեցան
Զարդ իմ պայծառ ունել խոր-
հուրդս իմացական ։

Բայց որ միայն կըրթելին ուսմանց
սովորական ,
Եւ ըմբռնութիւն մըտացն ունէին ան_
մաքրական ,
Աղօտագոյն նըրբից շարժմանց ոչ
հըմտանան .
Վասն այնորիկ խօսէին յոգունըս
սխալական :
Եթէ ըմբռնէք ծածկոյթ լուսոյ մը_
տաց տեսլեան ,
Որ են մեղաց հոյլք և զբաղմունըք
նանրութեան ,
Հողմով Հոգւոյն զայն առնէին հա_
լածական ,
Եւ ըղհողին Հոգւոյն մաքուր
սուրբ ընակարան ,
Կորովագոյն աչօք ունելով տեսողա_
կան ,
Տեսանէին զիմոց շարժմունսն ան_
վըրիպական :
Որպէս նախնիքն , այնք՝ որ հա_
սին այս գիտութեան ,
Ի հեշտութեանց մարմնոյ 'ի բաց
որոշեցան .
Կեղքն 'ի կարաս մըտանէին առանձ_
նական ,

Այլք յանապատըս բնակէին ծընդ-
նողական .
Եւ 'ի տուողէն ամենեցուն տըր-
մութեան
Գաղատէին բանալ զմըտացըն դըրա-
տըան .
Որոց շնորհէր զիմաստութիւնըն
զիւրական ,
Խառնեալ ծածուկ ընդ կըրթու-
թիւն նոցին և ջան ։
Դարձեալ է այլ պատճառ լինե-
լըն սխալական ,
Ի թոյլ տալոյն բարի կամացն ա-
րարչութեան ,
Զի մի՛ զտոսա կարծեն տըւող այս
գիտութեան ,
Եւ յարարչէն իւրեանց լինին մո-
լորական ։
Նա՝ իմաստնոց մըտաց և այս է
քըննական ,
Թէ է՛ր տըւաւ տղքօք իմաստ այս
խոհական ։
Քանզի յորժամ աստուածաստեղ-
ծըն մարդ Ադամ
Կորոյս մեղօք ըղշնորհսըն ձրի և տէ-
րական ,

Ողորմելի որդւոց Նորա թշուառական

Ի յարարչէն նուաղ իմաստ. այս շնորհեցան.

Նախադուշակ լինել մարդկան չար պատահման,

Զի աղօթիւքն առ Նա՝ փրկէին 'ի փորձութեան ։

Որպէս Նոքա որ արուեստիւս այս հըմնացան,

Ըստ այս բանի՝ յայտնի լինին զայս խոստովան,

Թէ չէք հընար, 'ի փորձանաց՝ որ մարդոյ գան՝

Փրկել ումեք, քան աղօթիւքըն մաքրական ։

Որպէս երազք, որ 'ի յանուրջ զարհուրական,

Գաղտատանօք առ 'ի բարիս փոփոխեցան ։

Ծանիր և զայս, ով իմաստուն և խոհական,

Զի այս արուեստ հուպ էր 'ի տունն աբրահամեան.

Նա՝ և Մովսէս և այլ ընտրեալք յայս վարժեցան,

Ցաւըրս մարդկան են յոգնակի և
 անթուական,
Իսկ յարարըչէն 'ի թիւ անկեալ ա-
 նուանեցան :
Որք օրինակք են արդարոց 'ի յա-
 րութեան .
Զի կէսք նըւաղ՝ այլք առաւել
 պայծառանան :
 Կայ այլ իմաստ ծածկեալ աղքօք
 խորհըրդական ,
Որ իմաստնոց է ըմբռնելեաց հասա-
 նական :
Զի յօթնից թիւ աստեղաց մոլո-
 րական
Է օրինակ այսմ աշխարհի , որ ան-
 ցական .
Եօթն անգամ շըրջապատեալ նոյն
 հազար ամ ,
Անցեալ 'ի դուռն ընկըղմելով յետ
 կատարման :
 Իսկ բազմութեան անմոլորակացն , որ
 անշարժ կան ,
Ութերորդի անթիւ դասուն՝ որ յա-
 ւիտեան .
Ցորում ոչ ամք և ոչ ամիսք են
 թըւական ,

Ոչ ժամանակք և ոչ մասունք ժամանակեան.
Ոչ հազարաց շըրջապատութեամբն բեւր անգամ,
Եւ ոչ բիւրուց բիւրապատիկ բեւր հազարեան.
Զի մի է օրն այն աներեկ և անվախճան,
Համապայծառ և անըստուեր արփիական։
  Ոչ կարօտի աշխարհ առ տիւ արեգական,
Եւ կամ լուսին ու աստեղք 'ի լոյս գիշերական.
Զի լուսաւորքս յերկրեանց լուսոյն խաւարանան,
Յորժամ ծագէ լոյսն անմատոյց աստուածութեան։
Եւ փոփոխի այս աշխարհի կարգ ամենայն
Ի հնութենէ նորոգելով, որպէս գրեցան։
  Ես դաւանիմ որպէս կոնդակ կըտակագրեան,
Կամ մագաղաթ յորժամ 'ի հրոյ հուր մերձենան.

Զի վարագոյր եմ աթոռոյն արքու-
նական ,
Որքան ծածուկ է յաշխարհէ այս
նիւթական .
Եւ մինչ կամի յայտնել ծածկեալ
լոյսն էական ,
Բառնամ 'ի բաց զիս սպասաւորքն
աննիւթական :
Գայ իջանէ մեծ թագաւորին ա-
հեղական .
Յայտնի անեղն էից հանուրց՝ որ ե-
ղական :
Յարուցանէ որք են մեռեալ 'ի գե-
րեզման ,
Նորոգէ յաթոռ աստուածայինն դա-
տողական ,
Տալով բարեացն անճառ բարիս յար-
քայութեան ,
Չարացն լլկել հուր գեհեննին միշտ
յաւիտեան :
Յայնժամ և զիս նոր զարդարէ
զարմանազան ,
Եւ զլուսաւորս իմ պանծալի յոյժ
հրաշական :
Ոչ 'ի ախտոյս շրջագայից , որպէս
և այժմ .

Զի անդ մի տիւ, ոչ գոյ գիշեր հաւ-
տանող զայն,
Նորոյ երկնից նորոյ երկրի, որք նո-
րանան.
Տարերց քառեից, ուրք ընդ նոքօք
պարագրեցան ։
Զի ակն ունին որք ընդ գըլխոյն
ծառայեցան,
Ցազատանալ գըլխոյն ինքեանց ա-
զատութեան ։
Արդ, ըստ բանի սուրբ Սաղմո-
սաց երգոյ դաւթեան,
Զգործս արարչին իմ խօսեցայ ես՝
որ անբան.
Երկինք պատմեն զփառս Աստու-
ծոյ յոյժ ըղուելեայն,
Եւ զարարածս հաստատութիւնս
անձայնական ։
Ընդ որս եւ ես, որ սպասաւորս
եմ բանական,
Որ 'ի դիմաց երկնից գրեցի տակաւ
զայս բան,
Նայիմ յերկինս եւ ներկայացեմ զայս
ամենայն,
Եւ փառըս տամ անեղ բնութեան
արարչական ։

## ՆՈՐԻՆ

## ԱՅԼԱՉԱՓ ՏԱՂՔ

## Ի ԽՆԴՐՈՅ ԱՆՈՒԱՆ

## ՆԱԽԱԳԻԾ

## ՏԱՌԻՅ ՏԱՆՅ



## ՅՈՐԴՈՐԱԿ

*ՄԻՆՉՏ էիդ անեղ բնութիւն*
*բնաւորեցան,*
*Անեղիդ անմահութիւն հեռաւ-*
*եցան.*
*Խաղին խորհուրդ անծին անուն*
*պարփակեցան,*
*Եւ Որդւոյ ծնընդութիւն ոչ ճա-*
*ռեցան:*

13*

Ի Հօրէ բղխումն Հոգւոյդ ոչ քըն-
նեցան,
Եւ հոմման յՈրդւոյ առումն ոչ
պատմեցան ։
Թէ զիա՞րդ երրեակ և մի գոլ, ծա-
նուցան ․
Բայց թէ զի՞նչ է քո բնութիւն,
ոչ յայտնեցան ։
Արարածք պատմեն ըզփառս, որ
էացան ․
Անմարմինք և մարմնականք՝ որ
գոյացան ։
Բոլորից քառից տարերք՝ որ տար-
րացան,
Սիրելիք և հակառակք՝ որ միա-
ցան ։
Բարձրագոյն հոյլք անմահից՝ որ
բոց հրացան,
Հրեշտակաց դասք իններեակ հո-
գիացան ։
Ժամուց մեր ունող յինքեանս լոյսք
այլ ջուցան,
Խօթնեակ մոլորակաց՝ որ կար-
գեցան ։
Իսկ վերինք որ անմոլար զարդ կա-
ռուցան,

կենդանիք երկոտասանք անուա-
նեցան ։

Հաստատունք անշարժ շարժուն շա-
րադրեցան ,

Յար մոլարք ոչ մոլորեալք մոլո-
րեցան ։

Կառուցեալք անշարժ բնութեամբ,
բայց շարժեցան ․

Շարժելոցս ազդեն շարժումն՝
յոր փոխեցան ։

Ընդ նորին սատարակայիցս հաստա-
տեցան

Սեռք և ազգ , եւ աստարոհեալ որո-
շեցան ։

Նոյնք 'ի յօդս օդապարիկք որ պա-
րեցան ,

Երկրաւորք և ծովայինք բաժա-
նեցան ։

Կենդանիք ամենեքեան որք սերե-
ցան ,

Քում անհեղեղ հրամանաւ ներ-
գործեցան ։

Ազգամեան սեռ մարդկային որ
ստեղծեցան ,

Ի պատկեր անճառմանութեան յօրի-
նեցան ․

Եւ առ Հայր, և յաշխարհէ ոչ
հեռացար ։
Սա 'ի խաչ վասն Ադամայ բևե-
ռեցար ,
Ճաշակեաց լեղեաւ մարմնով զոր
ըղձեցար ։
Էր Աստուած, նոյն էր և մարդ, որ
խաչեցար .
Դրօշմն 'ի կենաց եղեալ 'ի մահ,
կամաւ տըւար ։
Զի անմահ բնութեամբն խաչիւ ոչ
մահացար ,
Այլ իմով մեռար մարմնով մահ-
կանացուար ։
Աղխեալ դուռն դժոխոց խոր-
տակեցար ,
Յորժամ էջ 'ի նոր տապան և
թաղեցար ։
Յարուցեալ յերրորդ աւուր, որ-
պէս գրեցար ,
Մետասան առաքելոցն իւր յայտ-
նեցար .
Սոյն յերկինս, որպէս և էջըն, վե-
րացար .
Ընդ աջմէ ծնողին իւրոյ նոյն
բազմեցար ։

Բայց գայցէ դարձեալ փառօք, որպէս ցուցաւ.

Ի յերկուցըն հրեշտակաց՝ մինչ համբարձաւ ։

Ազդէ փող մեզ յարութեան, զերդ խոստացաւ,

Դատաստան յաւիտենից՝ որ ծանուցաւ .

Նըմա փառք յայս յաւիտեան, որ ընթացաւ,

Եւ յանկէտ յաւիտենիցն՝ որ կայացաւ ։

# ՏԵԱՌՆ

# ՆԵՐՍԻՍԻ

## ԳՐԵԱԼ

## ԱՌ ԵՂԲՕՐՈՐԴԻՆ ԻՒՐ

# ԱՊԻՐԱՏՆ

## Ի ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՕԼԻՍ

---

ԱՐԵԳԱԿԱՆ լուսոյ ծագման՝
Տէր քո առ իս համանըման.
Ուետոյն քաղցու բղձըղչական,
Ցագեցուցիչ՝ որ քեզ բաղձան ։
Ապիրատորդ գըրեմ զայս բան,
Եղբօրորդւոյդ իմ ըղձական.
Պանծացելումդ արխական
Ձիավարժից ներհըմտական,

Ի տեգ նիզակ շարժողական
  Որպէս ծըղօտ մի եղեգան .
Բամեալ յանհեակ կըրող վահան ,
  Իբըր սանձով անշեղական :
Արիութեանց պարառական ,
  Նախնեաց քաջացըն գոլ նըման :
Տիրականիդ ընդհանրական ,
  Որպէս լըսեմ, դու պատուական :
Նա և միասում սեռ արքունեան
  ՅԱնդրոնիկեայ սիրալըրական ,
Իսկ առ 'ի մէնջ հրաժարական
  Ի սիրելեացըս քո ընական :
Տենչամք սիրոյդ սըրտի տարփմամբ ,
  Մինչ զի կիզուլ տեսոյդ յիշմամբ :
Էից վե՛հ երանական
  Զքոյդ տեսութին քոյքըս վարկան .
Բոտել 'ի յայս վայր ամրական ,
  Գալըով քոյին ընդ բիւրական ,
Ներածութեամբ արքունական
  Առ սկիւթականս ահեղ գոչման ,
Երանութեանց արժանանան
  Որք տեսանեն զայս եղական :
Բարունաբար գըրաւորական
  Ծանեա թէ է ըստուգական .
Սըրտից մերոց նըւաղական
  Լինել յաւսով զըւարթական :

Ինձ դու յաւէտ կաց խընդական ,
  Մարմնով առողջ և հոգեկան ։
Սիրոյ մի՛ տար աշխարհական
  Զհոգիդ գերել անմարմնական ·
Էին սիրոյ անզուգական
  Ջանա լինել տապընջական ։
Բայց մի՛ բարուր պատճառական
  Դըներ զհաստակըրդ մանկական ·
Այլ քեզ առցես տիպ ցուցական
  Զբազում մանկունս ածական ·
Նախ ըզՅովսէփ եգիպտական ,
  Ապա զյոգունս որք 'ի գրի կան ։
Զարեացըն մի՛ լինիր նըման ,
  Որ զմանկութիւնն աշխարհի տան ·
Այլ որ ախտիցըն յաղթական
  Եղեն մարմնով այս հիւթական ,
Փայլեն 'ի դաս հրեշտակական ,
  Խառնին 'ի գունդըն սրովբէեան ։
Որով ըզքեզ մարդէ իմ բան ,
  Լինել նոցա նըմանական ,
Վայելելով աստ յերկար ամ
  Եւ անդ ըզկեանսն որ անվախճան ։
Սակաւ բանիցըս խըրատական
  Լեր ամբագոյն դու պահապան ·
Այլ և զհաւատդ , որ յաւազան ,
  Անշարժ պահեա մինչ յաւիտեան ։

Ըստ լի ամաց քոց երեանից ,
Գրեցան և տունքըրս գովեստից ,
Ի հիւանդաց և ցաւալից
Անձնէ՝ յաւուրըս քառասնից ։
Զոր մերձ մահու հասեալ մըրտից ,
Դարձոյց այսօրէն տէրն ամենից .
Որպէս լինիս անցեալ կըրից ,
Ի յեկեղեցւոյդ բընաւից ։

# ՆՈՐԻՆ

# ԹՈՒՂԹ ՄԽԻԹԱՐՈՒԹԵԱՆ

## ԱՌ ՈՄՆ

## ԻՇԽԱՆ ԱՐԵՒԵԼԵԱՆ

## ՎԱՍՆ

## ՈՐԴՒՈՅ ԻՒՐՈՅ

## ՏԱՐԱԺԱՄ ՄԵՌԵԼՈՅ

---

ԱՆՏԵՍ է յոյսն աստուածային,
’Ի Առաքելոյ անսուտ բանին .
Բայց որք բանան զաչըս սրտին,
Այնք հաւատով ’ի նա հային ։
Գանձեն զաննիւթ գանձն ’ի հոգին,
Եւ ոչ ցանկան նիւթականին,
Դիտեն զաշխարհըն զայն վերին,
Ուր ոչ է սուգ և ոչ տրտմութիւն ։

Եւ դու թէ զմեզ մեղաց մըթին ,
Մաքրես յոգւոյդ յաշաց ըրըքին .
Զմանուկ տըղայդ քո զըստղձալըն
Այլ ոչ տըղաս կըսկըծագին ։
Երանելեացըն քաղաքին
Զնա ընակակից Նայիս Նոցին .
Ընդ հրեշտակացն իննեակ դասին ,
Եւ անդըրանկաց գըրելոց յերկին ։
Թագաւորմից լուսերամին
Համապայծառ է պանծալըն .
Ժառանգ վերինըն Սիոնին ,
Ժառանգակից որդւոց Նորին ։
Ի գիրկըս Հօրն է գըրկուելըն ,
Յորժ գերագոյն անառակին .
Լոյս աշխարհի Հօր Միածնին
Ցեղըսայրութիւն հրաւիրելըն ։
Խընդա մեծաւ այսու յուսով ,
Սթափեա ՚ի սգոյդ ըսփոփելով .
Ծանիր զընտութիւնըս մեր մարմնով
Մահկանացու անդարձ վըճռով ։
Կաց ՚ի կանգուն օրինակով՝
Զոր մեզ ետուն հարքըն գըրով .
Հայեաց յԱբէլ արեամբ մահով
Հօրն առաջի մեռանելով ։
Զեղ զԱբրահամ՝ տես առնելով ,
Զորդին առոյլն նըւիրելով ։

Ղամբար մանկանց ողջակիզում,
Զմինն ընդ երից ընծայելով:
Ծուխացելոց խորին Թըլում
Մանկանց եւթեանց նըմանելով.
Մակաբեանց մօրըն Շամունում,
Զորս Աստուծոյ տայր ցընծալով:
Յիշեա և զկեանքըն տապանում
Ըզմարդկան մահ մեռանելով.
Նոյն 'ի յերկիր օր յառնելով,
Եւ մեզ եւս յայս նըմանելով:
Շինէ զքակեալս նորոգելով,
Յանմահ բնութիւն փոփոխելով
Որք հինգ տաղանդ պատուիրանով
Շահին ըզգործսըն հաւատով:
Զարք որ չարեացն են գործարան,
Յառնեն 'ի մահն անմահական.
Պատուին բոցոյն անշիջական,
Ուտին յորդանցն՝ որ անվախճան:
Ջերմ արտասուաց կարօտանան,
Որ անօգուտ է յետ մահուան.
Ոամ՛ վարուց հետեւեցան,
Վասն այնորիկ անդադար լան:
Սուրբ աղաղակին ոչ լսելոյ ձայն,
Այլ երգ խընդման վայելչական.
Վասն որոյ զգոյն ըզգորխորական
Սեաւ ըզգեստիդ 'ի յանձնէդ հան.

Տըրտմական կերպն առցեն. մախձան ,
  Դառն արտասուք ձեր և կական ։
Րոտես զերկունըս թախծական ,
  Զոր մահ մանկանըն ձեզ ծընեան .
Ցոյց զականմայդ կամայական ,
  Ցաւ ստեղծողին յօժարական ։
Իւծեալ մարմնոյն՝ որ 'ի տապան ,
  Ծանիր զհոգւին յերկնից խորան .
Փառօք փայլէ յարքայութեան ,
  Ծագէ նըման արեգական ։
Քեզ մըխիթար սակաւ այս բան
  Զափով տառիցըս հայկական ։
Նայեաց զոր ետ քեզ թագաւոր
  Հայրըն գըթած և բարերար .
Եհան զորդին քո յերկրէ չար
  Ի հրեշտակաց բիւրոցըն պար ։
Րեննակա՞ն լուսոյն անձառ ,
  Հուպ և տեսող ըզնա արար .
Սըրբոցն որ անդ համմագումար ,
  Եւ ընտրելոցըն հաւասար ։
Եթէ յայս յոյս ունիս հանձար ,
  Լինիս հոգւով դու անմոլար .
Սըրտիդ կըրակն որ կայ 'ի վառ ,
  Փոխի 'ի ցօղ զըւարթարար ։
Ի բաց դիր այժմ ըզսգոյդ խաւար ,
  Որ անյուսիցն է տըրտմարար .

Եւ դու ընկալ զայն անվրթար ,
Զլուսացելոցըն զուարճարար ։
Կենդանի՛ն և կենարար ,
Այն որ ձայնիւ կոչեաց զՂազար ,
Առ քեզ գոչէ աստուածաբար ,
Լուծցէ ըզսուգ քո և զաշխար ։
Թագաւո՛րըն կամարար ,
Որ զՄարեմանսն ուրախ արար ,
Ուրախութիւն քեզ անվըրճար
Պարգեւեսցէ աստուածաբար ։
Ղօղիչ զարտօսրըն զայն յերկար
Արտասուելովըն մարդկաբար ,
Ի քէն բարձցէ զըրգոյդ խաւար ,
Նովին բանիւ կենդանարար ։
Կտաւոց մահուն մարմնապատար ,
Վարշամակին այն մահարար ,
Որ քոյ լուսոյն անյուսարար ,
Եւ հաւատոյդ ծածկոյթ արկար ,
Սատեա նոցին և գանիւ հար ,
Զի փախիցեն ծառայաբար ։
Ի քէն մերկեա զգեստ ողըրմարար ,
Զերդ ըզպատան մահուն Ղազար ։
Հայեաց 'ի կինըն Կղոպատար ,
Որ վասն որդւոյն անմըխիթար ,
Աչօքն եռեւ լուսապայծառ
Թագիւ պըճնեալ արքայաբար ։

Որոյ Յիսուս ձեզ տիրաբար
Յաւուր մեծին երկնագումար
Ցուցցէ զորդին ձեր գերափառ ,
Օրհնեք Նովաւ զանէրն անդադար ։

ՔԱՆ ՀԱՒԱՏՈՅ

ՎԱՍՆ

ԱՆԵՂԻՆ ԵՒ ԵՂԵԼՈՑ

ՔԱՐԱՌՆԱՔԱՐ

Ի ԴԻՄԱՑ

ՀԱՅԿԱԿԱՆ ՏԱՌԻՑ

ՉԱՓԱՔԵՐՄԱՄԲ ՈԳԵԱԼ

Ի ՆԵՐՍԻՍԷ



ՐՅՔՆ

—— *անըսկիզբն ասէ զԱստուած,*
*Անեղ բնութիւն՝ ոչ արարած.*
*Յերիս անձինս բաժանած,*
*Ի մի բնութիւն միաւորած:*

ԲԵՆԸՆ

—— ընաւից ասէ անճառ ,
Համանն մըրուաց գոլ անհընար
ԶՈրդւոյ ծընունդն անեղաբար ,
ԶՀոգւոյ բըղխումն անհատաբար :

ԳԻՄՆ

Գըրէ ինքեամբ 'ի նիւթ էի
Զաննիւթականն իմաստ բանի՝
Թէ Աստուած էր միշտ կենդանի ,
Եւ է յայժմուս , և եղիցի :

ԴԻԱՅՆ

—— դաւանէ զԵրրորդութիւնն ,
Երեք անձինք և մի ընութիւն .
Ոչ միութեամբ 'ի խառնութիւն ,
Ոչ բաժանմամբն յօտարութիւն :

ԵԶՆ

Երրեակ անձամբ թիւ կատարեալ
ԶԵրրորդութիւնըն ծանուցեալ .
Ոչ քան զերկին առաւելեալ ,
Եւ ոչ երկուս կամ մին եղեալ :

ԶԱՅՆ

Զայս թիւ առեալ ըստ Եսայեայ
Ի Սրովբէից , որպէս և Նոյ .

Երիցըս սուրբ ասել Նըմայ ,
Եւ միանգամ տէր գերակայ :

Է՞Ն

——— էապէս մեզ քարոզէ
ԶՈրէնն , ուսեալ 'ի Մովսիսէ .
Թէ Աստուած էր 'ի սկըզբանէ ,
Եւ ոչ եղեալ 'ի յումեքէ :

ԸԹ՞Ն

——— ընդ Իւրն Հօր զուգական
ԶՈրդի ասէ համաբնական .
Ի Յովհաննէ ուսեալ զայս բան ,
Որ որոտայ յԱւետարան :

ԹՈՅ՞Ն

——— Թարգմանէ մեզ տիրաբար
Զհոգւոյն բըղխումն անքըննաբար .
Թէ 'ի Հօրէ է յատկաբար ,
Առնու յՈրդւոյ անճառաբար :

ԺԷ՞Ն

Ժամանակի պարունակող
Ասէ զԱստուած գոլ ըստեղծող .
Ոչ ժամանակ առ նա հասող ,
Եւ ոչ աւուրց ըզնա չափող :

ԻՆՆ

——— իսկապէս, ասէ, Բանին
Ի յոչընչէ ստեղծեալ գերկրին ·
Հաղորդ ընդ Հօր է և Հոգւոյն,
Որով եղեալքս ամէն լինին :

ԼԻՒՆՆ

Լոյսն՝ որ անեղ և գերազանց՝
Լուսոյ սկըսաւ, ասէ, ստեղծուած ·
Նախ առաջին ըզհրեշտակաց,
Երկրորդ զգալի համաստարած :

ԽԷՆ

Խաւար մածեալ 'ի յանդընդոց,
Ասէ, փոխեալ լուսովն 'ի բոց ·
Որով եղեւ տիւըն գործոց,
Գիշեր հանգիստ քընոյ արթնոց :

ԾԱՅՆ

Ծիրն երկնային յերկրորդ աւուր
Մեկնեաց, ասէ, զջուրն երկնաւոր ·
Եւ յերրորդին տունկք բուրաւոր,
Յօրինամ և դրախտըն լուսաւոր :

ԿԵՆՆ

Կամեցաց, ասէ, զանկշռայն ըզլոյս
Ի չորրորդին՝ յանօթ նիւթոյս,

Զարեգականն և ըզլուսնոյս ,
Եւ զաստեղաց պարունի յօդոյս :

ՀՈՅՆ
Հրամանն , ասէ , արարչական
Հան 'ի ծովէ կըրկին կենդան .
Զայնս՝ որ 'ի յօդս են թեւական ,
Եւ որ 'ի ջուրսըն լողական :

ՁԱՅՆ
Ձայն տիրական , ասէ , եհաս
Առ 'ի սորին հողանիւթեայս .
Բըղխել յերկրէ չորքոտանեայս ,
Զանազանից կենդանեաց դաս :

ՂԱՏՆ
Ղօղեալ խորհուրդ , ասէ , թաքուն
Երրորդութեանըն միաբուն
Վասն 'ի հողոյ ստեղծեալ մարդոյն ,
Առնել պատկեր նըման նորուն :

ՃԷՆ
—— Ճառագայթ , ասէ , փառաց
Զգեցոյց մարդոյն զանմահ կենաց .
Զկինն 'ի կողէն արար հաստուած ,
Օրէնս եդիր պատուիրանաց :

ՄԵՆՆ

Մախաղ, ասէ, առ 'ի չարէն
Ընդ մեր պատուիրն՝ որ յարարչէն,
Եհան խաբմամբ առ 'ի դրախտէն,
Եած յերկիր յայս փշեղէն:

ՅԻՆ

Յայնքան մեղաց, ասէ, չարիս
Արկ ընդդիմութիւն հողեղինիս,
Մինչ տահանաց բանալ երկնից,
Ծածկել ջրով զորս 'ի յերկրիս:

ՆՈՒՆ

Նոյ յազգն անդ, ասէ, ընտրեալ
Միայն գտաւ իւրովքն ապրեալ
Ի տապանին՝ զոր էր գործեալ,
Յորմէ կրկին զերկիր լցեալ:

ՇԱՅՆ

Շինուած, ասէ, զաշտարակին
Յետ այնորիկ յանդգնէին.
Յոր խառնակեալ լեզուք նոցին,
Ձեռամբ իւրեանց զայն քակէին:

ՈՅՆ

Ուսուցանէ Աբրահամու
Թէ հաւատոյ տան հիմն եդաւ.

Ուստի Աստուած կերակրեցաւ,
Եւ աւետեաց որդւոյն ոլուաւ ։

## ՉԱՅՆ

Չարեօք, ասէ, մարդկան որդոյ
Լըցաւ աշխարհ պաշտամամբ կըռոց.
Բայց Յակովբայն այն ծընընդոց,
Որ յերկաթին մտին հընոց ։

## ՊԷՆ

Պըրտուեալ տապանն, ասէ, զՄովսէս
Եւ Յակովբայ զարմին հանդէս.
Փըրկել զնոսա աստուածապէս
Յեգիպտոսէ սքանչելապէս ։

## ՋԷՆ

Ջանաց, ասէ, առ ինք ձըգել
Տէրըն զորդիս մարդկան փըրկել.
Մատամբըն իւրով օրէնք գըրել,
Եւ մարգարէս սուրբ առաքել ։

## ՌԱՅՆ

Ռամիկ, ասէ, զազգըս մարդկան,
Զի ոչ այսու առ Նա դարձան.
Մեծագունի կարօտացան
Հնարից դեղոյ բըժըշկական ։

ՍԷՆ

Սիրով, տէր, Հայր առաքեաց,
ԶԲանն ընդ մարմին միաւորեաց.
Զոր և մաքուր Կոյսըն կրեաց,
Ծընաւ մարմնով որով փրկեաց:

ՎԵՒՆ

Վերնոցըն լոյս, տէր, մաքրից
Ծագեաց յաշխարհ այս ըստուերից.
Եւ հալածեաց զխաւարն յէից,
Ոգւոց փայլեաց լոյս ամենից:

ՏԻՒՆ

—— տայ ասել բան ծայրագոյն
Վասըն Բանին իմանալոյն,
Տեառըն փառաց խոնարհելոյն,
Մինչեւ խաչի համբերելոյն:

ՐԷՆ

Րամ աւետեաց ձայնիւ լինի,
Թէ և ընութիւն ձայնի չունի,
Թէ որ ներնչեացն 'ի տապանի,
Նոյն ազատեաց զորս 'ի բանդի:

ՑՈՅՆ

—— ցընծութիւն մեզ քարոզէ
Զմիշտ կենդանւոյն յարութենէ,

Եւ զյարութիւն մեր հաստատէ
՚Նըմին նըման՝ յորժամ գայցէ ։

ՒԻՒՆՆ

Ւիւսէ ըզմեզ ընդ նոյն սիրով ,
Ցօղեալ ՚ի գլուխն ամբառնալով ,
Ցայն՝ որ նըստի բնութեամբ մերով
Հօր ընդ աջմէ բազմեալ մարմնով ։

ՓԻՒՐՆ

Փառաց անճառ լինի գուշակ ,
Որոց զԱստուած սիրեն յըստակ ,
Յորժամ մարմնովըն մերոյնակ
Ծագի յերկնից որպէս փայլակ ։

ՔԷՆ

—— Քրիստոսի՝ ձեռամբն իւրով
Զմեզ յորդորէ խաչակցելով ,
Զի և փառաց նորա յուսով
Հաղորդ լիցուք մաքրեալ հոգւով ։

ՍՈՐՈԳ , մանկունք իմաստութեան,
Տըւաք ղայս բան ձեզ խրախուսութե .
Երկնաւորացըն գիտութեան
Եւ համայնից եղելութեան ,
Բակերտ էին արարչութեան ,
Եւ փըրկական տնօրէնութեան ։

Սիրողք բանի խոհեմութեան ,
Զմիտըս սորին տուք քըննութեան.
Եւ ճաշակէք համ բարութեան
Քան ըղձեղու յոյժ քաղցրութեան:
Սակաւ է սա քանակութեամբ ,
Եւ յոգնախուռն ունակութեամբ ,
Ի յիմաստնոց ծանօթութեան
Որք միտ դնեն վերծանութեան :
Էին Բանի բան գոհութեան
Մատուցանեմք փառաւորութ̅ե :
Զներողէս յիշել մի՛ դանդաղիք ,
Որ զուարճանայքըդ յայսոսիկ .
Տուք փոխարէն՝ զոր և պարտիք ,
Զաղօթըս սուրբս , որ պաղատիք :

# ՏԵԱՌՆ ՆԵՐՍԵՍԻ
# ԱՍԱՑԵԱԼ
# ԲԱՆ ՄԱՂԹԱՆԱՑ

ԱՍՏՈՒԱԾ անեղ անհասական,
Հայր գըթութէց, ինձ ողորմեա:
Բանդ 'ի Հօրէ անճառ ծընունդ,
Որ մարմնացար, 'ի յիս գըթա:
Գոլեալ Հոգիդ սուրբ Աստուծոյ,
Որ նորոգօղդ ես, ողորմեա:
Դաւանողիս աստուածութեանդ,
Երրորդութիւն սուրբ, յիս գըթա:
Երկնաւորաց և անմահից
Բանիւ ստեղծող, ինձ ողորմեա.
Զազգըս մարդկան յօրինեցեր
Ձեռամբ պատկեր քո, յիս գըթա:
Էրանուհւոյ Աստուածածնին
Սուրբ ծընընդեամբն ինձ ողորմեա:
Ընտրեալ մեծի Կարապետին
Մըկըրտութեամբն 'ի յիս գըթա:
Թագաւորացն ընդ քեզ յերկինս
Առաքելոցն, ինձ ողորմեա:
Ժառանգողացն ըղկեանսդ անճառ
Աղաչանօքն 'ի յիս գըթա:

Իւրաքանչիւր քոց սիրողաց
Մաքուր հայցմամբքն ինձ ողորմեա։
Լուսապարակ քոց վկայից
Հեղմամբ արեամբքն յիս գըթա։
Խաչակցելոցն ընդ քեզ հոգւով
Գաղստանօքն ինձ ողորմեա։
Ծարաւելոցն յաղբեւր սիրոյդ
Արբօ և օգնիս, և յիս գըթա։
Կենարարիդ չարչարանօքն
Որ յաղագս իմ, ինձ ողորմեա։
Հարմամբ ծնօտի քո ապտակին
Ի ծառայէն՝ և յիս գըթա։
Ձաղանօքն 'ի զինուորաց
Եւ եղեգամբքն՝ ինձ ողորմեա։
Ղօղանջանօքն հայհոյութեան
Եւ վասըն թքոյն՝ 'ի յիս գըթա։
Ճըշմարտապէս խաչելութեամբդ,
Անպալ ռականդ, ինձ ողորմեա։
Մածմամբ մարմնոյդ 'ի փայտ խաչին
Սուրբ բեւեռօքն, 'ի յիս գըթա։
Յանպարտական կողեդ հոսման
Արեամբ և ջրովըն զիս լուա,
Նորոգելով 'ի հնութենէ
Կողիւ պարտեալ հինն Ադամայ։
Շարժմամբ ահիւ երկրի հիմանց
Անշընչութեամբ քո, ողորմեա։

Որ զմարդկային հոգիդ յաւանդ
Ետուր առ Հայր քո, յիս գըթա։
Զարչարանօքն անսոլգաբար
Համբերելով, ինձ ողորմեա։
Պսակաւ փըշոցն ըզփուշ մեղաց
Բարձեր 'ի մէնջ, և յիս գըթա։
Ջամբեալ վասն իմ 'ի ծարաւին
Զդառըն լեղին, ինձ ողորմեա։
Ոետին քաղցու մեզ արբուցեր
Մարմնով ու արեամբըդ, յիս գըթա։
Սիրով եգար և արտասուօք
Ի տապանին, ինձ ողորմեա։
Վերաբերեր քո յարութեամբդ
Զմարդիկ 'ի կեանս, և յիս գըթա։
Տէր, ըզքնութիւնս արձակեցեր
Եւ արձակես այժմ, ողորմեա։
Բոտեա զմարմինս իմ ընդ հոգւոյս
Ի գալըստեան քո, յիս գըթա։
Ցընծացո՛յ բերկրեալ յուսով
Քոյին ծնընդեամբդ, ինձ ողորմեա։
Իւսմամբ փառաց սըրսակելոց
Աղաչանօքն 'ի յիս գըթա։
Փըրկիչ, յորժամ գայցես փառօք,
Զիս նորոգեա և ողորմեա։
Քեզ գոհութիւն երգեմք ընդ Հօր
Եւ ընդ Հոգւոյդ՝ այժմ յարակայ։

# ՏԵԱՌՆ ՆԵՐՍԵՍԻ

# ԲԱՆ ՆԵՐՏԱՂԱԿԱՆ

# Ի ԽՐԱՏ

# ՈԳԻՈՅ ՀԱՄԱՅՆԻՑ

# Ի ԴԻՄԱՑ

# ՄԵՐՈՅԻՆ ՏԱՌԻՑ

# ՏԱՆՑ

# ՅԻՒՐԱՔԱՆՉԻՒՐՍՆ

# ՔԱՌԻՑ

## ԱՅԲՆ

— *Աստուծոյ պէտք մերձենալ,*
*Խրատք լինել, թէ հաւատս.*
*Տեսող գործոյ ըղձիւ կենս,*
*Լսող բանից ծանիր ըղձիւ :*

Գաղտնիք սրտից յաչաց Նորա
Չէն 'ի ծածուկ, այլ յայտնի կայ.
Թէ այս մտօք նայիս 'ի Նա,
Անմեղ մնաս միշտ յարակայ:

## ԲԵՆԸՆ

—— բանից, ասէ, չարաց
Սանձեա զլեզուդ վասն ընկերաց.
Ի բերանոյ քո հան 'ի բաց
Զխօսս աղտեղիս Նախատանաց:
Նա և 'ի բան բամբասանաց՝
Դիր պահապան քոյոց շրթանց,
Զի ապրեսցիս դու 'ի մեղաց
Եւ յանաչառ դատաստանաց:

## ԳԻՄԸՆ

—— գըրովք աստուածային
Ուսուցանէ խրատել լեզուին.
Բանք քո նոքօք յարդարեսցին,
Գործքըդ նոցին հետեւեսցին:
Եւ մի՛ ընդդէմ կար հրամանին,
Այլ հնազանդեաց պատուիրանին.
Եւ ոտըք քո ոչ մոլորին
Ի ճըշմարիտ ճանապարհին:

## ԴԻԱՅՆ

—— դատողին երկնաւորի
Խրատէ ըղքեզ սպասել յերկրի.

Եւ 'ի մարմնոյ քո վախճանի ,
Հոգւոյդ կոչմանըն տէրունի
Մնալով լինել յանկարծակի ,
Նըման գողոյ 'ի գիշերի ․
Զի որ սոցին ակըն կալցի ,
Նա 'ի մեղաց ոչ յաղթեսցի ։

ԵՁՆ

Երգէ զայս միշտ յականջըս քոյ ,
Տալ ըղձհամօր պարտուցըն քոյ ․
Որպէս մանկունք ուսման գըրոյ ,
Ըզտախտակին համար տալոյ ․
Կամ որք վեհից տընտեսք գործոյ ,
Առ 'ի զհամար պահանջելոյ ․
Քանզի տընտես ես քո հոգւոյ ,
Եւ պարգեւացն աստուածայնոյ ։

ԶԱՅՆ

—— զուգակից սըմին ծանիր ,
Որ միշտ ասէ՝ թէ զօրացիր ․
Ի խոր քընոյ մահու զարթիր ,
Եւ 'ի յանձին քում զգաստացիր ։
Ցանցաւորացըս մի՛ խաբիր ,
Ցանանց կենացըն մի՛ զըրկիր ․
Զարդարութիւն այժմ ըզգեցիր ,
Եւ անդ փառօք պայծառացիր ։

ԷՆ

Էից լուսոյն հանուրց ծագող
Խրատէ լինել միշտ հայեցող.
Ըղձեզս, ասէ, ատեա և թող,
Եւ սրբութեանցըն լեր սիրող:
Զի որպէս չէ խաւար կըրող
Պայծառ լուսոյ և նըմանող,
Այսպէս հոգի՝ չարեաց գործող՝
Մաքուր լուսոյն չէ ընդունող:

ԸԹՆ

—— ընկերի քո պատահել
Բարեաց իրաց ինչ յաջողել,
Խրատէ ըզքեզ՝ մի՛ յաչաղել,
Մի՛ մախանօք ըզքեզ այրել.
Այլ թէ կամիս, ասէ, հանգչել
Եւ Աստուծոյ հաճոյ լինել,
Դու գոհութիւն տուողին յաւել,
Այնմ՝ որ գիտէ հաւասարել:

ԹՈՑՆ

—— թագ, ասէ, արքունական
Կամ պետութիւն իշխանական
Թէ ընկալցիս դու ըղձարդական,
Մի՛ համարիր քեզ սեփհական.
Այլ ըստ հարանց քոց, որ անցան,
Ծանիր ըզքեզ ծաղկի նըման.

Եւ մի՛ լինիր ամբարտաւան ,
Այլ քաղցր և հեզ խոնարհական :

## ԺԷ՛Ն

Ժամանակեայ զկեանքս անցաւոր
Կարծել չըլլայ քեզ փառաւոր .
Զի թէ 'ի կառս ես թագաւոր
Եւ կամ իշխան յոյժ զօրաւոր ,
Հողոյ ծընունդ ես հիւթաւոր ,
Յոր դառնալոց ես բնակաւոր .
Այլում գործոյ կաս գործաւոր ,
Յորմէ փոխիս ոչ կամաւոր :

## ԻՆՆ

Ի ցասմանէ դու 'ի բաց լեր ,
Եւ մի՛ ըզքեզ, ասէ, այրեր .
Եւ մի՛ ըզքանըս թունաբեր
Առ 'ի սըրտէդ յառաջ բերեր :
Մի՛ անողորմըն զոք տանջեր ,
Մի՛ անիրաւ իրըս գործեր ,
Զի մի՛ կրեսցես զոր ասաց տէր ,
Զտանջելըն 'ի հուրըն մահաբեր :

## ԼԻՒՆՐՆ

—— լըսել վարդապետէ ,
Ի ցաւագին բարկութենէն ,
Եւ յանհանդիստ սըրտնութենէ
Հանգչել, ասէ, 'ի չար ախտէն :

Ընկալ ըղձոյն և 'ի տեառնէն ,
Ցերանութեանց հեզոց բանէն .
Ծանիր թէ մերձ է որ գտանէն ,
Հաստուցանել քեզ փոխարէն :

ԽԷՆ

Խորհրդակից բարի եղեալ ,
Մերժէ զխորհուրդ խորամանգեալ·
Լիցի 'ի քէն նա հեռացեալ ,
Որ յԱստուծոյ է ատեցեալ :
Ճշմարտութեան լեր հետեւեալ ,
Ուղիղ խօսից սիրող գտեալ ,
Մինչ զի և բանս լոկ ասացեալ
Լինել երդման գերազանցեալ :

ԾԱՅՆ

Ծանուցանէ յոյժ ծանրագոյն
Ըզբան երդման ուրանալոյն .
Զի թէ փակեաց աչքն 'ի յայսոյն ,
Եւ 'ի չարէն ասաց ըղձոյն ,
Զի՞նչ առնիցեն 'ի յերդնըլոյն
Մինչ 'ի յանուն տեառն Աստուծոյն
Եւ այն ստութեամբ յոլովագոյն ,
Որոյ մեղաց չիք վերագոյն :

ԿԵՆԸՆ

—— կենաց զանցաւորէ
Կըրկին դըրամբք քաղաք ասէ .

Ընդ մին մըտեր մերկ յարգանդէ,
Ընդ մեւսն ելցես մերկ յաշխարհէ ։
Արդ զի՞նչ օգտիս դու 'ի շահէ
Ի քաղաքիս այս վաճառէ,
Ցորժամ 'ի գըրուանըն կողոպտէ
Մահն, որ կենաց Թըշնամին է ։

## ՀՈՑՆ

Հայեաց, ասէ, յոյժ այս բանիս,
Եւ մի՛ սըաղըր միշտ 'ի սնոտիս.
Մի՛ յապաղեր դու 'ի չարիս,
Այլ փոփոխեա փոյթ 'ի բարիս ։
Զի յորժամ ոչ գիտես, կոչիս
Եւ ըստ գործոց քոց պահանջիս.
Եւ Թէ չունիս պատասխանիս,
Ցանկըյս խաւար բանդ արկանիս ։

## ՁԱՅՆ

Ձիդ ըղքեզ օրինակով
Զմարմինդ 'ի կառըս լըծելով,
Եւ կառավար ուղղէչ սանձով
Զհոգիդ, ասէ, անդ նըստելով.
Թէ անմոլար ճանապարհով
Գընաս յօրէնս տեառըն սիրով,
Ցայնժամ յառնելըն քո մարմնով
'Դ առաջ Նորա Թըռչիս ամբով ։

ԴԼԱՏՆ

—— զէկ առնուլ քեզէն ճարտար
Նաւել յայս ծով տայ հրմտաբար.
Ասէ, յուզել ալեացն յերկար՝
Ընդդէմ կացցես հզօրաբար :
Վարեա զհոգւոյդ նաւ անդադար,
Հոգւոյն թեւովք առ 'ի հանճար.
Զի հասուսցես անդորրաբար
Յանքոյթ տեղին խաղաղարար :

ԾԷՆ

—— Ճառագայթ առ 'ի սըրտէդ,
Ասէ, ծագեա լուսոյ հանդէտ.
Զբանըս բարխս հեղ 'ի լեզուէդ,
Զողորմութիւն 'ի ձեռանէդ :
Բայց յարարչէն քեզ պարգեւէդ
Մի՛ վատթարաց վատներ յանպէտ.
Թէ ոչ, վըճար տաս 'ի յանձնէդ,
Յորժամ խընդրէ 'ի յառողէդ :

ՄԵՆՆ

Մերժել 'ի բաց, ասէ, 'ի քէն
Զախտըս մեղաց՝ որ 'ի չարէն.
Զպոռնըկականն և զայլն ամէն,
Որով գաղտնի նետիւք խոցէն :
Յայլ կապարճաց առնու իւր զէն,
Ի գեղեցիկ տեսեալ դիմէն.

Եւ հարկանէ զաչըս քեզէն ,
Ի չարաչար հայեցմանէն :

## ՅԻՆ

Յինէն , ասէ , մանուկ , ընկալ
Զայս բան խրրատ՝ յաշխարհի սգալ.
Ունայնութեանց ըզքեզ մի՛ տալ,
Սնոտի խաղօք անմըտանալ.
Այլ յիմաստնոց դըրունըս գնալ,
Եւ յուսմանէ ոչ ձանձրանալ,
Զի մի՛ անձին տաս զըղջանալ,
Յորժամ հընար չէ յետ դառնալ:

## ՆՈՒՆ

Նորոգ , ասէ , երիտասարդ ,
Զիմաստութիւն զգեցիր քեզ զարդ.
Մի՛ զպատմուճանըս բազմազարդ ,
Որ ըզտըղայս առնէ զըւարթ .
Այլ ըզհանճար ծերոց և զխրատ ,
Որով յայտնի ճանաչիս մարդ .
Քանզի յիմարն է հօտեալ յարդ ,
Իսկ իմաստունն որպէս ըզվարդ :

## ՇԱՅՆ

——— շատ , ասէ , ով ծերունիդ
Հնացեալ ալեօք, կալ յաշխարհիդ.
Ժամ է դառնալ այժմ 'ի հոգիդ ,
Մինչ դեռ 'ի ձեռս է քեզ բարիդ :

*Ծառայեցեր մարմնոյ դերիդ,*
*Մինչեւ ՚ի յափրն տապանիդ.*
*Տուր ՚ի մնացեալ ժամանակիդ,*
*Մաօն ինչ հոգւոյդ բանականիդ։*

## ՈՅՆ

*Ուսուցանէ զքեզ դիւրութեամբ՝*
*Եւ սաստ և անդ լի բարութեամբ,*
*Սիրել զԱստուած ճշմարտութբ.*
*Եւ զքո ընկերըն ստուգութեամբ։*
*Մերժել ըղչարն ատելութեամբ,*
*Գրկել զբարին սիրելութեամբ.*
*Պահել զհոգի քո սըրբութեամբ*
*Եւ անհըպարտ խոնարհութեամբ։*

## ՉԱՅՆ

*—— չար աւէ զագահութիւն,*
*Զի շատ մեղաց է ծնելութիւն.*
*Զի ՚ի նմանէ է սպանութիւն,*
*Նա է աւար և գերութիւն.*
*Անտի սկըսեալ է գողութիւն*
*Եւ անիրաւ դատողութիւն.*
*Ի յայնմանէ վաշխառութիւն*
*Եւ ըզմիմեանս ատելութիւն։*

## ՊԻՆ

*—— պատուիրէ՝ կալ անքամբաս*
*Ի յայս չարեաց, յորում Թէ կաս.*

Զի մի՛ հոգւոյդ առնես վընաս
Ի ձախակողմըն կալով դաս ·
Եւ մի՛ նախատ 'ի կեանըս յայս ,
Ցորում զարփանն ունիք ոչ տաս :
Տուր զանցաւորդ՝ զոր ըստանաս ,
Եւ առ զանանցըն՝ յոր գըտնաս :

## ԶԻՆ

Զընջել զհոգիդ , ասէ , Ջըրովք
Ցախտից մեղաց՝ ջերմ արտասուօք ·
Զի լաւ է լալ աստէն կամօք
Եւ անդ ցընծալ մեծաւ փառօք :
Քան աստ խընդալ պէսպէս մեղօք
Եւ անդ կըրճտել խիստ ատամօք ·
Եւ այս սակաւ ժամանակօք ,
Եւ այն յաւէտ անթիւ ամօք :

## ՌԱՑՆ

—— ըռամիկ արանց հանուրց .
Ոչ նախանձել , խրատէ , փառուց ·
Եւ գինարբուաց երգոց պարուց
Մի՛ հաղորդել լըկտի բարուց :
Զի փոխանակ աստէն ծաղուց ,
Կոծումն և լաց է անդ նոցունց
Ընդ մեծատանն այնմիկ դասուց ,
Որ փափաքէր կաթիլ մի ջրուց :

ՍԷՆ

Սէր աշխարհիս այս ախտաշարժ
Առել խրատէ զաղտեղի գարշ.
Եւ թէ մեղաց մի՛ լինիր բաժ,
Ախտից տուամբ ձգելով'ի քարշ:
Զի թէ մարմինդ աստացէ վաշ,
Հոգիդ հիւանդ լինի և հաշ.
Թէ այժմ ուրախ առնէ և հրաշ,
Այլ յետոյ տայ քեզ մահու ճաշ:

ՎԵՒՆ

——— վարք, ասէ, ախիղծ անառակ
Տեառըն կամացն է յոյժ ներհակ.
Եւ որ'ի յայս սէր է համակ,
Է Աստուծոյ սիրոյն դիմակ:
Արդ մի՛ ըմբեր խիստ ախորժակ
Զանցաւորիս սիրոյ բաժակ.
Այլ փոփոխեա զմըրրատեսակ
Ցանապականն սէրըն յըստակ:

ՏԻՒՆԸՆ

——— տերանց և իշխանաց
Խրատ ընծայէ իմաստութեանց՝
Թէ մի՛ սիրէք ժողովել գանձ,
Այլ ըղժողով բարի ւրանց.
Ըզմըտերիմսըն տէրութեանց
Եւ զհետեւողսըն քաղջութեանց,

Որք վասըն ձեր 'ի մահ անձանց
Կամաւ դիմեն որպէս 'ի գանձ ։

## ՐԷՆ

——— տառ չէ՛ բանի սկըսուած ,
Այլ ակամայ բըռնադըօսած .
Բայց դու զակամըջդ առ ընթերցուած,
Թէ զի՛նչ խօսի՝ ըզմըտաւ ած ։
Սիրեա բոլոր սըրտիւ զԱստուած,
Եւ օրինաց Նորա խնամ՛ ած .
Զհոգիդ պահեա յախտից մաքրած,
Եւ 'ի մեղաց միշտ լըւացած ։

## ՑՈՅՆ

——— ցուցանէ մեւս բան խըրատ ,
Որ 'ի չարեաց առնէ ազատ .
Մի՛ նախանձիր բընաւ ընդ մարդ ,
Եւ մի՛ նենգեր զընկեր քո գաղտ ։
Զի Աստուծոյ ծածկեալն է յայտ,
Եւ հատուսցէ փոխան քեզ դատ ,
Կամ 'ի յաստի կեանքս անընդհատ,
Կամ 'ի վերջին օրըն հաստատ ։

## ԻՒԻՆՆ

——— յօդական միայն է տառ ,
Բայց զօր յօդէ քեզ խըրատ առ .
Ցորժամ մեղաց դառըն պատառ
Քեզ երեւի քաղցր և դիւրառ ,

Նախ քան զուտել նորա 'ի սպառ՝
Ցիշեա զամօթն և ըզպատկառ ,
Եւ չիջանի բոցն՝ որ 'ի վառ ,
Եւ զգօնանայ միտքըդ յամառ :

ՓԻՒՐԸՆ

——— փառաց է քեզ քարոզ ,
Այս խրատական բանից տալոյս .
Ում թէ սըրտիւ լինիս 'ի յոյզ
Եւ տաս աճել իբրեւ ըզքոյս ,
Զհոգիդ մաքուր պահէ և լոյս
Ի յաշխարհիս խաւարելոյս .
Եւ հանդերձեալ կենաց տայ յոյս ,
Գըտանէ առնուլ քեզ ընդ հաճոյս :

ՔԷՆ

Քեզ կատարումըն յայս տառից՝
Տայ անկն ունել աւուրն ելից .
Ոչ ընդ սիրոյ սատարակայից
Միշտ բնակեալ անլոյծ կապից ,
Այլ ազատիլ յայժմուս ախտից ,
Ընդ Քրիստոսի գոլ խաչակից .
Լինել սըրբոց քաղաքակից ,
Եւ անմարմնոցըն ձայնակից :

ՆՈՐՈԳ բանիս այսմիկ հանդէս ,
Գումարելոց սաստ տիրապէս ,
Երգել տաղիւ հոմերապէս ,
Խառնեալ'ի հիւթըս հոգեպէս :
Բամբեալ'ի քերըս տարրապէս ,
Զանազանեալ տառիւ յանգէս .
Սա ոչ գիտնոց՝ այլ տղայապէս
Մանկանց տրւաւ նուսխայապէս .
Է թագուցեալ ընդ մարմնապէս
Երից յիմնից խորհրդապէս
Սուրբ հոգեւոր բանըս պէսպէս ,
Որոց նըպաստ եղեւ Ներսէս :

ՏԵԱՌՆ ՆԵՐՍԻՍԻ

ԽՐԱՏ

ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆԱՑ ՄԱՆԿԱՆՑ

Ի ԴԻՄԱՑ

ԱՅԲԵԻԲԵՆԻՑ ՏԱՌԻՑ

ՈՏԱՆԱՒՈՐ ՏԱՂԻՒ

ՉԱՓՈՑ

ԱՅԲՆ

——— *առաջին ըղձ քեզ, որդեայ,*
*Հանէ յիմաստըն գերակայ.*
*Երրորդութեանըն մերձակայ*
*Լինիս երիւք սատեղամբք նորա ։*

ԲԵՆՆ

*Բնութիւն բանի 'ի քեզ բըղխէ,*
*կաթն իմաստից արբուցանէ.*

Ձեւոմն իւրով վարդապետէ ,
Ըզխոնարհելն Որդւոյ պատմէ ։

## ԳԻՄԸՆ

—— գանձէ քեզ բեւր բարի ,
Գրելով զիմաստս 'ի տախտակն .
Զնա արկ 'ի քոյդ պարանոցի ,
Որ պատուական է քան զոսկի ։

## ԴԱՑՆ

Դուռըն բանայ քեզ զխորութեան
Ըզտաճարին իմաստութեան .
Բախեա և մուտ արիութեամբ ,
Մի՛ արտաքոյ մնար հեղգութեամբ ։

## ԵՉՆ

Երկնաւորացըն տայ ցանկալ ,
Ի յերկրայնոցս 'ի բաց դառնալ ,
Ուսմամբ գըրոց զըւարճանալ ,
Իմաստութեամբ ուրախանալ ։

## ԶԱՑՆ

Զարթուցանէ ըզքեզ , մանուկ ,
Ձայնիւ հընչմամբ որպէս թըմբուկ .
Մի՛ յուսմանէ լինիր տաղտուկ ,
Զի մի՛ տաս վայ անձինդ յատուկ ։

ԷՆ

Էրանութեանց նախնի գոլով՝
Զքեզ հրաւիրէ դաւթեան երգով,
Առ 'ի չարեաց հեռանալով
Խորհել յօրէնս տեառըն սիրով ։

ԸԹՆ

Ընդ քեզ խօսի զայս բան խըրատ ,
Ի յանխրատիցըն կալ 'ի զատ ;
Զի մի՛ տընկեն զինքեանցն արատ
Ի սըրտի քում որպէս զարմատ ։

ԹՈՑՆ

Թէ միտ դընես , ասէ , բանիցն
Իմաստութեան Սողոմոնին ,
Ոչ կարօտես իմում խրատին ,
Քանզի նովաւ խօսի Հոգին ։

ԺԷՆ

Ժուժկալ լինել , ասէ , յուսումն ,
Թէ և ապտակ առնուս յարբումն ·
Հայեաց յոսկին՝ որ 'ի քըրայումն ,
Զի ծեծելով առնու զմաքրումն ։

ԻՆՆ

Ի նանրութեանց , ասէ , դարձիր
Եւ ուսո խաղօք մի՛ ըզբաղիր ·

'Դ անմիտ մանկանց մի՛ նախանձիր,
Այլ իմաստնոց նըմանեցիր ։

ԼԻԻՆ

—— լուր , ասէ , հօր քո խրատու .
Լեր օրինաց մօր քո հըլու ։
Վարդապետին հնազանդ կաց դու ,
Ցորմէ շահիս բան լուսատու ։

ԽԷՆ

Խրատէ խաղալ ընդ սուրբ գըրոց ,
Մի՛ ընդ անմիտըն տըղայոց .
Եւ ընդ բանից մեծ իմաստնոց ,
Փոխան վիժմանցն ըղձար իշոց ։

ԾԱՅՆ

Ծովու նըման , ասէ , զիմաստ ,
Որ 'ի յերկնից իջեալ է աստ .
Բաց ըղհոգւոյ քո առագաստ ,
Ծըծեալ մըտօքըդ լեր պատրաստ ։

ԿԵՆՆ

Կամիլ միայն թէ առնուցուս
Ի ջրոյն կենաց որպէս մեղուս ,
Ոչ ծարաւիս , ասէ , յայժմուս .
Այլ և զետոց բըխես առուս ։

ՀՈՅՆ

Հայեաց, աստ, մանուկ, և տես
Զի՛նչ 'ի տախտակըդ գըծագրես.
Զի Մովսէսի դու նըմանես,
Զգիրս Աստուծոյ կըրկին գըրես:

ՁԱՅՆ

Ձայնէ առ քեզ, մանուկ ուշիմ,
Թէ ականջօք լուր ըզբանս իմ.
Ուսման գըրոց լեր մըտերիմ,
Եւ բարձրանաս դու 'ի յերկին:

ՂԱՏՆ

Ղամբար վառէ քեզ լուսաւոր,
Եթէ լցես մարդ մըտաւոր.
Կըրթեա յիմաստըս հոգեւոր,
Որով լինիս դու երկնաւոր:

ՃԻՆ

—— Ճանաչել տայ ըզհանճար,
Ըստ Առակաց բանին յարմար.
Որով խրատիս լինել արդար
Եւ Աստուծոյ հաճոյարար:

ՄԵՆՆ

Մատուցանէ քեզ օրինակ
Զորս 'ի մանկանց բարեաց ունակ,

ԸզԴանիէլ մանուկ յըստակ ,
Որ և ցանկայր նըմա հրեշտակ ։

ՅԻՆ

Ցիշեա , ասէ , զմանկութեան երիս ,
Զաշակերտեալս Դանիէլիս ·
Զի թէ սոցա նըման մաքրիս ,
Ի հրոյ մեղաց ոչ այրեսցիս ։

ՆՈՒՆ

Նայեաց և տես , ասէ , զՅովսէփ
Ըզհրեշտակաց նըմանն 'ի դէպ ·
Պահեա և դու զքեզ անվըրէպ ,
Ցեգիպտուհւոյն ախտից հանդէպ ։

ՇԱՅՆ

Շնորհաց թէ ես , ասէ , սիրող ,
Դու իմաստնոց լեր հետեւող ·
Որք առ իմաստըն փափագող ,
Մինչեւ 'ի մահ եղեն ճգնող ։

ՈՅՆ

Ո՛վ դու , ասէ , մանուկդ 'ի բոյս ,
Նըման առ քեզ զԵղիսէոս ,
Որ 'ի մաշկեակըն հըպելոյս ·
Եթող ըզսէր ըստորնայնոյս ։

ՉԱՅՆ

Չարչարանաց, ասէ, համբեր.
Պանդըխտութեն ժուժկալ դու լեր։
Թէ հարկանիս՝ մի՛ երկմըտեր
Վասն իմաստիցըն շահաբեր։

ՊԷՆ

—— պատուիրէ պարկեշտ լինել,
Մի՛ զորովայնըդ խըճողել,
Մի՛ ըզգինին ըմպաւ սիրել,
Մի՛ տարաժամ զքներանդ յածել։

ՋԷՆ

Ջանիւ հասցես, ասէ, շնորհաց.
Մի՛ ծոյլ կենար և գեգերած.
Մի՛ սիրեր դըրուն դանդաղանաց,
Մի՛ արթնութիւն ըզգաղանաց։

ՌԱՅՆ

Ռահիւ հանէ զքեզ 'ի բարձունս,
Գըտնալ հոգւով ընդ իմաստունս.
Թէ զանձըն քո տաս 'ի ճըգունս,
Ելցես յիմաստըս գերաքունս։

ՍԷՆ

Սիրել խրատէ ըզնիւթ ուսման,
Զխոհեմութիւն ասէմ և զջան,

Այլ և զխորհուրդըս մաքրական ,
Որով հոգիքըն զօրանան ։

## ՎԵՒՆ

Վարք զաշխարհիս այս ծանուցեալ,
Թէ է ներհակ ուսման եղեալ.
Զի որ ախտիւ զհոգին զանգեալ,
Նա՛ 'ի շնորհաց Հոգւոյն զատեալ ։

## ՏԻՒՆՆ

Տայ քեզ խըրատ բան հոգեւոր ,
Պահել զհոգւոյդ քո զգուշաւոր .
Մի՛ յոգք հըպել արատաւոր ,
Եւ մի՛ ունել չար մերձաւոր ։

## ՐԷՆ

Րաբունաբար վարդապետէ ,
Քեզ ըզբարիս ուսուցանէ .
Հնազանդ լինել ծերոց , ասէ ,
Որպէս օրէնըն պահանջէ ։

## ՑՈՑՆ

Ցածուն , ասէ , խոնարհամիտ
Լեր առ ընկերն և բարեմիտ .
Եւ ոչ հըպարտ բարուք և բիրտ ,
Թէ և շընորհ ունիս յոգիդ ։

ՒԻՒՆ
Ւիւսէ ընդ այս բանըս յարմար,
Մի՛ շատ խօսել և վայրապար,
Մի՛ ծիծաղել անկարգաբար,
Մի՛ վիճաբան լինել և չար:

ՓԻՒՐՆ
Փութա, ասէ, վարժել անգուլ,
Եւ 'ի շնորհաց չլինիս ամուլ.
Եւ թէ մըտօք ես բութ և գուլ,
Ջանիւ զուսումըն կեր և կուլ:

ՔԷՆ
Քեզ համարել տայ բարեկամ,
Որք վասն ուսման հարուն քեզ գան.
Քանզի ապտակ և գաւազան
Ցետոյ բազում փառըս քեզ տան:

ՆԱԽԱՆՁԵԼԻ մարդկան լինիս,
Թէ զվերագրեալդ 'ի միտ ունիս.
Եկ բեր, մանուկ, զունկըն քո յիս,
Լուր և անսա իմում բանիս:
Րաբուն լինիմ բըղխմամբ սըրտիս,
Ուսուցանել քեզ ըղձարիս.
Սիրեա զուսումն՝ որով պատուիս
Ի յերկնայնոցն և 'ի յերկրիս:

Երանելի և մեծ լինիս ,
Եթէ զերկեւղ տեառն ուսանիս .
Սիրտ 'ի բաց լեր աշխարհէս :
Եւ յԱստուծոյ սէրըն վառիս :
Ինձ լուր , որդեակ , հօր քո խրատիս ,
Եւ յուսմանէ մի' ծուլասցիս .
Էթէ 'ի յայս սէր բորբոքիս ,
Անանց կենաց ժառանգ լինիս :

# ՏԵԱՌՆ ՆԵՐՍԵՍԻ

## Ի ՍՈՂՈՄՈՆ ԱՐՔԱՅՆ

ՍԱ մարգարէ աստուածաբան,
Եւ իմաստուն յոյժ խոհական.
Սա օրինակ է աննըման
Սողոմոնին ճըշմարտութեան.
Սա 'ի հօրէն իւր սեփհական
Առնու ըղթագն և զգաւազան.
Սապէս և տէրն յիւր հայրական
Նըստեալ յաթոռ աստուածական:
Ունի լինել այն թագաւոր
Երկուց կանանց նախ դատաւոր,
Որ վըճըռաւ վաղակաւոր
Եցոյց զարեանըն մերձաւոր.
Որպէս և տէրն իմ դատաւոր
Խաչիւ զիշխանըն բըռնաւոր.
Որով կըրկին գայ ահաւոր
Դատել ըզսեաւըս բանաւոր:
Ղամբարափայլ շինեաց տաճար
Այս Սողոմոն խորանայար.
Լուր երկաթոյ չհընչեալ 'ի քար,
Լոյս օրինացն 'ի նմա բնաբար:

Լուսագոյն յոյժ քան զայս տաճար
Զառ 'ի Կուսէն մարմին արար ·
Լերանց նըման անշարժաբար
Զեկեղեցւոյ կանգնեալ կամար ։
Ունել ունէր սա սըխրալի
Խաղաղութեան անուն բարի ,
Որով յաթոռ թագմեալ նըստի
ՅԵրուսաղէմն՝ որ յաշխարհի ։
Ուստի և տէրըն մեր լինի
Խաղաղութիւն որոց յերկրի ·
Ոչ մարմնական՝ որպէս ասի ,
Այլ անմարմնոց ուորք 'ի մարմնի ։
Մեծափափաք տենչմամբ լըցաւ
Սովաւ դըշխոյն՝ որ 'ի հարաւ ·
Մինչ զի ծագաց յերկրէ չոգաւ
Յիմաստութեան սորա համբաւ ։
Մեծ քան ըզսա տէրն ասացաւ ,
Որով զՀըրեայսըն դատեցաւ ·
Միոյն փոխան ժողովս անբաւ
Առ տէրըն մեր հաւաքեցաւ ։
Ոչ համեմատ երկրածընաց
Բանն Աստուծոյ ըզնա ասաց ,
Ոչ 'ի նախնեաց Թագաւորաց
Իոչ յապագայց բըռնաւորաց ,
Ոչ մարմնական միայն փառաց
Կամ հեշտութեանց անցաւորաց ։

Ունի զիմաստըս գերապանծ՝
Զոր վերագոյն ծանեաք բաղմաց ։
Նոյն ինձ ըղձանն Աստուած իմս
Անզուգական գոլով սըրմա ․
Նա 'ի յերկրէս էր ստորակայ ,
Տէրն 'ի յերկնից իջեալ արքայ ․
Նըրմա զիմաստըն չափով տայ ,
Զհօրն իւր ունի ինքն անխընայ ․
Նա կորուսեալ զոր ետ նըրմայ ,
Սա շնորհըս տայ որք յԱդամայ ։

## ՆՈՐԻՆ

## Ի ԺՈՂՈՎՈՂ ԱՆՈՒՆՆ

ՆՄԱՆԱԲԱՐ խորհուրդ խորին
Ցայտնէ և միւս անուն Նորին ․
Եկայք տեսցուք զխմաստ բանին ,
Ըզմիտս անուան Ժողովողին ։
Բանէ զհանճարըս սա 'ի մին
Զիմաստութեանց ըզպախտաանեին ,
Սիրով զորդիսն Իսրայէլին
Ժողովելով զամենեսին ։
Ի տեսանել զայս առ փրկչին ,
Ճըշմարտապէս Ժողովողին ․
Սարսուցելոցս ազդմամբ չարին
Բերող զորդիսն 'ի միասին ․
Ի խորանէ աստ ըստորին
ՅԵրուսաղէմ հանէ վերին ։
Բայց և ըզշնորհս աստուածային ,
Զոր բաժանէ մասունս Հոգին ,
Աշակերտաց շնորհէ Բանին ,
Նոքօք ծնընդոց աւազանին ։
Ներսէս ծառայ տեառնըդ վերջին ,
Հայցեմ յառատ շնորհէդ կըրկին

Սրբել՛ զհոգիս յախտից չարին ,
Տաճար առնել քեզ վէրբրատին ,
Նիդ միում , երրեակ անձին ,
Երգել միշտ փառս ընդ Սրովբէին ։

# ՆՈՐԻՆ
# ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ ԱՌԱԿԱՑ
# ՍՈՂՈՄՈՆԻ

ԱՍՏՈՒԱԾԵՂԷՆ հոգւոյն'ի ամԱ
Խաղաղութիւն անուն արքա
Բարբառեցաւ իմաստութեամԲ ,
Զորդիս խրատեաց ըզգօնութեամբ:
Գեղեցկագիր բանիւն 'ի կարԳ
Գըրեց եղեւ Հոգւոյն արագ .
Դաւթի որդի վեհ քան ըզմարԴ
Մարգարէին աստուածազարգ ։
Երրեակ տառիւ վերաբերԵ
Զմարդիկ յերկինըս մակագրե ։
Զգեստ արկանէ ողայոց բեհեԶ
Զհնազանդ լինելըն հօր և հեղ .
Էին շնորհօք պըսակ կապԷ ,
Մանեակ ոսկի ըզպարանոցէ .
Ըստ մանկական ախոց նոցաԸ ,
Նոյն և խոստումըն յարակայ ։
Թըմբրեալ զհոգիս առնէ զըւարԹ ,
Ցայս չանկանել գառն որոգայթ .
Ժամանակեայ զկենցաղըս յոյԺ
Ասէ , զանկեալսն 'ի սմա անբոյժ .

Իբրեւ երազ խոր գիշերի ,
  Կամ պղպղջակ ինչ կաթուածի ։
Լայն ճանապարհըն հետեւել
  Տանի 'ի գուբ խորըն ուանել ։
Խորասուզեալ· մանկանցն 'ի յուխ
  Խրատ ընծայէ սա հոգեբուխ ,
Ծածուկ բարեաւ խորհըրդազգած ,
  Միշտ 'ի յոգւոջ ունել զԱստուած ։
Կենարարին սպասել համակ ,
  Ոչ մոռանալ սուրբ զյիշատակ ·
Հայել վերջին օրն և 'ի մահ ,
  Ու'ի սպառնալեացն երկեւղ և ահ ·
Ձայնըն հաւուն յոյժ գերապանձ ,
  Որով գայցեն մեռեալքն 'ի դարձ ։
Ղօղեալ սարսեն դըստերքն 'ի խաղ ,
  Ողբան տըկար ձայնիւ նըւաղ ։
Ճառագայթից լուսոյն ճաճանճ ,
  Լուսին ուսաստեղք ճեմել զուարճ ,
Մեծին ծագմամբ չփայլեն այլում ,
  Մինչ փայլակէ լոյսն անպատում ։
Յայնժամ Թըռչին 'ի կառս ամբոյ
  Արդարք նըման խիտ մարախոյ ։
Նըշին ծաղկէ գուշակ գարնան ,
  Գունով պըճնին վըկայքն արեան ։
Շըրջին կոծով գնացողքըն գարշ ,
  Կապար մեղացն անկցին 'ի քարշ ։

Որք 'ի բարձունս հայլին լուսՈ ,
Ապշին դողան յահեղ բոցո ։
Չէ պիտանի արծաթըն յինՉ ,
Եւ ոչ ոսկւոյն գեղ զարդարիչ ·
Պարօղն անուոյ հասցէ 'ի վրէՊ ,
Պատկեր եւթանց դարուցս 'ի դէպ ։
Ջըրոյն կենաց սափորն 'ի մէնՋ ,
Այն խորտակի յաղբերըն մէջ ։
Ռահեալ սրբոցըն լուսաւաՌ ,
Գնացեն յերկինս 'ի տունն անճառ ։
Սա միջակըն է խրատ մարդոյՍ ,
Յորժամ' շարժի ախտիցըն բոյս ։
Վ'երադառնայ ներհուն բանոՎ ,
Երգէ զիմաստս երրորդ տառով ։
Տիրականի մասինս ազաՏ ,
Որ յերկրայնոց կըրեցս 'ի զատ ·
Րաբունական սիրոյն տիպաՐ
Կացուցանէ անմիջաբար ։
Ցընծալ բերկրիլ ընդ հրեշտակաՑ ,
Ի յառագաստն օրիորդաց ·
Ւիւսակ հարսին սիրով կիզոՒ ,
Մարգըրտայեա և լուսատու ։
Փեսայն ինջմամբ ցօղատարաՓ
Համբուրէ զտխալըն լուսոյ արփ'
Քոյր կոչելով, աստուածակաՔ
Յաննիւթական տարեալ քաղաք ։

# ԱՆԴՐԱԴԱՐՁՈՒԹԻՒՆ
## ՏԱՌԻՑ
## ՅԻՇԱՏԱԿԻ

ՔԱՂՑՐԱԳՈՒՆԻ այս բաղձանօՔ
Լըցեալ հոգիս մեռեալ մեղօք ,
Փափաքեցի սըրտատրոՓ
Ես որ ընաւից բարեաց ամփոփ :
Իւրաքանչիւր բան կենսատուԻ
Պէսպէս ցաւոց իմ լուսատու .
Ցընծամ հոգւով մինչ կարդացիՑ ,
Թէպէտ·սուրբ ոչ եմ 'ի յախտից :
Րոպէ զմարմինըս հոգեւոՐ ,
Զմիտըս գործէ բանից աղբեւր .
Տանել զանտեսն ամենագէՏ ,
Հայել յաննիւթ լոյսն որպէս դէտ :
Վասն այսորիկ տաժանելոՎ
Ձեռամբք ըզսա գըծագրելով ,
Ստացուած բարեաց երեւելոյՍ ,
Եւ յետ մահու յիշումն և յոյս :
Ռետին քաղցու կենաց բարբաՌ
Պըտղաբերէ անմահ այս ծառ .
Ջերմ արտասուօք ջուր կաթուածոՋ
Ի լըստղաց հոսէ յոգւոյ :

Պատառն վիրաց լինի և կաՊ
Թէ ոք սրտին լինի պարապ ։
ՉԷ Նախանձոտ սա ուսուցիՉ ,
Քանզի ձըրի է պարգեւիչ ․
Որ ոք մտաց ըղձերանՈ
Դուռըն բանայ այս հանճարոյ ,
ՇՆորհէ յառատ գանձուցն իւր ուՐ ,
Իւղով մարզէ 'ի հոտ անուշ ։
Նարդոս քըրքում զմուռ ընդ հալուէՆ
Կազմէ քաւիւք ղաւաքինեն ․
Յանդաստանէ բերեալ խընդոՑ
Մեռելութիւն ախտից մարմնոյ ,
ՄԵրժէ 'ի բաց զախտըս տարտամՄ ,
Գործով բարեաց առնէ փարթամ ։
Ճառից սորա լըսել պատշաՃ ,
Կենդանի ձայն հընչէ յականՃ ։
Ղամբար լուսոյ մըտաց նըւաՂ ,
Ներխեալ հոգւոց լինելով աղ ։
Ձիոց Նըման մեծատանց սանՁ ,
Եւ աղքատից յիմաստից՝ գանձ ։
Հաց հանճարոյ սորա անմաՀ ․
Եկայք կերայք , սովեալք 'ի մահ ։
Կացցէ 'ի սիրտըս ձեր յըստաԿ
Խառնարանին անմահ բաժակ ։
Ծարաւեցայ բանիցս անբիԾ ,
Եւ տարփացայ դըրոշմել 'ի գիծ ․

Խանդակաթեալ աստ միջամուխ ,
Հասի յաւարտ վախճան կանուխ ։
Լցի զըղձումն իմ անձկացեալ ,
Ի սոյն ժամու վարժմանս կըրթեալ ։
Ի ժամանակ յոյժ անբարի ,
Մինչ Գերմանիկն առեալ լինի ,
Ժամանեցին աշխարհի դոյժ ,
Քրիստոնէից գոլով անոյժ ։
Թուական Հայոց հինգ հարեւր ութ
Նա և ութսուն երկուք և ութ ։
Ընտրեալ գըլուխ գոյր հայկազնեն Ը
Գրիգորիոս պալհաւունին .
Նր 'ի յաթոռ լոյս ընդ լուսն ,
Շնորհօք լըցեալ 'ի Քրիստոսէ ։
Զարմ և ժառանգ հօրն աննիխաԶ ,
Համանըման և ոչ նըւազ .
Եղբայր երէց գոլ յարգանդէ
Իմ Ներսէսի՝ որ զայս ոգէ ։
Դարձեալ եղբարց երկուց ծընունդ ,
Ըստ աշխարհի գոլ բարեմնունդ .
Գովեալ Վասիլ իշխան առոյգ ,
Եւ զօրավար ընտրեալ 'ի կարգ .
Բայց և ծնողաց մեր հանդերձ քերԲ ,
Լիցի յիշումն յաւուրն աներբ ։
Աւարտ բանիս , տէր , ողորմեԱ
Առ հասարակ մեզ և նոցա ։

## ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ

## ՓԱՌՔ ԱՍՏՈՒԾՈՅ ԳԼԽՈՅՆ

ԲԱՆԻԴ ընդ Հօր էակցանն
Եւ Ճշմարիտ Սողոմոնին
Աջերասական բան ընծայի
Մատուցանեմ քեզ փարելի ։
Նոյն ըղձածուկ զիմ լըսելի ,
Զլըսօղ անձայնայտ հոգւոց ձայնի ,
Նոր Նորոգեա 'ի Նոյն Հոգւի ,
Ղըսել խորատու այսըր տուի ,
Եւ կատարել գործով բարի ,
Որով ըլինիմ երանելի ։
Բենակա՞ն լոյս բաղձալի
Եւ Ճառագայթ իմանալի ,
Սիրով քո հեղ յիմըս հոգւի
Ըղձէր բանին պատուիրանի ,
Երեւելով քան ըղձեղուի·
Ի քինն իմ քաղցր և բաղձալի ։
Սատեա յորչունց որ յիս ախտի ,
Եւ մըլթութեանցըն խաւարի ·
Ինձ ողորմեա քում ծառայի ,
Ցաւից գըրողի տէր Ներսիսի ։

## ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ
## ԵՐԳ ԵՐԳՈՑ ԳԼԽՈՑՆ

ՆՈՐՈԳԵԼՈՑՍ 'ի քէն, Յիսուս,
Եւ 'ի մեղաց խաւարելոյս,
Երբեմըն քեզ հարսնացելոյս
Եւ այժմ 'ի քէն այլացելոյս,
Բաբունաբար ծագեա յիս լոյս
Եւ աճեցո զբարեացըն բոյս,
Սիրել զփեսայդ իմոյ հոգւոյս
Ըստ պարագրեալ տառիս Երգոյս ։
Երանուհի հարսին լուսոյս
Լինել նըման սուրբ աղաւնոյս,
Սըրբել մաքուր ըստ նըմանոյս
Ի կըրից մեղաց ախտացելոյս ։
Ի քեզ հըպել ինձ մեռելոյս,
Եւ կեանս առնուլ տարագրելոյս .
Երեւելի լոյս կենցաղոյս
Յիմանալիդ փոխել 'ի լոյս ։

# ՏԵԱՌՆ
# ՆԵՐՍԵՍԻ
# ՏԱՂՔ

## ԱՒԵՏԵԱՑ

ԲԱՐԲԱՌ աւետեաց ձայնիւ
Գաբրիէլ գոչէր սրբուհւոյն ·
Առ քեզ առաքիմ, մաքուր,
Պատրաստել տեղի տէրունւոյն :
Նուագ ցնծութեան երգեմք ·
Ուրախ լեր, բերկրեալդ, տէր ընդ
քեզ :
Նորոգի երկիրս այսօր
Յառաջին մեղաց հնութենէն,
Երկինք երկնայնովք հանդերձ
Ընդ մարդկան տան փառք 'ի բար-
ձունս ·
Բանեալ միանան սիրով
Հաշտութեան Հօր ընդ արարածս :
Սարսեալ յողջունէն սուրբ Կոյսն՝
Հաստատէր բանիւ հրեշտակին,

## ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ

## ԵՐԳ ԵՐԳՈՑ ԳԼԽՈՑՆ

ՍՈՐՈԳԵԼՈՑՍ 'ի քէն, Յիսուս,
Եւ 'ի մեղաց խաւարելոյս,
Երբեմըն քեզ հարմնացելոյս
Եւ այժմ 'ի քէն այլացելոյս,
Բարունաբար ծագեա լիս լոյս
Եւ աճեցո զբարեացըն բոյս,
Սիրել զփեսայդ իմոյ հոգւոյս
Ըստ պարագրեալ տառիս Երգոյս:
Երանուհի հարսին լուսոյս
Լինել նըման սուրբ աղաւնոյս,
Սըրբել մաքուր ըստ նըմանոյս
Ի կրից մեղաց ախտացելոյս:
Ի քեզ հըպել ինձ մեռելոյս,
Եւ կեանս առնուլ տարագրելոյս.
Երեւելի յայս կենցաղոյս
Յիմանալիդ փոխել 'ի լոյս:

# ՏԵԱՌՆ ՆԵՐՍԵՍԻ ՏԱՂՔ

## ԱՒԵՏԵԱՑ

ՐԱՐԲԱՌ աւետեաց ձայնիւ
Գաբրիէլ գոչէր սրբուհւոյն .
Առ քեզ առաքիմ, մաքուր,
Պատրաստել տեղի տէրունւոյն ։
Նուագ ցնծութեան երգեմք .
Ուրախ լեր, բերկրեալդ, տէր ընդ
քեզ ։
Նորոգի երկիրս այսօր
Յառաջին մեղաց հնութենէն ,
Երկինք երկնայնովք հանդերձ
Ընդ մարդկան առն փառք 'ի բար-
ձունս .
Բամեալ մեկանան սիրով
Հաշտութեան Հօր ընդ արարածս ։
Սարսեալ յողջունէն սուրբ Կոյսն՝
Հաստատէր բանիւ հրեշտակին ,

Ի տուն Զաքարեայ երթայր
Ի յողջոյն Եղիսաբեթին ։
Սիրով զլուր բանին լուեալ,
Եւ խայտայր ձայնին յորովայնին ․
Ի բերան ծերոյ ամլոյն
Օրհնութիւն տայր պտղոյ Կուսին ։
Երգեմք ընդ մեծին 'ի ծնունդս
Փրկողին փառք և զօրութիւն ։

## Ի ՆՈՅՆ

ՆՈՐ երկինք յերկրի, արփւոյն պա-
րունողն, ծագողին ծագող,
Երրակի ունող աւետեաց՝ ձայնիւ ան-
մահից պետին,
Բողխեցըն տիպ՝ համայնից հոգւոց գը-
լով արեւելք ․
Սըրտի մաքրելոյ զթափանցիկ լուսոյն
ծագելով նըշոյլ ։
Էին աննիւթի հիւթ պարունակեալ
նիւթեալ առ 'ի քէն,
Սիրատունկ ծառոյն սաղարթից բող-
բոջ 'ի քէն ընծիւղեալ ։
Ի բարձունս առ նոյն լեր բարեխօս,
սուրբ Կոյս Մարիամ ։

# Ի ՆՈՅՆ

ՄԱՅՐ Աստուծոյ Մարիամ,
Դուստրըդ դաւթեան թագաւորազարմ.
Ծըննար մարմնով զնորն Ադամ,
Որ նորոգեաց զհինն Ադամ:
Աստուածածին դաւանեմք,
Ըզծնեալդ Աստուած քարոզեմք.
Ընդ հրեշտակին քեզ գոչեմք,
Զուրախութիւնն աւետեմք:
Խընդա, խորանըդ լուսոյ.
Բերկրեա՛, տաճարդ արեւու.
Ցընծա, աթոռ Աստուծոյ,
Բարձող Բանին բարձրելոյ:
Երկինք երկնից վեհագոյն,
Քերովբէից գերագոյն,
Ի Սրովբէիցըն թեւոյն
Ծածկեալ խորհուրդ ծնեցելոյն:
Անստանելւոյն կայարան,
Արեգականն օթարան,
Ահեղ բոցոյն բնակարան,
Աննիւթ Բանին մարմնարան:
Զքեզ տեսանողքըն տեսին.
Մովսէս՝ մորենին ոչ կիզեալ,

Եսայիաս՝ կոյս յղացեալ,
Եզեկիէլ՝ դուռն աղխեալ։
Լեառն վիմածին՝ Դանիէլ.
Բլուր կընդրուկն՝ Սողոմոն,
Աղբեւր կընքեալ պահողին,
Պարտէզ փակեալ տընկողին։
Նըման գեղմանն՝ Գեդէոն,
Դաւիթ՝ Նըման անձրեւոյն,
Եւ Միքիաս՝ ըղձաեղւոյն
Ի Բեթղեհեմ ծնանելոյն։
Նոյեան տապան կենարար,
Աբրահամեան տաղաւար,
Կըտակագրին տապանակ,
Անձառ լուսոյն աշտանակ։
Դրախտ Աստուծոյ ծաղկալից,
Նարդոս բուրեալ՝ի հոգի,
Հովիտ պայծառ շուշանի,
Աղբեւր գետոց քառակի։
Բուրվառ խընկոց անուշից,
Քառաբուրեանըն խառնից,
Զոր ծերունեացըն խըմբից,
Զաղօթս խընկելն քոց բանից։
Ի քէն հայցեմք, մայր կենաց,
Մաքրել ըզմեզ՝ի մեղաց.
Հայցմամբ առ տէրն աշխարհաց,
Որում պատիւ սըրբասաց։

# ՃՐԱԳԱԼՈՅՑԻ ԾՆՆԴԵԱՆ

ԱՅՍՕՐ աւետեաց Գաբրիէլի
լուսին
Եղանի առ Կոյս Մարիամ ։
Այսօր անհերքելին իննամսեան անձամբ
Առլցեալ յարգանդի Կուսին ։
Այսօր գայ Յովսէփ 'ի քաղաք Դաւթի
Ընդ Կուսին յայրն իջեւանի ։
Այսօր երկնային արքայն մըտանէ
'Ի երկրաւոր արքայի գըրոյ ։
Այսօր ազգ մարդկան վերագրին
Աշխարհագրաւն այն յաշխարհն վե-
րին ։
Այսօր 'ի Հօրէ անմարմին
Ծընեալ որդի, նոյն մարմնով ծընանի ։
Այսօր Բանն անհուն թանձրացեալ
Հիւթական մարմնով յայտնեալ ե-
րեւի ։
Այսօր լուծանի երկունք անիծից
Նախահօրն ծնընդեամբ սուրբ Կուսին ։
Այսօր մեզ Դաւիթ տասնաղեաւըն
տայ
Նըշան, գըտաք յԵփրաթայ ։

Այսօր ընդ Միքեայ Բեթղեհէմ ցընծայ
Տուն եղեալ երկնաւոր հացին ։
Այսօր 'ստ Եսայեայ Կոյսըն մայր լինի
Սքանչելեօք Էմմանուելի ·
Այսօր հովուեղէնք տան որդւոց մարդ-
կան
Աւետիս, ծընաւ Ձեզ փըրկիչ ·
Այսօր ընդ հովիւսն երգս տուեալ
գոչեմք,
Ասելով ըզփառս 'ի բարձունս ։

## ՑՈՐԴՈՐԱԿ

ՆՈՐ ծաղիկ բըղխէ այսօր յարմա-
տոյն Յեսսեայ ·
Եւ որդի Դաւթի ծնանի Որդին Աս-
տուծոյ ։
Բաղէից Տէրն օծանի արքայ Նոր Իս-
րայէլի ·
Սրովբէից անտես բնութիւնն տեսա-
նի մարմնով ։
Ի լոյս անմատոյց բնակեալն խանձար-
րօք պատի ·
Սա անմայր յառաջ ծընեալն, անհայր
ծընանի ։

Ի բարձրածին անբաւ վերնոցն, յայրերն
պատարագրի ·
Երեւի տղայ Ծերունին, մանկացեալ հինն
աւուրցն ։
Անեղն եղանի այսօր մարդ ճըշմար-
տապէս ,
Ցիւր պատկերըն գայ կամաւ կերպա-
րանըն Հօր ։
Արով խոնարհի առ մեզ բարձրեալ
Թագաւորն ։
Եկայք զնախատօն ծննդեանս վերա-
պատուեսցուք ,
Բանական մարդութեանս հաղորդս լի-
ցուք ծնեցելոյն ·
Գոհութիւնս տացուք նըմին ընդ Հօր
եւ Հոգւոյն ,
Սուրբ Երրորդութեանն փառք յա-
ւիտեանս , ամէն ։

## Ի ԾՆՈՒՆԴՆ ՏԵԱՌՆ

ՆՈՐ Եդեմ բանաւոր տընկոյն,
Նոր Ադամն 'ի քէն հընոյն նորոգօղ։
Երկնակից զըիմառանց առիթ ,
Անքակ միութեանն Էին ընդգեղումն:

Ընդանական արփիւ առըլցեալ,
Զմինըն մարմնապէս ծընեալ վերըս-
տին:
Աերամարդ ոսկեղինիկ նըկար յոգի,
Տառրակ ողջախոհ մաքուր աղաւնի:
Էրեւեալ ծաղիկ գարնայնոյ
Վարդ մանիշակ քըրքում շուշան վայ-
ելուչ:
Սարդիոն յակինթ գոհարանակ,
Ցասպիս, կարկեհան, զըմրուխտ, շա-
փիղայ,
Ի տիպ վակասի յեռեալ
Կայծ և տպազիոն նորին Ահարոնի:

## Ի ՆՈՅՆ.

ՏԷՐ փառաց անճառ ծընեալ յառաջ
քան զյաւիտեանս,
Նոյն ծընաւ այսօր 'ի Բեթղահեմ
քաղաքն Դաւթի:
Բանն երկնային իմաստութիւն հօր
անեղին
Ցանքանից մըսուր 'ի խանձարուրս
պատեալ դընի:

Նստեալն ՚ի Քերովբէս յաթոռ փա-
ռացըն հինաւուրցն
Ի գիրկըս Կուսին տըղայացեալ էս բա-
նի մանուկ։

Երկնաւոր զօրացըն Թագաւոր մեծ
և յաղթող
Յամպ թեթեւ նըստեալ ՚ի յԵգիպտոս
փախչի կամաւ ։

Բանից համայնից ստեղծող և տէր,
անտես մերինոց .
Յերկրի երեւի և ընդ որդւոց մարդ-
կան շըրջի ։

Սրովբէից թեւօք պատարածածկեալ ՚ի
սուրբ սըրբոցն,
Խոնարհեալ հայցէ ՚ի ծառայէն իւր
մըկըրտիլ։

Եկեալ հուրն Աստուած Յորդանանու
յորձանսն իջեալ,
Ջըրով կիզու զմեղս ազգամարդկին
բնութեան մարդկան ։

Սարսեալ ամբորդւոյն ՚ի կիզանող յա-
հեղ բոցոյն,
Հրաժարէր մերձիլ ՚ի ճառագայթն
անճառ փառաց ։

Ի բարձանց Հոգին աղաւնակերպ էջ
առ նըմա ,

Երկինք երկնայնովք տօնեն ընդ ծընունդ
փրկչին ։
Բոցեղէնք քառակերպ կառաւորք լուսոյ ծառա-
յեցան ․
Սահմանեցեալ խորհրդոց մարդուցն ընդ վերա-
լուսին սատանեղն ,
Ի յերկրպագանել ծնելոյն եկեալ ըն-
ծայիւք ։
Մոլեգնեալ Հերովդէս դողայր ընդ լուր
արքային ,
Ի խնդրել մանկուն շարժեալ կենաց կեն-
սատուին ։
Արեամբ անմեղաց մանկանց լցեալ
զԲեթղահէմ ,
Յառաջեալ տղայք վկայք տղայա-
ցելոյն ։
Սոցին համաձայն լերուք , մանկունք
Սիոնի ,
Ընդ ծնելոյ Բանին տուք միշտ օրհ-
նութիւն ։

## Ի ՆՈՅՆ

ՆՈՐԱՀՐԱՇ ծննդեան քո , տէր ,
ընդ մոգուցն երկիր պագանեմք ։

Երկնաւոր հովուին երգեմք զերդ հո-
վուացն ըզփառսք 'ի բարձունս:

Բազմութեամբ աշակերտեալքս ընդ հրեշ-
տակս այսօր պարեսցուք:

Սրովբէից համաձայնեալ, յայտնու-
թեամբ քո, տէր, ցընծասցուք:

Երեւելոյդ 'ի փրկել՝ քեւ փրկեալ-
քըս պաղատեսցուք.

Սրբեա ըզմեզ 'ի մեղաց կենդանա-
րար քո սուրբ ծննդեամբ.

Ի փառըս վերարկերեա մաղթանօք
սուրբ աստուածածնին.

Ընկեալ նորոգօղ փրկիչ, նորոգեալքս
երգեմք միշտ ըզփառս:

## Ի ՆՈՑՆ

ՆՅՈՐ Թագաւորին անժամանակ Հօր
Միածնին

Եկայք երկիր պագցուք, և ընդ մո-
գուցն ընծայեսցուք.

Բամեալ զհոգի զմարմին զմիտըս տա-
ցուք երրեակ անձին:

Ախրով խոնարհելոյն մաքուր հոգւով
տաճարասցուք,

Ի մտրուղս գրգռեալցուք որպէս 'ի գիր-
կըս Սիմէոնի ։
Ստասցուք առեալ օրհնեալ զանարատ
կոյսն ըզՄարիամ.
Ի նոյն նըմին նըման տաճար լինել
Երրորդութեան ։
Երգովք համաձայնեալք հոգեղէ-
նացն, որպէս հովիւքն,
Բարեձայնաբար զիմաստս իմաստութեն
Հօր ընծայեալ,
Գըլխոյն եկեղեցւոյ յօդեալքս 'ի նոյն
տացուք ըզփառս ։

## Ի ՄԿՐՏՈՒԹԻՒՆՆ ՏԵԱՌՆ

ՆՈՅՆ ինքն անդրանիկըն Հօր յա-
ռաջ քան զարեւ,
Եղեւ անդրանիկ այսօր կուսական
ծնընդեամբն.
Բոպէից քաւից ստեղծողն 'ի նոյն
խոնարհեալ,
Սըրբել զԱդամայ զյանցանս 'ի գետն
Յորդանան.

Եկեալ Հօրն Աստուած մարմնացեալ
մկրտուել՚ի Ջուր ,
Սասանեալ Յորդանան տեսանելեացն ոչ
իշխէր մերձիլ .
Ի վերուստ իջեալ Հոգւոյն նըման ա֊
ղաւնոյ ,
Երկնիցն բացան դրունքն Հայր յայտ֊
նեալ ցուցան .
Ազդարարելով գոչէր . Դա է իմ Որդի
Յինէն առաքեալ յերկնից, զսմա լուա֊
րուք ։
Սա տօնից մեզ տօն , եղբարք , ժողո֊
վոց ժողով .
Բոլորից փրկիչն այսօր Յիսուս կո֊
չեցաւ ։
Արդ յաւուր տօնիս այս Տեառն ա֊
նուանադրութեան ,
Նուագ ցընծութեան երգեմք ըզփառսն
՚ի բարձունս ։

# Ի ՅԱՐՈՒԹԻՒՆՆ ՂԱԶԱՐՈՒ

ՆՈՐ աւետեաց լուր այսօր մեզ հրճու-
ելոյ ,
Երկնային ձայնիւն Որդւոյն որոտմամն :
Բոպէիցըն Ցէրն ստեղծօղն Ադամայ,
Սա այսօր եկեալ 'ի Բեթանիա .
Ի յարուցանել ըզչորեքօրեայն ,
Սաստեաց հրամանաւ մահու բռնու-
թեան ,
Ի կեանս դարձոյց զմեռեալն զՂա-
զար ,
Իբրեւ նախկին ձայնիւ զմեզ անմահացոյց :
Բարուն խմատուք սպասեալ յարու-
թեան ,
Գոչեսցուք և մեք փառս կենարարին :

## ԾԱՂԿԱԶԱՐԴԻՆ

ՏԻՐԱԿԱՆ տօնիւս այսօր եկայք ցընծասցուք.
Բախճանայ այսօր երկինք անմարմնականօք։
Նորոգի երկիրս այսօր գալըստեամբ փըրկչին.
Երգս առեալ մանկանց ոստովք՝ ովսաննա օրհնեալ։
Բարունին էից այսօր եկեալ՚ի Սիոն,
Սիոնի ցընծան մանկունք ելեալ ընդառաջ։
Երգս երգէ Զաքարիաս գըրաւեր Սիոնի,
Սիրով խոնարհեալ նըստի նոր յաւանակի.
Ի ծերոց ընծայ բանիւ՚ի տղայոց ձայնիւ.
Երգեմք ընդ նոսին ըզփառս գալըստեան փըրկչին։

## ՄԵԾԻ
## ՈՒՐԲԱԹԻՆ

ՍՆԵՂ Որդին Հօր Միածին բազկա֊
տարած
Այսօր եկաց 'ի յատենին մեղաւո֊
րաց ։
Բարձեալ մարմնով 'ի խաչն անճառ
խոնարհութեամբ ,
Բերեալ բազկաւ զհեռացեալ ազգս
որդւոց մարդկան ։
Գտան անարատ 'ի սպանդ ածեալ
պատարագի ,
Գայ հաշտութեամբ Հօր 'ի բառ֊
նալ զմեղս աշխարհի ։
Դատապարտեալ եղեն դղրդեցին առ Պի֊
ղատոս ,
Դատաստանաւ բառնալ 'ի խաչ
բողոքէին ։
Եկըն եհաս վախճան մահու նախա֊
ստեղծին ,
Եւ ցուրտ և պարզ օր մի յայտնի
տեսան Աստուծոյ ։

Ջե՛ր էլ՛ն Հօր գըթութեանց տայր 'ի խաչին ,
Զ հաշտութիւն Հօր խաչահանուացն 'աղօթելով ։
Էնն էից անապարապէրն յաւիտենից
Երեւեցաւ մեզ 'ի վախճան ժամանակիս .
Ընդ մեզ Աստուած յայտնեալ՝ բարձեալ մարմնով 'ի խաչ ,
Ընդդէմ լուսոյ արեգականըն կըրնքելով ։
Թողեալ լըքաւ լոյսն 'ի ծոցոյ արեգականն ,
Թագոյց յինքեան ըղձատաարայթս 'ի մէջօրէայն ։
Ժամն ոչ տիւ էր եւ ոչ գիշեր 'առ մարգարէին .
Ժամանեալ գայ տէր զօրութեանց 'ի պատերազմ ։
Իշխանութեամբ զհոգին առ Հայր աւանդելով ,
Ինքն 'ի հանդէս մարտի իջեալ ընդդէմ մահու ։
Նըւան իշխանք չարին , պակեանն ահիւ մեծաւ .

Լքեալ մահու և դըժոխոց ատա֊
 նեցան :
Խորհրդաւորին տառապէր Յիսուս լուսով
 խաչին ,
Խընդրէր աւանդէր իւր ծառայիցն անդ֊
 գերելոց .
Ծանեաւ Ադամ զնըշան դառըն
 տեառն 'ի դըժոխս ,
Ծառայք անմթընկալք հիացեալ եր֊
 կնաւորքն :
Կարկառ նըման Յիսուս ըղձեալ իւր
 բեւեռեալ .
Կոչէ ձեռամբ , քաջալերէր . մի
 երկընչիր ,
Հայեաց 'ի ձեռս յոյս և 'ի կողս՝ որ
 վասըն քո ,
Հայեաց 'ի գլուխս բարձեալ զա֊
 նէծս 'ի փշոց երկրէ .
Ձաղկ եղեգամբ հարին 'ի գլուխ իմ
 մեղաւորըք ,
Ձաղկեալ ապտակ և Թուք 'ի ծնօտս
 ինձ մատուցին ,
Դեղք տուան ինձ կերակուր ընդ քա֊
 ցախոյ ,
Դեղոյ մեղաց քոց փոխանակ որ 'ի
 դըրախտին :

Ճանապարհաւ մահու ընդ քեզ հե-
տեւեցի,
Ճանապարհիս կենաց ընդ իս եկ
յարութեամբ։
Մաքուր հոգիք սրբոց, և ձեզ մեծ
աւետիս.
Մատիք տեսէք մարմնով եկեալ ում
ցանկայիք.
Յառաջագոյն գուշակելովդ զեմ ըղձա-
լուատ
Յայս ահագին խոր խաւարին՝ ուր
էք կապեալ։
Նովին մարմնով, զոր 'ի Կուսէն եմ
ըզգեցեալ,
Նախ 'ի դժոխս իջի փրկել ըզկե-
րուանեալդ։

## ՑՈՐԴՈՐԱԿ

ՇՆՈՐՀՕՔ սրբոյ Հոգւոյն լցեալ
եղեն սուրբ մարգարէքն,
Շարժեալ 'ի նմին ժամու մեծ գո-
հութիւն մատուցանեն.
Որ ընդ Հօր ես յէութեան և 'ի յա-
թոռ փառաց նըստիս,

Որ անդրանիկ որդւեքըն մօր սուրբ
Սիոնին
Եւ քաջահամբաւ գոգոյն ժառանգ Հօրըն
վերին .
Որ արդարոց դասք ամենայն սուրբ
երամին
Ուրախանան յաջմէ փառաց սուրբ
փեսային ։
Նըմնայ երգեմք և մեք ընդ Հօր և սուրբ
Հոգւոյն ,
Փառք յաւիտենական խաչեցելոյ անմահ
Բանին ։

## Ի ՅԱՐՈՒԹԻՒՆՆ ՏԵԱՌՆ

ՆՈՐ իմն աւետեաց բարբառ նորա
զուարճ ձայնիւ
Այսօր գոչէր Գաբրիէլ խնդաբեր
կանանցն ։
Եդին զգլուխ անկեան ըզվէմն 'ի նոր
տապանին ,
Որ ոչ արգել մնատանին զանապարա-
գրելին ։

Բամից անմահիցըն պետ փողէր սուրբ կանանցն ,
Յարեաւ խաչելեալըն Յիսուս զքն լոյս զկենդանին :
Սիրով խընկաբեր կանայքն աւետիս տային
Դասուն պետրոսեան գընդին , յարեաւ կենդանին :
Երեւեալ ունայն բանիցն ոչ հաւատացին ,
Պետրոս առ անծուկ սըրտին եկն ՚ի տապանին :
Սէրըն սիրելոյն յայտնեալ նախ և առաջին ,
Յետ տեսանելոյ կտաւին և վարշամակին :
Ի դաս անդամոց դարձեալ գլուխ փոքու հօտին ,
Պատմէր զյարութիւն փըրկչին զՅիսուս միածնին :
Ընկայք ընդ նոսին և մեք հոգեւոր ցընծացուք ,
Փըրկողին տացուք ըղփառս այժմ և յաւիտեանս :

## ՑՈՐԴՈՐԱԿ

ՅՕՐ կամաւ իջեալ Որդին, մարմնին
ընդգեցաւ·
Արեամբ և մահուամբն իւր գնեաց
զորդիսն Ադամայ:
Յարեաւ յարութեամբն և կեանքն,
յարոյց ըզբնութիւնս:
Որով պարակից եղեալ վերին զուարթ-
նոցն,
Ցընծալով տօնեմք այսօր, առ նոյն
պաղատիմք·
Կենարար տեսլեան քո, տէր, ընդ-
մետասանիցն
Արժանաւորեա ըզմեզ յերկրորդ
գալըստեանդ:
Թագաւոր փառաց Քրիստոս, յոր-
ժամ գաս փառօք·
Որով զհողացեալ բնութիւնս հօրեղէն
նորոգես,
Ղամբարափայլեալ փառօք շնորհեա
մեզ յառնել,
Ի դաս աջակողմ օրհնեալցն կացո և
զմեզ:

Կենդանի բարբառ քո, Տէր, ընդմեջ
կոչեսցէ,
Որպէս զարդարոցն երաման ընդ քեզ
վերանալ
Արաթուիչ լուսափայլ անմարմինք յերկ-
նային խորանաց ;
Ի նոյն միանալ սիրով ընդ սուրբ փե-
սային ,
Նոցին համաձայն օրհնել սուրբ զեր-
րորդութիւնդ :

## Ի ՆՈՑՆ

ՆՈՐ ձայն աւետեաց հրեշտակա-
պետն այսօր
փողէր խընկաբեր կանանցն 'ի վե-
րայ վիմին .
Խաչելեալն յարեաւ , ձեզ մեծ ա-
ւետիս :
Երթեալ խընդութեամբ աշակեր-
տեալ կանանցն ,
Պատմեցին դասուց ընտրեալ սուրբ
մետասանիցն .
Ցընծացէք , յարեաւ տէրն 'ի մե-
ռելոց :

Բարունեաց հետ աշակերտեալ խըմ-
բից
Պետրոս Յոհաննու հանդերձ առաք-
ընթացեալ
Տեսին զգերեզմանն ունայն 'ի
մարմնոյն :
Սէրըն տարփողին օտարանայր յաչաց,
Գոչէր Մարիամ առ Նա · պարտիզ-
պան , ցոյց ինձ
Թէ բարձեր զիւր տէրն , եւս առից
ըզնա :
Երեւեալ անդրէն քաղցրիկ հընչէր
բարբառ
Ցընծա , Մարիամ , յարեայ · մի՛
լար զիս մեռեալ
Բարունին ձայնէր առ Նա . . . :
Սըրտիւ անձկալեաւ առ բաղձալին
դիմեալ ·
Մի՛ յիս մերձենար , ասէ , չեմ ե-
լեալ առ Հայր ,
Զայրտուղն առաջին տալ նըշեր նը-
մին :

# ՑՈՐԴՈՐԱԿ

ՍԱՆԱՑՔՆ արտասուօք լոյծն զբարձօղն արտասուաց
Զմեռելոց կենդանատուն որպէս
ըզմեռեալ :
Անման եւս թափեալ անուան զեւղս
անոյշ բերին ,
Կընդրուկ և զմուռ հալուէս կենսատու փըրկչին :
Թաղեալըն մարմնով յերկրի զնման
մեռուցանէ ,
Զադամեան մեռեալ բնութիւնըս
կենսագործէ :
Ուստի և զուարթունք իջեալ լուսափայլ ծագմամբ ,
Խընդութեամբ տային մարդկան
զաւետիս կենաց :
Ղամբար լուսափայլ վառեալ 'ի վերայ վիմին ,
Մեռօրէն պակեան յահէն դառք
պահապանաց :
Ի բաց մերկացեալ զերկեւղն խընկաբեր կանանցն ,

Աւետեաց քարոզք եղեն սուրբ ա֊
շակերտացն ։
Կարօտ անձկալի սիրով Պետրոս յա֊
րուցեալ,
Մրցեցեալքն Յովհաննէս արագ ըն֊
թացեալ ։
Ունայն 'ի մարմնոյն տեսին ըզսուրբ
գերեզմանն ,
Հիացեալ անդրէն դարձան առ հա֊
մադասիցն ։
Սրբուհի անձկալեաւ վառեալ 'ի հուր
սիրելւոյն ,
Զըղձալին տեսեալ աչօք և ոչ ծա֊
նուցեալ ։
Ի գերեզմանէն զմարմինն , ով պար֊
տիզպանն ;
Եթէ դու բարձեր , ասա զի ես առ֊
նուցում ։
Հայցելին առ նա ձայնէր ․ ով դու
Մարիամ ,
Զիս՝ որ յարութիւն և կեանք՝ զի՞
ողբաս մեռեալ ։
Արդ մի՛ մերձենար դու յիս , անկա֊
տար գոլով ,
Որպէս մայրըն քո Եւայ 'ի ծառ գի֊
տութեան ։

Յորժամ առ բնութեանս իմ հայր և
մեր ըստ շնորհի
Եւ Աստուած մարմնոյս իմոյ ես
եղանիցեմ ,
Որոտմամբք հողին իշխան՝ ըղձերդ նո-
րոգէ .
Արժանաւորիք յաղթմամբ առ իս
մերձենալ ։
Ցընծացուք և մեք յուսով զուար-
ճացուք մարմնով .
Զ յարուցեալն ՚ի մեռելոց զՔրիս-
տոս օրհնեսցուք ։

## Ի ՆՈՑՆ

ԼԸՍՏԵԱԼ կանայքըն օրհնայքն
Առ գերեզմանն անմահին .
Երեւելով հրեշտակին ,
Զայն աւետեաց լսելին ։
Բանից սըրբոց ըղձալին ,
Զոր տապանաւ ծածկէին ,
Սիրով յարեաւ մեռելքն ,
Զ բնութիւնս յարոյց զմարդկային ։
Երկեզակից լինէին
Պահապանացըն զաւրին .

Սատանայացեալ Սերովբէն
Հոլաթեւէր 'ի վիհին ։
Ի բաց լինել երկնեղէն ,
Փողէր կանանց տարփալին .
Երթեալ պատմել զաւետիսն
Գովեալ զընդլին Պետրոսին ,
Բարունեաց վարդապետն
Այսօր յարեաւ բարձրալին .
Գոչեմք և մեք ընդ. նորին ,
Փառք յարութեան փրկողին ։

## ՑՈՐԴՈՐԱԿ

ՍԵԱՆՔՆ ընդ Հօր անմահն մարմինով
տէր յարեաւ
Ի գերեզմանէն .
Առաւօտ լուսոյ ծագեալ մեզ այսօր
Ի գրոյ խաւարէ ։
Թագաւորն իջեալ առորէն վայր մահու ,
Փրկեաց ըզգերեալսն .
Որով մահ մեռաւ մահուամբ կեն-
դանույն
Կեանք Թագաւորեաց ։

Ղամբար բոցեղէն փայլեաց յարփեն_
ւոյն

Որք 'ի խաւարի ·

Ի կեանս վերածեաց անմահըն մահ_
ուամբ

Ըզմեռեալ բնութիւնս ։

Կամաւ վասն մեր զանձն իւր եդ 'ի
մահ ,

Կամաւ յարուցեալ ։

Ողբային կանայքն ողբով Արտասուօք

Զբարձօղն արտասուաց ։

Մոսկալին փայլականանման երեւեալ

Լուսափայլ կերպիւ

Ի ձայն ցընծութեան փոխէր զաւետիս

Սուրբ իւղնկաբերիցն ։

Հայեցեալ տեսէք զտեղին անմահին

Ունայն 'ի մարմնոյն ։

Այսօր տէրըն մեր յարեաւ , ցընծա_
ցէք ,

Դըստերք Սիոնի ·

ՅԵւայի մօր լըսելիս ձայնեցէք ,

Թ'օձըն պարտեցաւ

Ուրախ լեր Ադամ այսօր որդւին քո

Ըզքեզ նորոգեաց

Ցընծալով մեք երգեսցուք փըրկողին

Ըզփառս յաւիտեան ։

## Ի՛ ՆՈՅՆ

ԼՈՅՍ ծագեալ պայծառ ցուցար
Այսօր 'ի նոր գերեզմանէն.
Երփնազարդ հոգւոցըն տաճարք
Կանաչացեալ կենդանութեամբք.
Բենական լուսոյ սաղարթք
Ի հոգեւոր գարնան փըթթեալք :
Սիրով մեռեալըն վասն մեր
Յարոյց ընդ իւր զանկեալ բնութիւն,
Երեւեալ լոյս յարութեան
Ի խաւարի ստուերաց մահու :
Սասանեցաւ Դժոխքն
Նըշանէր փայլմամբ վերայ վիմին.
Ի ձայն քաղցր փողէր կանանց,
Յարեաւ խաչեալն Յ̃ս Աստուած.
Եկայք տեսէք ըզգերեզմանն
Յաստուածային մարմնոյն ունայն :

## Ի ՆՈՅՆ

ՆՈՅՆԱԳՈՅ ընդ Հօր Բանն Աս-
տուած,
Ի սկըզբանն առ Աստուած միշտ էն,

Էն անմահութիւն անյեղ յեղեալ,
Եւ բնակեաց 'ի մեզ լռածորէն.
Բանից ակերն յանձն առեալ ընդ մեր,
Մեռանել մարմնով սխրագործ,
Սէր անուն գրնիւր 'ի տապան,
Սիրով ողբայլին եղաբերքն.
Եղաբեր կանանցն առաւօտուք
Դադարեաց տեսլեամբ սիրելոյն,
Աւետեացն տարփանօք անձկալոյն
Բարբառէր՝ մի՛ յիս մերձենար։
Ի մերձենալ զուարթնոյն առ վիմին
Փողէր խնդաբերիցն տեսլով,
Ձեզ աւետիք։

## ՅՈՐԴՈՐԱԿ

ՅԱՐԵԱՒ փառաց Թագաւորն,
աւետիք,
Զի՞ խնդրէք զանմահն ընդ մեռեալս,
մեծ աւետիք։
Յարոյց զբնութիւնս Ադամայ, աւե-
տիք.
Կանգնեաց զգլորեալ Նախամայրն,
մեծ աւետիք։

Պատմեցէք դասուց պետրոսեան, աւետիք .
Յոհաննու սուրբ սիրելւոյն, մեծ աւետիք :

Փ. ՙՔրիստոս յարեաւ ընդ նմա արիք, աւետիք .
Որդեք մարդկան այսօր ցնծացէք, մեծ աւետիք :
Քրիստոս ՚ի վեր, ելէք ընդ նմա, աւետիք .
Երկրաւորք, լերուք երկնայինն, մեծ աւետիք :
Այսօր դըրունք բացան դըժոխոց, աւետիք .
Ելին կապեալ հոգիքն՝ որ ՚ի նմա, մեծ աւետիք :
Այսօր մահ մեռաւ ՚ի կենաց, աւետիք .
Խաւար լուծաւ, լոյս հաստատեցաւ, մեծ աւետիք :
Այսօր նոր արարածք եղեալք ՚ի Քրիստոս,
Նորոգողքն երգեմք ընդ հրեշտակս փառք ՚ի բարձունս :

# Ի ՍՈՒՐԲ ԵՐՐՈՐԴՈՒԹԻՒՆՆ

ՆԵՐԳԱՄՐՈՒՆԱԿԵԱԼ իննեակ դա-
սուց կայք մի առ մի ձայնիւ
Երգս առեալ գոչէին երրակի անձանց
միոյ տէրութեանն ·
Ուրախացեալ և մեք համաձայնելով
ընդ Սրոբէիցն խումբս ,
Սուրբ սուրբ սուրբ մի տէր Հայր յա-
ւէտ և միշտ Որդի և Հոգի ,
Երրորդութիւն սուրբ , մի աստուա-
ծութիւն անբաժանելի ,
Սուրբ եկեղեցի երգէ ընդ հրեշտակս
յաւէտ քեզ ըզփառս ։

## ՎԱՐԴԱՎԱՌԻՆ

Տէր փառաց այսօր յայտնեալ՝ի Թա-
բօր ըզփառս իւր ,
Ուրախացեալ տեսլեամբ լուսոյն զաս
Առաքելոցն ։

Նոյն ինքըն ածեալ զՄովսէս ըզմեծն
Հեղինաս,
Երրեակ տապանաւոր շինեալ Վիմին
հաստատոյ.
Բարունակոյն էից յերկնից Հայր վը-
կայելով,
Սիրելի Որդի դա իմ, դըրմամբ լըւա-
րուք:
Երեւեալ Հոգւոյն 'ի տիպ լուսափայլ
աղաւնոյ,
Սինա նոր եղեւ Թաբօր եւ էջք Աս-
տուածոյ.
Ի նոյն մեք ելցուք հոգւով լեառն ի-
մանալի,
Նաւկան լուսոյն նըւէր մատուցուք
ըղջիւսաս:

## ՑՈՐԴՈՐԱԿ

ՐՍՏԱՆՈՐ տեսիլ ահեղ 'ի լեառ-
ան Թաբօր,
Զ Որդին Աստուծոյ տեսեալ 'ի նմա
խոնարհեալ:
Երիցս երանեալ առաքեալք հինգ դըր-
խատոք,

Ըղձալեմն հաւատոյ Պետրոսի, զՈրդիսն
որոտման :
Զտուօղն օրինաց Մովսէս ըղձեծն
Հեղիաս,
Զմարգարէսն 'ի մէջ ածեալ պատմիչ
խորհրդոյ :
Դաւիթ վաղընջուց ձայնէր զայսր ա-
ւուր խորհուրդ,
Նախագուշակեալ ասէր զցնծութիւն
աւուրս :
Ցընծալով ցընծա, Թաբօր, հանդերձ
Հերմոնիւ,
Զտէր տեսեալ 'ի քեզ փայլեալ փա-
ռօք հայրենի :
Հայր վկայելով յամպոյն Դա է իմ
Որդի,
Դմա լուարուք, ասէ, ընդ որ հա-
ճեցայ :
Մի՛ որք կարծեցէք ըզդա նըման Մով-
սէսի,
Եղիա զդա մի՛ ասէք զտէրն Եղիայի :
Յովհաննու դա չէ հանգոյն, անուանս
'ի վերնոցս .
Իմ է սիրելի Որդի Հօրս երկնա-
ւորի :

Զտօն Վարդավառին այսօր եկայք տօ-
նեսցուք ,
Մեզ ողորմութիւն հայցել տօնիս տօ-
նողաց :

## Ի ՆՈՅՆ

ՍԵՐԳԱՐՈՒՆԱԿԵԱԼ խորհուրդ
լուսոյն 'ի հրեղինաց
Այսօր 'ի յերկրի յայտնեալ ցու-
ցաւ հողեղինացս
Լուսական Բանին ընութիւն մարմնով
պատածածկեալ .
Այսօր 'ի Թաբօր արտափայլեալ
պայծառ ծագմամբ ,
Րաբունեցըն պետք երից ընտրեալ ա-
շակերտացն
Անգեալ դողային յահեղ լուսոյն
ոչ հանդուրժեալ :
Սոսկալի հրամանն ածեալ զՄովսէս
'ի մեռելոց ,
Ըզմեծն Հեղիաս 'ի կենդանեաց
վայրաբերեալ :

Էն Աստուածըն Հայր յերկնից ձայ-
նիւ աղաղակէր ․
Դա է իմ Որդի, դըմա լուարուք,
որդիք մարդկան ։
Սուրբ Հոգին ընդ Հօր հոմանացեալ
իւր էակցին,
Ի նըմանութիւն լուսափայլեալ
պայծառ ամպոյ ։
Ի Թաբօր լերինն յայտնեալ խորհուրդ
Երրորդութեան,
Զոր և Պետրոսի երիւք ազդեալ տա-
ղաւարօք ։
Երգս առեալ Դաւիթ յառաջագոյն
նախաձայնէր ․
Թաբօր և Հերմոն, ասէ, յանուն
քո ցնծասցեն ։
Բոպէից հանուրց այսօր ծագեաց լոյսն
երկնային,
Եւ պայծառացոյց զեկեղեցիս հե-
թանոսաց ։
Գոչեմք 'ի տեսողին այսօր ըզԼոյսն
անճառելի՝
Փառըս ծագողին այժմ և յաւէտ
միշտ յաւիտեանս ։

## ՑՈՐԴՈՐԱԿ

* * * * * * * * * * * * * *

Հանել ընդ նոսին ըզմեզ լեառն իմա-
նալի ,
Ի մեծի ծագման քո , տէր , հայրական
փառօք :
Արժանաւորեա անեղեան փառաւաց քոց,
Քրիստոս ,
Ցորժամ արդարոցըն դասք ընդ քեզ
ծագեսցին .
Լուսաւորեսցես ըզմեզ լուսով քո ,
փրկիչ ,
Երգակից լինել վերնոցն 'ի յարքայ-
ութեանդ .
Անդադար ձայնիւ օրհնել սուրբ զԵր-
րորդութիւնդ
ԸզՀայր և զՈրդի Հոգւով յաւի-
տեանս . ամէն :

* Պակասէ յօրինակին սկիզբն յորդորակին :

# Ի ՓՈԽՈՒՄՆ ԿՈՒՍԻՆ

ԱՅՍՕՐ Գաբրիէլ հրեշտակա-պետն եկեալ,
Բերեալ զերաշխոն պսակ յաղթող կուսին :
Այսօր կոչելով առ բալօրեցըն ոտերն
Զտաճար բարձրելոյն և զբնակարան Բանին :
Այսօր հրաւիրմամբ Հոգւոյն ժողո-վեցան
Դասք Առաքելոցն և խմբառատուն կու-սիցն .
Այսօր խոնարհեալ անմարմնականն դասուք
Միածին Որդին առ կուսութեանցն մայրն :
Այսօր աւանդեալ ընծայաբերական հո-գին
Փայլակնակերպականն վերամբարձեալ վե-հից :
Այսօր ամփոփեալ ընդերբառնեալ մարմինն ,

Ծածկելով յերկրի զանապական ըզ-
գանձն ։

Այսօր երկնայնոց խըմբերըն պար ա-
ռեալ
Եղանակէին շուրջ ըզգերեզմանաւն ։
Այսօր երգակցեալ նոցին Առաքելոցն,
Եւ դասք կուսանաց գովեն ըզմայր
կուսիցն ։

Այսօր փոխադրեալ ՚ի զգայական
բնութեանց
Զմարմինըն մաքուր յանմանալեաց կայ-
եանսն ։

Այսօր ցընծութիւն երկնաւորաց դա-
սուցն
Համամաքրենի կուսին երթալն յեր-
կինս ։

Այսօր շնորհեցաւ բըժշկութեանց
պարգեւ
Պատկեր տիրամօրըն լուսազարդեալ
յերկնից ։

Այսօր երգս առեալ գոչեմք և մեք
ձայնիւ
Կուսական տօնիւս Երրորդութեանն
ըզփառս ։

# ՑԱՐԴԱՐԱԿ

ԱՆԱՐԱՏ տաճար և տապանակ
լուսոյ,
Մայր անհարսնացեալ Աստուածա-
ծին միշտ կոյս,
Զքեզ նախատեսացն գուշակեալ
ցուցին
Ծառ կենաց 'ի մէջ աստուածատունկ
դրախտին :
Զքոյդ Աբրահամու 'ի խորանին ըն-
ւեալ
Զաւետեաց ծընունդ 'ի ծնեցելոյ Բա-
նէն :
Զքեզ Մովսէս անկէզ 'ի մորենին
տեսեալ,
Եւ սափոր ոսկի մանանայիւ լըցեալ :
Գեղմըն Գեդէոն քաղցըր ցօղով լը-
ցեալ,
Եւ աղբեւր կընքեալ Սողոմոնի տե-
սեալ :
Զքեզ Եսայիաս ծանոյց կոյս յղա-
ցեալ,
Տաճար անձըռնին և ամպ թեթեւա-
գին :

Դուռն ախեալ փակեալ Եզեկիէլ ե-
ցոյց ·
Լեառըն վիմածին զքեզ Դանիէլ ե-
տես ։
Քեզ Գաբրիէլն 'ի կատարումն եկեալ
Աւետեաց ձայնիւ զուրախութիւն զո-
չէր ։
Դու զանտանելին յորովայնի տարար,
Եւ ծընար մարմնով զառ 'ի Հօրէ
ծընեալըն ։
Դուռն արեւելեան Ադին դրախտին
բացօղ,
Եւ արեգականն արդարութեան ծա-
գօղ ։
Զքեզ այսօր, որդին քո միածին ե-
կեալ,
Փոխեաց 'ի յերկրէ 'ի յերկնային խո-
րանսն ։
Հիացեալ տեսին խմբնալեացըն դասք,
Մարմին հողեղէն վերասլացեալ յեր-
կինս ։
Քեզ առ 'ի պատիւ ընթանային յա-
ռաջ,
Գունդք Սերովբէից Թեւաքօղեալ
դիմօք ։

Զքեւ քառակերպիցըն հոյլքն ա-
կումբ առեալ,
Սպասաւորէին հրեշտակական երամքն։
Դու 'ի յերկնաձեմ յաստուածակերպ
խորանին
Զանազան փառօք պայծառացեալ
մըտեր։
Զքեզ Առաքելոցըն գօվէին գումար,
Եւ դասք կուսանացն հըրճուողական
ձայնիւ։
Քեզ այսօր տօնեն եկեղեցւոյ ման-
կունք,
Եւ խոստովանին Աստուածածին միշտ
կոյս։
Լուր պաղատանաց յուսացելոցս 'ի
քեզ,
Եւ լեր բարեխօս առ միածին Որդին։
Ծունր առ 'ի խոնարհ ընդ հաշտու-
թեան մերոյ
Կըրկնեա, մայր կենաց, կամեցողին
բարեաց։
Ազգերս արտասուաց ընդ փըրկու-
թեան մերոյ
Բըղխեա յորդառատ, մարդասիրին
ծընօղ։

Սուրբ զեկեղեցիս անշարժ պահել
յաւէժ,
Եւ զհաստատեալս անփոփոխ մնալ
'ի սմա։
Եւ 'ի գալըստեան մեծի ծագման լու-
սոյն
Մըրցուք յառաջաստ ընդ իմաստուն
կուսիդ։
Արժանաւորել ընդ անմոռացոց դա-
սուցն,
Փառս վերահընչել Երրորդութեա-
նըն միշտ։

# ԽԱԶԻ

ՆՈՐ դրախտին Եկեղեցւոյ
Ծառ կենաց տընկեալ 'ի մէջ,
Զոր ոչ Քրոբէիւք պահեալ
Այլ դիւրահուպ 'ի մէնջ։
Երկակի ներհակաց տիպ,
Մահաբերին տընգոյն ձեւով,
Եւ կենարարան 'ի քէն
Պըտուղ կենաց մարդկան
Րոպէից բանաւորաց
Բանալի եղեր դրախտին,

Մրրոց վերըստին 'ի նոյն
Անփոփոխելի կայիւք ։
Սեռն անապակ սիրոյ Էին
Ծածկելոյն առ Հօր յայտնիչ ,
Զորդին իւր տալ վասն իմ
Ի մահ մարմնով 'ի քեզ ։
Իմանալի տապան նոյեան
Զօժանդակեալքս 'ի քեզ պահեա,
Ի հեղձմանէ մեղաց ծովէս
Եւ 'ի հրեղէն գետոց ։
Սաբեկայ ծառոյն նըման
Ոչ խոյ յողջակէզ կախեալ ,
Այլ գառն Աստուծոյ զենեալ
Մեզ հաշտութեան նուէր ։
Ի Գողգոթա կանգնեալ սանդուխք
Տեսլեամբ Յակոբայ ցուցեալ ·
Հրեշտակաց իջման յերկիր ,
Մարդկան ելից յերկինս ։

## ՑՈՐԴՈՐԱԿ

ԿԵՆԱՑ փայտ տնկեալ ընդ քեզ տըն-
կողին զԵդեմ,
Զտընկագործն էից 'ի քեզ պըտ-
ղաբերեցեր ։

Անհասին Սերովբէից բոցեղէն թեւոց,
Հողեղէն բնութեանս եղեր դիւրահաս պատճառ։
Թագաւորին երկնից 'ի քեզ տարածմամբ ձեռաց,
Ժողովեաց ըզհեռացեալսն ընդ թեւօքն իւրովք։
Որ ըզկապ մահու եղոյծ կապելովն 'ի քեզ,
Ի կապից մեղաց ըզմեզ արձակել հայցեա։
Դեղոյն դառնութեան փոխան, զոր վասն իմ էարբ,
Դառնաբեր վիժանք հոգւոյս քաղցունք բղխեսցեն։
Ի քեզ բեւեռմամբ ձեռացըն զիմս արձակեա,
Հեղուսեալ ոտիւքն ուղղեա ըզգնացս իմ յերկինս։
Կենդանույն մահուամբ մարմնով զհոգիս իմ կեցո.
Խոնարհեալ գլխոյն ընդ իմ, զիմըս բարձրացո։
Որ խոցմամբ կողին տիգաւ վասըն կողածնին՝

*Մաքրեցար հրահոս բըղխմամբ կըր-
կին մըտակացն ,
Սրբեա ջրովն այնու զմարմնոյս յան-
ցանս արտասուօք ,
Եւ զհոգւոյս մեղանս մաքրեա ա-
րեան մըտակաւն :
Ի դըժոխս խըղճմամբըն քեւ ազատեաց
զգերեալըն .
Ազատել մաղթեա և զիս 'ի բանդէ
մեղաց :
Հոսեալ հրեղինաց դասուցն առ գե-
րեզմանին ,
Զքոյդ նախապատիւ անուն վե-
րաձայնէին :
Առ խընկաբերիցըն դաս փողէր զը-
ւարթունն .
Զխաչելեալըն, ասէ, խընդրէք, չէ
աստ այլ յարեաւ :
Յորժամ լուսափայլ ծագիս 'ի յարեւ-
ելից
Զմեզ լուսաւորեա փառօք, նըշան
տէրունեան .
Որով զուարճացեալ ցընծան դասք
խաչակրօնից ,
Զուարճակից լինել նոցին զմեզ ար-
ժանացո :*

Ցանկալի վերնոյ դաստուցըն համնա_
դամեա ,
Ընդ նմին Եղբայրութեանդ եր_
դել միշտ ըղձիմսա :

## Ի ՆՈՅՆ

ԳԱՐՈՒՆԱԿ բերող ուրախարար
այգոտղոյն ,
Հընչումն տաղկուացն Ճըշմարտութեան
որթոյն .
Սեղանն հոգեւոր յերկնից իջեալ հա_
ցին ,
Խառնարան անոյշ երկնաւորական աղ_
բերն :
Խորհուրդըն ծածկեալ 'ի սկզբանէ
յազգաց ,
Քեւ յայտնեալ ցուցաւ Բանն 'ի Հօ_
րէ ծընունդ :
Զըլոյս փառաւոր արկօղն որպէս զօթոց
ծածկոյթ
Մերկ կրեցեր մարմնով ընդ մերկու_
թեան մերոյ :
Արեգակն Աստուծոյ համեալ 'ի քեզ
ներկար ,

Եւ յահեղ բոցոյն ոչ տապացեալ կի-
զար :
Աթոռ անեղին քառակերպեան գը-
տար ,
Եւ կառք հըզօրին հեծելութեան
մարտի :
Որով 'ի դըժոխսն իջեալ փրկեաց
զգերեալսն ,
Եւ քեւ ազատեաց զեկեղեցի իւր
սուրբ :
Պահեա 'ի հաւատոյս ճըշմարտափառ ըզսա ,
Ի սմա և զմանկունս հաւատոյ ան-
շարժ :
Զգիր պարտեաց մերոց լուասցես
Ջըրոյն բըղխմամբ ,
Ի կեանս գրեսցես արեամբ 'ի քեզ
մածեալ :
Եւ յորժամ ծագես յարեւելից նըշան ,
Շնորհեա մեզ զաւակ խաչակրօնից
դասուցն ․
Ընդ նոսին երգել միշտ օրհնութիւն
յաւէտ
Սուրբ Երրորդութեանն փառք յաւի-
տեանս ․ ամէն :

# ՄՐԲՈՑ ՀՐԵՇՏԱԿԱՊԵՏԱՑՆ
# ԵՒ ԱՄԵՆԱՅՆ
# ԵՐԿՆԱՅԻՆ ԶՕՐԱՑ

ՓԱՌԱԶԻՆ *լոյս երրեակ և մի Աստուածութիւն*

*Բանիւ յանէից զերկրորդ լուսոյ ստեղծ նախ քան զգոյս ։*

*Գերագոյն գոլով հուպ խորական փառաց սեսօղք*

*Դասք Սերովբէից, և Քերովբէք, հոյլք Աթոռոցն ։*

*Երկրորդ պարունակ պարագրելոց ազգումբք վեհից ,*

*Զօրութեանցըն խումբք Իշխանութեանց , և Տէրութեանց ։*

*Երրորդ հուսկ յետոյ պետականացըն Պետութիւնք ,*

*Ընդ Հրեշտակապետան և Հրեշտակացըն բազմութիւնք ։*

*Թագաւորք յաւէտք և քահանայք մըշտանուէրք ,*

*Ժառանգորդք երկնից արքայութեանն 'ի սկըզբանէ ։*

Ի Հօրէն լուսոյ լոյս գիտութեան
միշտ ընկալեալք •
Լոյս իմաստութեան որդւոց մարդկան
վերաբերողք ։
Խոնարհագունիցն 'ի վեհագոյն դա-
սուցն առեալ
Ծագումն իմաստից լուսապայծառ
հեղումն յարփւոյն ։
Կամաւոր բարիք 'ի յաղբերէն բար-
ւոյ հոսեալք ,
Հոգիք հարկաւորք վեհին կամացն
սպասաւորք ,
Զեւանան տեսլեամբ ձիւնանըման
պատմուճանաւ ։
Ղամբար բոցափայլ վառեալք 'ի տիպ
ըղձայական ,
Ճառագայթ փառաց գերապայծառք
և պանծալիք ,
Մերձ յանհըպելին լոյսըն մաքուր
աստուածութեանն ։
Յիննեակ թիւ դասուց ըստ խորհըր-
դեան դրամից տասանց ,
Նոյն և հարիւրոց 'ի յանապատ յեր-
կինս հօտից ,
Հարժեալ միակին նըւազեցոյց ըղկա-
տարեալն • 

# ՅՈՐԴՈՐԱԿ

ՍՈՐ տօնիւս երկնաւորաց հրեշտա-
կական դասուց,
Եկայք ցնծասցուք, նոր ժողո-
վուրդք, այսօր։
Երջանիկ զուարճացելոցն այսօր յա-
ւէտ հոգւոց,
Հաղորդք եղիցուք ուրախութեամբ
երգով։
Բարունեացն իմանալեաց հողեղինացս
ազանց,
Մատուսցուք բանիւ աղերսական
նուէր։
Սրբազանք և երկնայինք սատուա-
ծամերձ հոգիք,
Քահանայապետք միջնապաշտօն
բուրմանք։
Նախկան բարւոյն պաղատեցէք յաւէժ
Վասն եկեղեցւոյ մանկանց պահել
անփորձ։
Սովկայք յերկրաքանչիւր մեզ օգնե-
ցէք աւուր,
Բարեկամք բարիք և մարդասէր
հոգիք.

Ի մարմնոյս լուծանելոյ հոգւոյս կա-
պից ժամու,
Եւ 'ի վերջնային անլոյծ կապիցն
անմահ,
Երեւեալ բարեկամացդ զուարթա-
գին տեսլեամբ,
Աւանդել զհոգիս մեր յարդարոց
կայանս:
Անդ 'ի յարութեան, յորժամ փո-
ղով մեծաւ
Ժողովէք զընտրեալսն առ 'ի չորից
հողմոց,
Յամպս լուսաւորս ընկալարուք ըզ-
մեզ,
Ընդ առաջ փրկչին վերաբերել
յերկինս:
Սրբասաց ձայնիւ վերադոչել ընդ
ձեզ,
Սուրբ հրեշտակապետք, զերեքսըր-
բեան նուագս:
Բարեխօս և 'ի յայժմուս կենդա-
նութեան լերուք,
Փրկել յանցանաց պատուհասից
զանձինս:
Այսօր խոնարհեալ, ով Միքայէլ
յաղթող,

Մեծըդ Գաբրիէլ, մեզ առնակից
լերուք ։
Նոյնք և պահապանք յելս և 'ի մուտս
եղեալք ,
Ի յորոգայթից չար Թըշնամւոյն
փրկել ։
Սուրբ Երրորդութեանըն միշտ եր-
գել ըղփառս,
Այժմ և հանապազ 'ի յաւի-
տեանս , ամէն ։

## Ի ՍՈՒՐԲ
## ԱՌԱՔԵԱԼՍՆ

ԱՌԱՔԵԱԼՔ Աստուածորդւոյն
Ի ծոցոյ Հօր առաքելոյն ,
Բանաւոր հօտից հովիւք ,
Բանին կենաց պայծառ քարոզք ։
Գեղեցիկ ոտք ընթացեալք ,
Աւետաւորք խաղաղութեան ․
Դատաւորք Իսրայէլի ,
Աթոռակիցք Հօր անդրանկին ։
Երկնաւոր Թագաւորին
Կարգեալ իշխանք տիեզերաց ․

Զինուորեալք արիաբար
  Ընդդէմ մահու չար իշխանին:
Երկնատատանք նախապատերազմեալք,
  Եւթանասուն թիւ կատարեալք:
Ընտրեալ յառաջ 'ի սկզբանէ,
  Սուրբ և մաքուրք յորովայնէ:
Թագաւորորդք գումարեալք,
  Ցերկնաւորէն 'ի մարտ խմբեալք.
Ժուժկալեալք 'ի պատերազմ,
  Զհոգիս մարդկան գերի առեալ:
Ի Սաղիմ քաղաք վեհին
  Զինափայլեալ սպառակացոյք,
Լեզուօք հրեղէն լուսաւորեալք,
  Ի վերնատանն հոգիացեալք:
Խորհրդոցն աստուածայնոց
  Առատաբաշխ հազարապետք.
Ծնօղք սրբոյ աւազանաւն
  Զորդիս մարդկան յորդիս լուսոյ:
Կրկնատատեամբ կաթն արբուցէք
  Տղայացելոցն առ 'ի Քրիստոս.
Հացիւ կենաց յերկնից իջեալ
  Կերակրեցէք զկատարեալս:
Զայնեցէք առ յիմարելոցն
  Բարձրագոչ ձայնիւ մեծաւ,
Ղամբարմամբ լուսոյ բանին
  Գալ 'ի յարքունին իմաստութեան:

Ճշմարիտ որթոյն ատեղունք
Եւ բարունակք ողկուզաբերք,
Մշակին երկնաւորի
Յօժարամիտ խնամոց պտղաբերեալք։
Յորդահոս գետոց գնացիւք
Քառավտակեան 'ի յԱդենայ,
Նորակերտ քաղաքին սուրբ
Առոգելով ուրախանայ։
Շնորհատուք հոգեղինաց
Ձրրի պարգեւըս հրեղինաց։
Ունելով իշխանութիւն՝
Թողուլ ըզմեղս երկրաւորաց։
Զոր վերաց աղ մորմոքիչ
Մաքուր հոգւոյ լուսաւորիչք։
Պարագլուխք պարուն վեհից
Ի Միածնէն Հօր հարսանիս։
Ջուր կենդանի բղխմամբ Հոգւոյն
Ի ծարաւի մեզ արբուցէք.
Ոտանիւ քաղցու բըժըշկական
Զհիւանդութիւնս ողջացուցէք։
Սուրբ Հոգւոյն տաճարք մաքրեալք,
Իմաստութեամբ նորին լըցեալք։
Վարդապետք 'ի ձկնորսաց,
Եւ հանճարեղք 'ի տգիտաց։
Տանն Աստուծոյ սիւնաւորք բարձք,
Վէմք պատուականք նոր Սիոնի։

Րաբունք հրճուալք վարդապետաց ,
Եւ ուսուցիչք հանճարեղաց .
Ցօղով արեամբ ձերով յերկրի
Պըսակեցէք զեկեղեցի :
Իւսմամբ լուսոյ այսօր տօնէ
Սուրբ զյիշատակ ձեր պանծալի :
Փառօք ըզձեզ պըսակողին
Փառք և պատիւ մատուցանեմք .
Քաւութիւն մեզ հայցեցէք
Յառատաձիր պարգեւողէն :

## ՅՈՐԴՈՐԱԿ

ԼԾԿԱՑՔ զուարճացեալ պայծա-
ռացուք տօնիւս ,
Րաբունեաց մերոց աշակերտեալ ման-
կունք ,
Գովասանական քաղցըր ձայնիւ եր-
գով
Սուրբ Երրորդութեանն մատուս-
ցուք նուէր :
Աղերս մաղթանաց յիշատակի սոցա
Յուսոյն բոլորից առատն առաջի արկ-
ցուք .

Սոցին պաղատանք, որ վասըն մեր առ
քեզ,
Ընդրեցին հաճոյ կամեցողիդ բարեաց.
Նորոգեա ըզմեզ 'ի հնութենէ մե-
ղաց.
Երկնային ցօղովդ ըզծարաւիքս արբո.
Բաշխեա միաբան 'սա Առաքելոց դա-
սուն
Սրբութեամբ սիրով որպէս 'ի վեր-
նատունն։
Ի յահեղ աւուր քում դալըստեան
մեծի
Սրբոց ընտրելոց արժանաւորացուք խըմ-
բից.
Ի ձայն ցընծութեան ընդ անդրանկաց
գրելոց
Փառս վերագոչել Երրորդութեանըն
միշտ։

# Ի ՍՈՒՐԲ
# ՄԱՐԳԱՐԷՍ

ՄՍՏՈՒԱԾԱՑԻՆ խորոցն անճառ-
խորհրդականց, սուրբ մարգարէք,
Բանին պատմողք յառաջագոյն
Ապագայից եղելութեան.
Գաղտնի գործոց աստուածորդւոյն
Տնօրինական սուրբ խորհրդոյն
Դաւանողք ամենեքեան
Բազմապատիկ օրինակօք:
Երեւեցաւ 'ի Ջրոյն Մովսէս,
Գաւազանաւ զջուրսն հերձող,
Ըզծնունդն նորա ըզկուսական
Ի մօրենին անկիզական.
Նշանածին արքայ Դաւիթ,
Հայր ըստ մարմնոյ Հօր Միածնին,
Ըզցօղ հասեալ վերայ գեղման
Տըպաւորեալ Որդւոյ իջման:
Թագաւորաց օծողն իւղով.
Սամուէլ պտուղ ամլոյն գոլով.
Ժառանգ եղեալ նոր օրինաց,
Փոխան Հեղեայ հինն օրինաց:

Իայխաս տայ մեզ նըշան
Ծնանել կուսին առանց սերման .
Լըսող ձայնի սրովբէական ,
Տեսող փառաց աստուածութեան :
Խըստամբերողըն Հեղխաս ,
Երկնից փակողն և արձակողն .
Ծայրագոյն յերկրի ճըգնեալ ,
Հրեղէն կառօք յերկինս ելեալ :
Կըրկին հոգւոյ նորա ստացողն
Եղիսէոս սուրբ տեսանողն ,
Համանըման վարդապետին ,
Զորդի այրւոյն յարուցանող :
Ձայնիւ պատմողն Եզեկիել
Զքառակերպեանըն Սրովբէից
Ղօղեալ խորհուրդ բացայայտէ ,
Զաւետարանըն քարոզէ :
Ճըշմարիտն 'ի յարգանդէ
Երեմիաս կոյս մարգարէ ,
Մեզ երեսաց հոգւի ասէ
Զլոյսըն Քրիստոս որ 'ի Հօրէ :
Յայսոսիկ յեռեալ խըմբից
Երկոտասան մարգարէից ,
Նոյնապար քարոզեցին
Առ 'ի յերկիր զգալուստ Բանին :
Շնորհատու շնորհաց Հոգւին
Գործի ստանայր զվեհուս նոցին ,

Ուսուցանէր նոքօք մարդկան
  Զանճառ խորհուրդն տէրունեան:
Զորրորդ դարուն սկիզբն արարեալ
  ՅԱբրահամուն սուրբ աւետեացն,
Պարառաբար պարագրելով,
  Ի վեցերորդն աւարտելով:
Ջրնջէր նոքօք զխաւար հոգւոց
  Յիսրայէլեան ժողովրդոց:
Ուահ գործէր 'ի յօրինացն
  Յաւետարանըն Քրիստոսի:
Սոփոնիաս և Անգէաս,
  Ովսէ Ամովս և Միքիաս,
Վեհագունին տիպըն Յովնան,
  Յովէլ քարոզն և Աբդիաս,
Տեսանողն Զաքարիաս,
  Աւետաւորըն Սիոնի,
Բակերտեալ մեծն Ամբակում,
  Նաւում, հրեշտակ Մաղաքիաս:
Յանկալըն Գաբրիէլի,
  Հրաշից տեսողըն Դանիէլ.
Իփսեալ նորին վարուց մանկունքն,
  Յորոց և հուրըն պատկառեաց:
Փառք են սոքա ազգի մարդկան
  Եւ լուսատուք տիեզերաց.
Քրիստոսի նախաքարոզք,
  Որում պատիւ երգ սրբասաց:

# Ի ՆՈՑՆ.

ՆՈՐԱՀՐԱՇ տօնիւս տեսանողացըն
ցընծացէք.
Ունակաց Հոգւոյն յիշատակա-
պայծառացուք :
Երրաբուն Էին ծովածաւալ շնորհէին
հոսման
Զ հոգիս յարդարեալ ըստ ծարա-
ւուտ երկրի յարբուցին :
Րաբունւոյն էից Հոգւոյն սրբոյ աշա-
կերտեալք
Ընտրեալք 'ի հովուաց, հովուէր
նոքօք զհօտն Իսրայէլ :
Սրբեալ մաքրութեամբ իշխանական
հոգւոյն իմաստ ,
Տպաւորեալ 'ի սմա սոքօք ըղձոյան
արփիական :
Էին անեղին անձառ խորհրդոց խոր-
հրդապետք
Տեսլեամբ անմարմնոցըն հրեղինաց
լուսաւորեալք :
Սոսկալի անհաս գոյին գոլով տեսողք
նոցա ,

Զուարճացան աչք գերազանց
ունկն 'ի լսել։
Ի Ներկայ ժամու զապագայից տե-
սեալ զխորհուրդ,
Հոգւոյն ծանուցեալ զանեղականն
իբրեւ եղեալ։
Երկնաւորք յերկրի անճառելեացն
մեզ պատմողք,
Ամպոյ նման հոսեալ զանձրեւ կե-
նաց առ ծարաւիս.
Բանեալք 'ի Սիոն եկեղեցիք հեթա-
նոսաց,
Տօնեմք զաղբերաց Իսրայելի ըղձի-
շատակս։
Գոչմամբ մաղթանաց մեղաւորացս
թողութիւն
Հայցեմք 'ի տեառնէ. որում պա-
տիւ եւ գոհութիւն։

# ՍՐԲՈՑ
# ՀԱՅՐԱՊԵՏԱՑՆ

ԱՅՍՕՐ մայր Սիոն ցնծայ տօնե֊
լով,
Բանայ զառագաստ, զարդարեալ փառօք.
Գոչէ խնդութեամբ յօրս յիշատակի
Դասուց ընտրելոց սուրբ հայրապե֊
տացն,
Երջանիկ խմբից սուրբ վարդապե֊
տաց:
Զօրք երկնից ընդ մեզ տօնակից լինին.
Էրկիրս երեւի երկնից միահաղոյն,
Ընդ իննեակ պարուց ասա պարա֊
գայից:
Թագաւորն երկնից փոխան իւր կար֊
գեաց
Ժառանգ աթոռոց զքահանայա֊
պետսն:
Ի Հոգւոյն լցեալ սրբոյ գիտու֊
թեամբ,
Լուսաւորեցին սուրբ զեկեղեցի:
Խորհրդով ծանեան ըզխորս Աստու֊
ծոյ,
Ծանուցին բանիւ բանաւոր հօտից:

Կենացըն հացի քաղցկերց բաշխօղք ·
Համեղաճաշակ գինւոյն մատռո-
ւակք ,
Զայնիւ կոչեցին առ 'ի ճաշակել ։
Դօղեալ յաշխարհէ զմեզ արգելմու-
թեամբն ,
Ճառագայթ լուսոյ յերկիր ծագե-
ցան ·
Միածնին քարոզք ճշմարիտ բա-
նիւք ,
Յանմահ աղբերէն ըզմեզ արբուցին ,
Նոր նորոգելով հոգւով գիտու-
թեամբ ։
Շարժեալ վերկայեցն 'ի յորովայնէ ,
Ուրախ արարին զքաղաքս Աստուծոյ ։
Չարին արմատոց տապալեչ տա-
պարք ,
Պարուց ոչխարաց հովիւք և տածողք ,
Ջրով կենդանարար սնուցանողք գա-
ռանց ,
Ոռահիւք 'ի յերկինս առաջնորդեցին,
Արբելով զհոգին սուրբ առաքելոցն ։
Վարդապետք բարիք բանիւք և գոր-
ծովք ,
Տանս եկեղեցւոյ ողնաշարք իմաս-
տունք ·

Բարունք կատարեալք տաղայոցս 'ի
Քրիստոս,
Ցօղեցէք ըղկաթն խառնեալ ընդ մե-
ղու,
Իւխթիւ սուրբ հոգւոյն ըղհեղն և
ըղնորս:
Փութացեալ եղէք առ հովիւըն քաջ,
Քաւիչ մեր լերուք բարեխօսելով:

## ՑՈՐԴՈՐԱԿ

ՍՈՐ դըրախտի քո, տէր, զոր տըն-
կեցեր յերկրի,
Վարդ անուշահոտ և մանուշակ քըր-
քում
Առեալ ընծայեմք քեզ թագաւոր
փառաց,
Գերապանծ ըզվարս աստուածայնոցն
արանց:
Բանաւոր ծառոց զերախայրեաց ար-
տուղ,
Անցեալ ընդ երկինս քահանայից-
նուիրեմք.
Նոյն խունկ բուրվառօք զաղօթըս
սուրբ սոցա

Ի հոտ անուշից մատուցանեմք քեզ,
տէր ։
Սոցին մաղթանօք և մաքրական վա-
րուք
Նորոգեա զմեզ 'ի հնութենէ մեղաց։
Երանականաց արժանացո դասուց,
Բազմեա ընդ նոսին զմեզ 'ի լուսոյ խո-
րանսդ ։
Սրբեա զխաւարին 'ի մէնջ զխորհուրդ-
մըտաց,
Եւ լուսաւորեա խընդրուածօք սոցա,
Սոցին հետևել լուսաշաւիղ ընթացից,
Ի յանճառելոյդ արփիական լուսով,
Երգել ընդ նոսին Երրորդութեանդ
ըզփառս
Ցայժմուս յաւիտեան և անզըրաւ
յաւէտ ։

# Ի ՆՈՑՆ

ՆՈՐՈՑ գինւոյն խնդութեան
Ցօղիս նորոգ արկօղն Ցխաւս,
Երգախառնմբ միահլճն խորհուրդ
Ի հնումն անհաս նորոց պատրաստեւ.
Բննակաւն լոյս յարփոյն ծագեալ
Ի բարունից փայլեալ յաշխարհս,
Ստղկես ծով ունեբնբ լերխ
Սդքօք լըցեալ գինութեամբ ատուսն.
Երգէ Դաւիթ գետք Աստուծոյ
Ջրովք պարարին բղխմամբ Հո-գւոյն.
Սրմին Նըման համբարձան գետք
Ի ջուրց բազմաց ձայն քարոզչաց.
Իմանալի գետոցս այս գնացք
Ուրախ առնեն զքաղաքըն սուրբ.
Եկայք սատծեալք 'ի ջրոյն կենաց
Տընկեալք 'ի գաւիթս Աստուծոյ.
Բամեալք 'ի մի զմեղ ուընկողացս
Զտօն կատարեմք 'ի տօնըն տեառն:
Գոչեմք, ընդ հարցն համաձայնեալ,
Զփառս համագոյ Երրորդութեան:

# Ի ՍՈՒՐԲ ՎԿԱՅՍՆ

ԱՐԵԳԱԿՆ արդար ըղհուր սիրոյ ծագեալ,
Զանհաւատութեան սառըն մե-ղաց հալեալ,
Բանաւոր ծառոց երեւեցան ծա-ղիկք
Երփնազարդ գունով, անուշահոտ բուրմամբ :
Գարուն հոգեւոր դալարացոյց զհո-ղս .
Գօսացեալ որընկոց կանաչացան տաղարթք :
Դրախտին Ադինայ ծառք բազմացան յերկրիս ,
Ի տանն Աստուծոյ արմաւենիք տըն-կեալք :
Երկնից լուսաւորք իջեալ շըրջին ընդ-մեզ,
Եւ աստեղք պայծառք համաբնա-կից մարդկան :
Զօրք անմարմնականք զըւարճացեալ տօնեն ,

Մարմնաւոր զօրաց համադասեալ
նոցունց ։
Էրեւեալ սրբոցն 'ի հանդիսի ճը-
գունս
Զօրացուցանել 'ի հոգեւոր մար-
տին ։
Ըղհրաւէրն եստուն 'ի հարսանիսն
երկնից ,
Ընդ որս և մըտին արեանբերանդ-
զգեստուք ։
Թագաւորն անմահ 'ի յաշխարհէ
մահու
Առեալ խաչ զինուորս , անմահա-
ցոյց բնութեամբ ։
Ժողով զինուորաց Թագաւորին երկ-
նից
Գրեցան , ժառանգել զԵրուսա-
ղէմ վերինն ։
Ի յերկրի ճըգնեալ չարչարանօք մար-
մնոյ ,
Ի յերկինս եղին գերապայծառ հո-
գւով ։
Լուան զկենարար հովուապետին բար-
բառ ,
Ընթացեալ 'ի յաղըն բանաւոր զեն-
մունք ։

Խաչի և մահուն Ճանապարհէն հոտէն
Եղեն հետևեալք աշխարհիղեալ
զաւակներն ։

Ծընեան մերըստին աւազանաւ նորով.
Մըկըրտեալ արեամբ զբաժակ մա-
հու արբին ։

Կոյսք խնասատութեամբ զլապտեր հո-
գւոյ լուցեալք ,
Կանացի բնութեամբ մահու եղեն
յաղթողք ։

Հուր սիրոյ Քրիստոսեան սուրբք փեսայոյն
վառեալ ,
Զհուր մեղաց բոցոյն զայն շիջու-
ցին արեամբ ։

Զինուորայլ զօրուց ըղձապատանու Ճանդ
լուացեալ ,
Գոյն արեան մարմնոյ պըսակ փա-
ռաց ներկեալ ։

Ղամբարմամբ լուսոյ 'ի յառագաստ
մըտին .
Մաքուր հարսանեօք ուրախանման
յաւէժ ։

Ճըշմարիտ վկայք Աստուածորդւոյն
եղէք ,
Արկայեցելոյն Հօր կամաւոր մա-
հուամբ ։

Միածնի Բանին մարմնով վասն իմ
մահու
Մահակից գոլով չարչարանաց կը-
ցորդ,
Յամենայն աղանց ընծայեցայք ար-
տուղ
Մեծ քահանայքն երախայրեաց նը-
ուէր :
Նռնենեաց նըման յետ գարնայնոյ
ծաղկեալ,
Ծաղկեալ նշենեաց 'ի յերկրորդին
սկըզբան :
Շարադրին քննուածք անդամքդ ձեր
հատեալ
Աստիճանք եղեց յերկրէ յերկի-
նըս մեզ :
Որոց ձեր հատուածովք մեզ ուղղեցէք
շաւիղս,
Ի յերկրէ յերկինս վերափոխել ա-
տէր :
Զարաչար կիզմամբ ողջակիզեալ մար-
մնոցդ
Ըզմեզ փրկեցէք 'ի կիզանող բո-
ցոյն :
Պատուական անդամք յօդեալք 'ի
գլուխն Յիսուս .

Ըզմեզ յօդեցէք ընդ նոյն հիւսմամբ սիրոյ ։
Զախմամբ անդամոց ձեր ընդ սիրոյ նորին՝
Զհոգիս մեր յախտից բժշկեցէք ցաւոց ։
Ուահիւք յաշխարհէ հալածանօքն ըզձեզ
Յաշխարհէն վերին բարձրացուցէք ըզմեզ ։
Սոսկալի ծրգմամբք սուրբ վըկայից քոց, տէր,
Ի հնութեանց մեղաց վերանորոգեա զմեզ ։
Վէրաց քերանաց և գաղանաց քանցիւք
Ի թունից վէրաց չար վիշապին փրկեա ։
Տարախիլ ունկամբք և կուրութեամբ աչացն
Լոյս ծագեա յոգիս և զլսելիս մաքրեա ։
Բախձանից աղանց ոլորամականաց կըրիւք՝
Զմեզ 'ի սգոյ մեղաց յուրախութիւն դարձո ։

Յաւալէց կենօքն և խաւարին բան-
տիւքն՝
Ի լոյսն ընդ նորին շնորհեա և մեզ
լինել։
Լուծմամբ անդամոցն ՚ի կիզանող
տապակն՝
Զքոց տապոյ մեղաց չէջր յոդւոյս
մասանց։
Փառացն անճառից ընդ երջանիկ
վըկայսն
Հաղորդս զմեզ ընկալ աղաչանօք
սոցա։
Քեզ ընդ երանեալ մարտիրոսաց դա-
սուցն,
Փառաց Թագաւոր, մատուցանեմք
ըղջփառս։

## ՅՈՐԴՈՐԱԿ

ԲԱՆԻՒ աւետաւոր
Բարոտնաբար բարբառեսցուք
Առ քեզ, եկեղեցի,
Դուստրդ վերինդն Սիոնի։
Աստեղս անթիւ ծընար
Գերապայծառ և երկնաձեմս,

Զարդս աղաւնակերպս բերելով
Թաթաւելով արեամբն իւրեանց ։
Նըստաւ յառագաստն
Սպիտակափայլ բոցանըման ,
Զոր կազմեն որդիք քո քեզ
Զարչարանօք և սուրբ արեամբ ։
Ի պարզ ու 'ի գերագանց
Բնակես 'ի լոյս դու անմատոյց ,
Փոխանակ խաւարայլն
Բանտից նոցա և կապանաց ։
Վանել զքոյդ զօրութիւն
Ոչ կարացին դրանք դժոխոց ,
Զի փեսայն խաչեալ ընդ քո
Եւ հարսնորդիք քո խողխողեալ ։
Կենացըն կերակրովն
Եւ բաժակաւըն զուարճանաս ,
Փոխան ժուժկալութեան
Նոցին քաղցի և ծարաւոյ ։
Անմահ ունիս փեսայ
Թէ և սիրով քոյին մեռաւ .
Ի կեանս են և որդիք
Թէպէտ ետուր գերեզմանի ։
Յանեղծ յաւիտենին
Բերկրեալ խընդաս երբեմն ամուլ ,
Յորժամ բնակես 'ի տան
Մայր՝ քո որդւովք ուրախամիտ ։

Սիրով անճառ կապիս
Ի սէր անման քո փեսայէն,
Եւ զորդիս քո ընդգըրկեա
Խանդակաթոտ սուրբ համբուրիւք։
Նորոգ Նորափետուր
Լուսապայծառ յորժամ ծագիս,
Արեգական նըման
Ցոլքայութեան ըստ հրամանին,
Ի մի յարմարութիւն
Զոգիս ընդգրեալ քոց անդրանկաց
Ժողովեալ բարեխօսեա
Ընդ կենդանեացըս փրկութեան։
Նոյնաբար որպէս ծընար
Լուսազարդեալ աւազանաւն,
Վերըստին զմեզ նորոգել
Ի հնութենէ մեղաց մերոց։
Երրեակ յաւիտենիւք
Շնորհել առատ ողորմութիւն,
Ցայժմուս և յապագայն
Ի յանըսպառ յաւիտենին։
Բանեալ'ի մի լրութիւն
Կաթողիկէ վերին Սիոն,
Ըզմեզ զամենեսեան
Ընդ երանեալ սուրբ վըկայիցն։
Սըրբել սպիտակափայլ
Ըզպատմուճան հոգւոց մերոց,

Արեան նոցա հեղմամբ
Եւ հոտանոյշ պատարագօք ։
Ի գլուխըն վերըստին
Ըղմեղ սիրով նորին յօդել,
Զայրի եղեալ հոգիս
Ընդ փեսային միաւորեալ ։
Սրբել զարիւն գառանցս
Եւ սուրբ զաձիւն ողջակիզացս ,
Երկրորդ տալ աւազան
Ի մաքրութիւն մեղաւորաց ։
Էրին երրեակ միոյ
Գըսակելոց պըսակողին ,
Որդւոյ ընդ Հօր Հոգւով
Փառք 'ի յայժմուս և յաւիտեան ։

## ՅՈՎՀԱՆՆՈՒ ԿԱՄՐԱՊԵՏԻՆ

Անմարմնոցըն հրեղինաց
Մարմնով հաղորդ սուրբ Յովհաննէս.
Բանին Հօր բանիւ 'քարոզ,
Մեծի լուսոյն նախատեսող.
Գարնան գուշակ երկրի մերում,
Քաղցրախօսիկ ձայն տատրակի ։
Դրախտին հոգւոյ աստուածատունկ

Առոգանող ջուր մաքրութեան ։
Երկնաւորին ճանապարհի
Յառաջընթաց աւետաւոր ․
Զօրական Թագաւորին
Նախամարտիկ յասպարիսին ։
Էրեւմամբ Գաբրիէլի
Զաքարիաս 'ի տաճարին
Ընկալաւ ծնունդ աւետեաց
Անուանադրեալ 'ի տախտակին ։
Թափեցելոյն յանձառ փառաց ,
Պար[illegible]յն յարգանդ Կուսին ,
Ճանաչեցեր յողջոյն կենաց
Ցամուլ ծերոյն յորովայնէ ։
Ի բերանոյ բարբառելով
Զօրհներգութիւն ալրողոյ Կուսին ,
Լցար Հոգւով սուրբ անգըստին ,
Ըստ աւետեացըն [illegible]շտակին ։
Խայտալով յարգանդ՝ ծ[illegible]ր ,
Կաքաւելով կատարեցար ։
Ծագեցար նախ , արուսեակ
Արեգականն արդարութեան ,
Կարապետ Թագաւորին
Եւ փեսաւէր սուրբ փեսային ․
Հրաւիրակ առագաստին
Մաքուր զարդուք պճնեալ հար-
սին ։

Զայն բարբառոյ յանապատէ,
Ի դադարել մարգարէիցն :
Ղեւտական քահանայիցն
Լըրումն եղեր աստուածաբանականին :
Ծրագ օրինացըն Յովհաննէս ,
Նըսեմացեալըն Իսրայէլի.
Մարգարէ և Առաքեալ ,
Եւ մեծ 'ի ծնունդըս վըկայեալ :
Յանապատն վայրաբնակեալ ,
Անմարմնական վարուք ծըղնեալ .
Նոր Հեղիաս Հոգւով լըցեալ ,
Կըրկնին ազանց արժան կանգնեալ :
Շնորհաց Նորոյս 'ի քէն սկըսեալ ,
Հնոյն օրինաց քեւ կատարեալ :
Որ ոչ լուծեր ըզխուրացս ոտին
Տնօրէնութեան սուրբ Միածնին :
Ընդաշխարհիկ մարդկան ցուցար ,
Կոչմամբ Հոգւոյն երեւեցար :
Պապանծեալ լեզուին լուծող ,
Եւ ամլութեան մօրն արձակող :
Ջահըն լուսոյ յերկնից ծագեալ ,
Երեսնամեայ յերկրի շըրջեալ :
Ուահ գործեալ 'ի Յորդանան՝
Ի քէն հայցեր ջուր մաքրութեան ,
Սոսկալըն հողեղինաց
Հուրըն 'ի հողոյդ մաքուր ձեռաց :

Վերկայելով Բանին կենաց
Լուար ձայնին Հօր 'ի բարձանց.
Տեսեր զՀոգւոյն աղաւնակերպ
Յերկնից իջեալ առ փառակիցն:
Բարունոյն սանդեցեր
Վարդապետել զաշակերտեալսն:
Ցընծայ այսօր եկեղեցի
Յիշատակաւ քո պանծալի,
Իւսէ պըսակ զարմանալի
Յոգնանըկար քում գովեստի:
Փառք ամենայն առաքելեաց,
Նախամարտիկ մարտիրոսաց.
Քահանայդ ինքնանըւէր,
Քաւիչ մեր լեր հայցմամբ առ տէր:

## ՈՐԴԻՈՑՆ ՈՐՈՏՄԱՆ

Որդիքն որոտման որք 'ի վերուստ
որոտացին.
Յամպոց հրեղինաց հողմով Հոգւոյն
հընչեալ յաշխարհս:
Յաշխարհ ծարաւուտ զանձրեւ կե-
նաց հոսեալ յերկնից,
Զերկիր բանաւոր առոգելով առա-
տապէս:

Աստուածընկալ գետոց բղխումն 'ի յԱգինայ,
Զորորդն Եփրատէս նշանակէր ըզ-Յովհաննէս։
Յովհաննէս սիրող սիրեցելոյն առ 'ի Հօրէ,
Անկեալ ըզլանջօքն և ոչ կիզաւ յա-հեղ բոցոյն։
Բոցով բորբոքեալ անձկակարօտ տարփմամբ սիրոյ,
Ճեպէր փոյթընթաց 'ի գերեզմանն յարուցելոյն։
Յարուցեալն յայտնիւր առ ծովակին տիբերական,
Ծանուցեալ սիրեցեալն աղաղակեաց թէ այն է տէրն։
Տէրըն հրաւիրէր զՊետրոս ըզկնի իւր հետեւել.
ԶՅովհաննու ասէր, զի թէ կամիմ՝ կեցցէ 'ի սպաս։
Ի սպաս սիրեաց զսէրն և սիրեցաւ անզուգապէս։
Մըկըրտեալ արեամբն Յակոբ ընտ-րեալ մաքուր անձամբ.
Յանձն առին ըմպել զբաժակ մահու-կենարարին,

Մըկըրտեալ արեամբ՝ զոր ընկալաւ-
տէրն 'ի խաչին ։
Ի խաչին ըզմայրըն սիրելոյն իւր
աւանդէր ,
Շնորհիւ դաւանէր որդի ըզնա սըրբոյ
Կուսին ։
Զկոյսըն Մարիամ առեալ յինքեան
սպասաւորէր ,
Մինչեւ 'ի փոխումն յիմանալեացըն
կայարանս ։
Կացեալ յաշխարհի քարոզ բանին
ճշմարտութեան ,
Աւետեաց ձայնիւ յերկնից հընչեաց
կենդանի Բանն ·
Բանն որ էր Աստուած 'ի սկըզբանէ
առ Աստուած Բանն ,
Ծընունդ միշտ Էին որով եղեն գոյք
յանգոյից ։
Գոչումն որոտման յետ հոսելոյ զանձ-
րեւ կենաց ,
Ամփոփեալ յերկինս առ առաքօղն
անդրէն դարձան ։
Յակոբոս վըկայ վաղահասուկ տըն-
կոյն պըտուղ ,
Ի Հերովդիայ զբաժակն արեան մա-
հու արբեալ ։

Ծառաքըն տեառն ըմպեն յամանոյն
զանձրեւըն կենաց ։
Բալսամին երկնաւոր ծաղկեալ զօր-
թըն հոգեւոր ,
Զուա միրոյն յօտեալ օրհնեալ մը-
նել ալըտղաբեր ։
Սերովբէք զօկրոյն բաժակն ըմպել խոս-
տացան ,
Մըկըրտել արեամբ ընդ նոյն կա-
մաւ յանձն առին ։
Էն միշտ 'ի յԷէն ծընեալ մարմնով
ծընանի ,
Զոր քարոզք Բանին տեառն եւ շօ-
շափեցին ։
Սիրատարփ զլանջըն անկեալ զկիզա-
նող բոցոյն ,
Զոր եւ 'ի լերինն Թաբօր տեսեալ
թըմբըրեցան ։
Ի մակարդբանական անուանց վերադա-
տուեցան ,
Ցորդւոց Զեբեդեայ փոխեալ յՈր-
դիան արտասուն ։
Եւս 'ի բարձրագոյն ելեալ ոտքի կու-
սական ,
Էութեան բանին սպասաւոր գոլ աս-
տուածաբան ։

Բնական լուսով լըցեալ զաշխարհս ա-
մենայն ,
Անձկալի սիրով առ նոյն վերափո-
խեցան :
Գովել ըզլուսատեղծօղն էից զԲանըն ծա-
նուցին ,
Որում և տացուք ըզփառս ընդ Հօր
և Հոգւոյն :

## Ի ՆԱԽԱՎԿԱՑՆ

Ի խաչին տընկեալ որթոյն
Ողկոյզ վազահաս խայծեալ,
Քարամբըք ճըմլեալ գինի
Ուրախարար սիրով :
Մեր սիրոյ սերման ծընունդ
Սիրաբողբոջ բուսոյ ծաղիկ ,
Պտուղ քաղցրահամ ճաշակ
Հրեշտակատիպ տեսիլ :
Տեսանող էին լուսոյ
Անտեսին Հօր 'ի բարձունս ,
Այլ և ծոցածին Բանին
Անեղին եղեալ երբեմն :
Երբեմն անեղին առեալ
Սկիզբըն.եղականին բնութեան

Զոր և տեսեալ վըկայն
Յերկինըս բաղձեալ փառաց ։
Փառաց Թագաւորն երկնից
Յայտնեալ զինուորին յերկրի ,
Ի յասպարիսին վասն իմ
Դու մի՛ երկընչիր , ասէր ։
Ասէր աղաղակելով
Առ տիրասպանիցն հանդէս ,
Ահա տեսանեմ զՅիսուս
Իւր Հօրն ընդ. աջմէ նըստեալ ։
Նըստեալն յառնէր ցուցանել
Վերին հրեղինաց դասուցն , |
Տեսէք զհողեղէն բնութիւնն
Վասն իմ չարչարեալ նըման ։
Նըման խաչելոյն հայցէր
Ըզթողութիւն սպանողացն ,
Որ և կոչեցաւ Սաւղոս
Նորին հետեւեալ ոտից ։
Ոտիւք սըլացեալ յերկինս
Եւ 'ի ձեռըս քո՝ ասէր ,
Յիսուս , աւանդեմ զհոգիս
Մինչեւ 'ի գալըստ քո սուրբ ։
Սուրբ Ըստեփանոս պըսակ
Եւ նախամարտիկ վըկայ ,
Վասըն սպանողացըս քո
Դու լեր բարեխօս առ տէր ։

# ՑՈՐԴՈՐԱԿ

Ի ԳԱՒԱԶԱՆԷՆ Յեսսեայ ստեղ-
նեալ Ստեփանոս ,
Առաջին պտտուղ ծառոյն՝ որ ՚ի
Գողգոթա ։
Նարդոս և քրքում , զմուռ , ծաղիկ
ծովային ,
Մանուշակ , շուշան , վարդից կար-
մրերփեան պղպեակ ։
Երփնազարդ պաճնեալ գեղով նրբման
Հրեշտակի ,
Բուրումն անուշեղէն խնկոց զհոտս
անոյշ բուրեալ ։
Բարուն պանծալի քանքար վարդապետ
բարի ,
Իմաստիւք լցեալ Հոգւոյն աս-
տուածապատնէր ։
Սիրով անձկալեաւ վառեալ ՚ի Հուր
սիրելւոյն ,
Ի մէջ ջուրց բազմաց պահեալ ան-
շիջանելի ։
Ի բարձունս երկնից գտեալ պսակ
մաքրութեան ,

Աննախանձելին փառաց տեսով Հօր իւր
ընդ աջմէ ։
Սրբացեալ Թեւօք Հոգւոյն երկնա-
ձեւ գոլով,
Սերովբէատարածին տուեալ յաւանակ
զերկրական պատուէրն ։
Եղեց աստիճան գործեալ զհարկաւոր
քարինան ,
Ընդ ինքեան հանեալ զպսակութ
յերկնային խորանան ։
Կենդանի վերնոյ մահուանս կենդանա-
ւոյն յաւէտ ,
Ըզմարդկութեանս մեր մասն որպէս
խունկ անոյշ ։
Արքային երկնից զինուոր արի ՚ի
մարտի ,
Տուր մեզ օգնութիւն հայցեա ընդ-
դէմ Թշնամւոյն ։
Թագիւ անթառամ Յիսուս պսա-
կեաց ըզքեզ ,
Հաղորդ քոյդ փառաց խնդրեմք
լինել տօնողացս ։
Որ յուրախութիւն անճառ տեսութեան
քո մտեր ,
Պաղատեա և մեզ ՚ի նոյն մտանել
ընդ քեզ ։

Դեկօք հաւատոց անցեր ընդ ծով
աշխարհիս,
Վերածել ըզմեզ հայցեմ 'ի մեղաց
ծովէս ։

Ի քեզ համբառնամք ըղձիւքս, Քրիս-
տոս Աստուած,
Նախավկային հայցմամբ և մեզ ո-
ղորմեա ։

Կերպարանողդ Հօր զգեցեալ ըզկերպ
Ադամայ,
Վասըն քո մերկացելոյն մեզ լոյս
ըզգեցո ։

Որ բուրուառ ծերոցն յերկինս դա-
սեցեր զմանուէլն,
Զաղօթս մեր նուէրս ընկալ 'ի հոտ
անուշից ։

Սրբութիւն սրբոց սրբեա ըղձիւս
և զխորհուրդս
Տեսանել ըզքեզ հոգւով ընդ Ստե-
փանոսի ։

Երեւեալդ ընդ աջմէ Հօր, տեսողին
հայցմամբ
Զերգարանս և ըզպաշտօնեայս ընդ նո-
րին դասեա ։

# Ի ՍՈՒՐԲ ԼՈՒՍԱՒՈՐԻՉՆ

ՍՐՈՎԲԷԻՑ ձայնիւ եղանակեմք
այսօր,
Ի յիշատակի հօր րաբունւոյս մե-
րոյ .
Րաբունեացն ալեան 'ի խաւարէ ծա-
գեաց
Լոյս հայաստանեայց իմաստու-
Թեան Բանին :
Բանն որ 'ի Հօրէ իջեալ փրկեաց
զաշխարհս ,
Նոյն սովաւ զանկեալքս վերաբե-
րեալ ուղղեաց :
Ուղղութեամբ հաւատոյ առաքինողին գը-
տեալ ,
Ի փշաբեր սատոց ծաղիկ վարդից
յեռեալ :
Ցուցեալ խուռնեբրամ բարեբաստիկ
իմաստ ,
Մանկականն ամբոյ վերելս 'ի սէրս
Նորուն :

Նորուն փրկութեան համասեռից
պատճառ,
Կարթ վերաբերող ծովու մեղաց
գոլով։
Գոլով յատենի ճըշմարտութեան վըր-
կայն,
Որպէս և Ցիսուս ախղատասեան
բամիցն։
Բաղխեա արքայէն հարցափորձեալ
Տըրդատ,
Թաւ տառովք ընծայ ուրուականաց
սնոտեաց։
Ի սնոտեաց 'ի բաց զանձն իւր եդեալ
խաբմամբ,
Ճուճկալեալ տեւէր չարչարանաց
գանից։
Գանըս մահաբերս իբր անմարմին
մարմնով
Թիւ երկոտասան կըրէր յանձն իւր
ուրախ։
Ուրախ լինելով երկնադուռար մե-
հեցն,
Ծառոյիջեալ կ՚ նոյն զարմանալին
բամեալք։
Բանիցն անարըրաց մարմնոյ սըրբոյն
սկըսեալ

# ՆԵՐՍԻՍԻ
# ՀԱՅՐԱՊԵՏԻՆ

ՆՈՐ և առաջին լոյս ծագեալ հայրըն լուսոյ
Երկրորդ զնոյն վառեալ լոյս շառաւիղըն լուսոյ .
Բարութնն այն գործով բան, գետոն անուն յորդառատ
Սերոյ զընձիւղեալ բոյսն զուարթացոյց ոռոգմամբ .
Էջ աննիւթ աղաւնին ծանոյց զընտրեալն 'ի բիւրուց ,
Սրբեալ տաճարացոյց զմաքրեալն 'ի սկըզբանէ :
Ի մի յայնմ աղբիւրէ բազում բըղխեալ վըտակ ,
Նովքին խընդաբեր ծառք արբեալ դըրախտին Աստուծոյ .
Վարդից բուրելով հոտ և շուշանաց անուշից .
Արքայն անիմաստ արբ և ոչ իմաստնացաւ ,

Սմին՝ փոխանակ կենաց՝ մահու ար-
բոյց բաժակ ։
Տրուողին աւանդեաց զհամանմանօրեայն իւր
պատկեր ,
Ի կեանս վերափոխեալ՝ 'ի միշտ կեն-
դանւոյն փառս ։

## Ի ՍՈՒՐԲ

## ՔԱՌԱՍՈՒՆՍՆ

Նոր իմն է հընչիւն ընթերակայ Եր-
գոյս ,
Երգ ներտաղական յոգնատեղեան
Բախձան ·
Բախձան պանծալի բազմերանեան
քառասնաթիւ Սրբոց ։
Սրբոց վըկայից զինաւորաց Թագա-
ւորին Երկնից
Ի յերկնակառոյց արարչական բանին
վառեալ Սիրոյ ,
Սիրով հրաշայնոյ զնիւթ հողեղէն յե-
ղափոխեալ ի լոյս ·
Ի լոյս գերազանց գեր 'ի վերոյ քան
ըզբնութիւն Եղեալ ,

Եղեալ յայս նըշան. առաքինեաց անձ-
հանց ինքեամբ Բարսուն ։
Բարսուն հանճարոյ որըբազանից յոգ-
Ներամեան Գըննդից ,
Գըննդին միայնոյ Թիւ քառասնատաչ ըստ
եզակացն ի սմա .
Ի սմա տեսանի խորհուրդ սըրբեալ
աւուրց տասանց Քառից .
Քառասնից սըրբոց գունդ գումարի
Այսօր ,
Այսօր մեծամարկի դէմ ընծըհար Ռու-
մին ։
Ռումիցն անմաքըրից մարտնոց սըրբոց
երկք յաճախեալ Աստուած ,
Աստուած պարարկին 'ի ծով լըճին
սառնասառուոյց Սուզմամբ .
Սուզմամբ ծովային ոչ դառնաշունչ
հիւսիսային Որոտ .
Որոտ տարափման յանդըխուրակամ վայ-
րին անձկով Խիւծեալ ։
Խիւծեալք 'ի յարեանց կարկուտա-
տեալ ծոմս 'ի կարմիր Ներկեալ ,
Ներկեալ վառդագոյն Թանթուեալք
յարեան մարմնոյ Վըրկաղք ։
Վըրկաղք խաչելոյն միաբանեալ յա-
սով առ նոյն կային .

Րաբեալ արքայամամբ աւրհնաւորք 'ի խոր
Նիրհեալ Քընոյ :
Քուն մահու Թափեալ, խմանալն գլխա-
մամբ գիմեալ Ի լոյս ,
Ի լոյս գերունեակ զոր Նըկատէր սաւա-
ժլեալ Սոցուն :
Սոցուն մըկայից միակրօնից միաբա-
նելով Եղեալ,
Եղեալ 'ի լըճէ սայլիւք զօղեալ ընթա-
նայքն 'ի Բոց .
Բոցով սերայնոյ մանզան վառեալ
մայր գերազանց Արանց ,
Արանց վեհազոյն խրախուսելով
սաանձնեալ յուսոյն Սիրոյ ,
Սիրոյ նըմանեալ մակաբայեան մօր
գերագոյն Տարփմամբ :
Տարփմամբ արփենւոյն բոցակիզեալք
և տապացեալք Ի նոյն .
Ի նոյն հուր սըրբեալք զաղտ՝ որ հող-
ւոյ, մարմնոյ կիզմամբ Աստուսա :
Աստանօր 'ի դէպ երգարանի մեզ՝ որ
զաւթեան Կացուրդ ,
Կացուրդ հոգեւոր գեղեցկապանծ
աստուածայինն Առած .
Առածն , որ երգի , անցաք ընդ հուր
զոլով 'ի Ջուր Տարեալք :

Տարեալ հոսեքն 'ի ջուրս ըղձոյն բա-
ցակնդեալն Աձին .
Աձինորք որբոց փայլատակեալ տար-
րանայքն Բանեալք .
Բարունեայ ազգեալ, հաւատքեղով գեր-
պարունակին Եմեղ :
Եմեղ մաքրունակ , վայր վայելուչ ,
զուարձացեալ Ցրնծամք ,
Ցրնծամքը տօնիւս քառասնամեթիւ
քառասնօրեայ Աւուրցս .
Աւուր վրկայիցս ընծայեցուք զըրաւ
կողբն Նըւէր ,
'Նըւէր այս տօնի փառըք պատիւ Եր-
րորդութեանըն միշտ :

## Ի ՍՈՒՐԲ
## ՀՌԻՓՍԻՄԵԱՆՍՆ

ԱՌԱՒՕՏ լուսոյ արեւելեան ա-
ղանց
Օրիորդըն սուրբ յարեւմըտից ծա-
գեալ ,
Ոսահըս լուսափայլ հայաստանեայց
ուղղեաց ,

Ելանել յերկինս 'ի հրեշտակաց
կայեանս ։
Հռիփսիմէ գեղազարդեալ կուսից
պարծանք ,
Երկնից արքային հարսն ընծայեալ
յերկրէ ։
Որոտին քաղցրութեան մեզ 'ի շըր-
թանց բըղխեալ
Զեւղ թափեալ անուշին անուշա-
հոտ բանիւ ։
Ի փեսաւերացն առաքելոց դասուց ։
Հաւատոյ Վիմէն յեկեղեցւոյ փո-
ղոյն ,
Փեսային Իւրոյ առաքեցաւ հրաւէր
Ի հայաստանի առագաստի ման-
կունս ։
Սիրով արքային , յորում ընդեւալ
վառեր ,
Ցաղթեաց բըռնութեանց թագա-
ւորաց երկրի ։
Ի ձայն քաղցրութեան բարեկամին
գոչէր ։
Արի որ ննջեսդ 'ի գբի ներքնումն
եղեալ ։
Մաքուր մեր արեամբ զկինձակըս քո
հերկեալ

Եւ, մըշտակ հոգւոյ, և սերովբէական
 բանիւ.
Էջմամբ պատրաստեալ քեզ օթեւանս
 յերկինս,
Ընդ քեզ և ծնելոցըն քու աւազա-
 նաւն :
Կենդանի վըկայք կայք իմաստունք
 և սուրբք,
Մարք մեր հոգեւորք ծընօղք յոր-
 դիս լուսոյ.
Ողջախոհութեանցըդ մայր Գայիանէ,
Եւ սըրբուհւոյդ բարի կուսանցըդ Հըռիփ-
 սիմէ :
Ցերեսնից եօթանցըդ մեծ վըկայու-
 հեաց
Հայցմամբ պաղատանօք բարեխօսել
 ընդ մեր.
Սուրբ Երրորդութեանն ընծայեցէք
 մաղթանս,
Շնորհել զթողութիւն մեր յանցա-
 նաց բազմաց.
Նոյն վերակոչիլ 'ի հանդերձեալն
 ընդ ձեզ
Ի ժառանգութիւն արքայութեանն
 երկնից,

Եղիցին մերայնոց մատուցանել ընծայաւս
Յարդարուարձ ձայնիւ 'ի յաւի-
տենանս . ամէն ։

# Ի ՆՈՑՆ

ՍՐՋԱՆԻԿ հոգիահրաւէ
Կոյսըն մաքուր սուրբ Հռիփսիմէ
Լոյս ծագեցաւ 'ի Լատինէ
Հայոց մեծաց յարեւմըտէ ։
Կուսական փողըն գոչէր ,
Տայր աւետիս սուրբ Գրիգորի .
Փութա եւ 'ի վիրապէդ ,
Լուսաւորիչ Հայաստանի ։
Համակամ ընդ Հռիփսիմէ
Վ ըկայուհիդ Գայիանէ ,
Մեզ լուսատուք յարեւմըտէ ,
Տանըս Հայոց 'ի Լատինէ ։
Ծովային շուշան ծաղիկ
Բուսեալ 'ի տանըս Թորգոմի ,
Առոգեալ արեամբ սըրբոցըն
Պետրոսի եւ Պաւղոսի ։
Ի վայելուչ գեղ պատկերին
Ցնծացեալ ազգըն Հայկին ,

Պետք և իշխանք առ հասարակ
Եկին 'ի դուռըն Հռովմայեցին :
Ձայն աւետեաց մարմնականին
Նոքա տային Հռիփսիմէին ,
Այլ այն բանքն ուրախալին
Կուսին 'ի բօթ համարէին :
Աւետիս քեզ, կին ազատ ,
Եղեր տիկին Հայոց մեծաց ,
Արքայուհի արեւելեայց ,
Տանն Արամայ դըշխոյ փառաց :
Արի եւ 'ի Հընծանեդ ,
Մուտ 'ի սենեակ արքայական .
Հարսն եղեր արեւելեան ,
Եւ Թագուհի տանս Թորգոմեան :
Ցայնժամ սըրբոցըն Հռիփսիմեանց
Ի ձայնս ողբոց աղաչանաց
Աղբիւրս բըղխեալ յորդ արտասուաց,
Հառաչէին առ տէր Աստուած :
Տէր Աստուած Իսրայելի ,
Քաղցր և Ներող յամենայնի ,
Մաղթանօք առաքելոցըն
Պետրոսի և Պաւղոսի :
Փութացիր մեզ յօգնութիւն
Տէր ապաւէն և փրկութիւն ,
Մի՛ Թողուր զմեզ 'ի ձեռաց
Յօտար երկիրս խուժադուժանաց :

Զայն անհեղ հընչեաց յերկնից,
Բարբառ եղեւ ուրախութեան.
Մի՛ երկընչիք, իմ որդեակք,
Զի ես ընդ ձեզ եմ յաւիտեան:
Զօրացաւ կոյսն 'ի ձայնէն,
Դիմեաց 'ի մարտ պատերազմին.
Եհար վանեաց զհըսկայ արքայն,
Կոխեաց զվիշապն անդընդական:
Եղանէր 'ի դարպասէն
Որպէս փեսայ յառագաստէ,
Առ Հընձանաւն գայր անցանէր,
Զայն աւետեաց մատուցանէր:
Արիք ելէք 'ի Հռոմ քաղաք,
Տուք աւետիս առաքելոցն.
Հարսանիք են ինձ այսօր,
Եկայք տեսէք զիս հարսնացեալ:
Փող հարէք, յօրինեցէք,
Կարմիր արեամբ պըսակեցէք,
Ի յառագաստ սուրբ հարսանեացն
Զիս տօնելով յուղարկեցէք.
Զի անդ երթեալ բարեխօսեմ
Զեզ տօնողացս և աղաչեմ.
Զձեզ իմ փառացըն կցորդեմ,
Եւ հանդըստեանըն հաղորդեմ:

# Ի ՍՈՒՐԲ ԿՈՅՍՆ ՀՌԻՓՍԻՄԷ

ՀԱՆՃԱՐԵՂ շնորհալից ընտրեալ է,
Յարքայից հզօրաց զարմէ է,
Մեզ պարգեւ 'ի սանէն Լատինէ,
Հրեշտակ հրաշագեղ Հռիփսիմէ:
Ուսահաւորդ ուղեւոր երկնընթաց,
Օրինաց երկնայնոյն խորագիտաց,
Ուրացեալ զանձն և զփառս հայրենեաց,
Հրեշտակ հրաշագեղ Հռիփսիմէ:
Իմաստուն սուրբ կուսան գեղեզարդոյ,
Հրով Բանին 'ի յերկնից արկելոյ
Վառեցեր ըղձապատեր հաւատոյ,
Հրեշտակ հրաշագեղ Հռիփսիմէ:
Փեսային Քրիստոսի մարմնացեալ,
Անապական կուսութ(եամ)բ հարսնացեալ,
Յուսադատեալ անմահացոյց բաղձեցեալ
Հրեշտակ հրաշագեղ Հռիփսիմէ:
Սիրասնունդ սիրամարգ սըլխրալի,
Նըրբափայլ ոսկէթել տարփալի,

Եռատապանակ խուղադրուխ ցանկալի ,
Հրեշտակք հրաշագեղ Հոխփոխեն :
Իսկածնեմ աղաւնի օդապար ,
Նոր Նոյեան տապանին էքոյդ գաղար,
Օծապանն արագիլ դու արդար ,
Հրեշտակք հրաշագեղ Հոխփոխեն :
Մրտաւոր մարտերս մրցական ,
Իշխան. Բանին Հօր զօրութեան ,
Լիակոխ քաջութեամբ ըղձընձան ,
Հրեշտակք հրաշագեղ Հոխփոխեն :
Ի գունեղ թաթաւեալ'ի բոսոր ,
Սաղայութուն կարմիրորակ եւ խըն-
ձոր ,
Հարսն օգնեւ դու տրեամբ քօղա-
ւոր ,
Հրեշտակք հրաշագեղ Հոխփոխեն :

## ՏՐԴԱՏԱՅ
## ԹԱԳԱՒՈՐԻՆ

ՆՈՐԱՀՐԱՇ տեսիլ և գերագոյն
քան ըղձնութիւն
Ցուցաւ առ բռնաւոր արքայն
Հայոց մեծաց Տրդատ :
Երկնից թագաւորն եհար խրատու
գաւազանաւն

# ԱՇԽԱՐՀ ԱՄԵՆԱՅՆԻՆ ՅՈՐԴՈՐԱԿ

ՍՈՐԱԳՕՂ հնութեան մարդկան,
Զիս նորոգեա 'ի կեանս անմահ ·
Երկնապարգևան մի ազատութիւն,
Մաքրեա զհողեղէն զմիտս և զմարմինս:
Բուժեա 'ի մի լրութիւն և զիս
Կաթուղիկէ եկեղեցւոյ ·
Արդեա յայլայից մեղաց խմաց
Կենդանատար արեամբդ քո :
Եդեմական դրախտին դրունք
Բացցին ինձ, Տէր, 'առ աւազակին ·
Արմաւենական սուրն հրեղէն
Ծառոյն կենաց 'ի բաց դիցին :
Ինձ լսելի արա ըղձայն
Երանական կոչման յերկինս ·
Եկայք, օրհնեալք Հօր իմոյ,
Ժառանգեցէք ըզպատրաստեալն ·
Բամբեալ անդուռ անկեալ փորաց
Իմնեակ դասուցըն հրեշտակաց,
Գտցել ձայնիւ Քերովբէից
Քեզ օրհնութիւն, Տէր բարձրեց :

## ԳԱՆՁ
## ՍՐԲՈՅ ՎԱՐԴԱՎԱՌԻՆ

ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ զօրութիւն, ա-
նեղ բնութիւն 'ի վեր քան ըղձանս.
անսկիզբն եւ սկսեալ, եւ բղխումն
անընդհատ. անծին եւ ծնեալ, եւ
ելումն 'ի յէէն. է եւ էակ եւ էակից
նոյնութիւն. լոյս եւ ծագումն, եւ
աղբեւր բարութեան. անքննին եւ
անճառ, եւ քննիչ խոկութեան. Նա-
խադաղափար եւ պատկեր, եւ ոճոյ
անորակ. աստուածութիւն անուա-
նելի, եւ անուն էութեան անհետա-
զօտելի. անպատճառ էութիւն, եւ
պատճառ գոյից անստուերից եւ տար-
րեղինաց, ստեղծօղ եւ խնամօղ: Ահա
ընկալցիս զայս երգ օրհնութեան 'ի
նուէր փայլման քո լուսոյ՝ ընդ հո-
գեղինացն 'ի հողեղինացս, աղա-
չեմք :

Երրորդութիւն ծայրագոյն, անուրիշ
բաժանումն, եւ անանջրպետ միու-

թիւն. պարզ անզննելի, և թիւ կատարման. 'ի մի պատճառէ երկեակ շարժութիւն կնքեալ 'ի յերկս. իւկապէս երկուց ծայրից անհատից ունակ մշտնջենաւորութիւն. վերին խորոց և ստորնայնոցս շարժուածն և կայուածն, և մշտաշարժ բնութեանց շարժող յանշարժից. անքանակ, աներբ, անուր, անկէտ և անժամանակ: Որ 'ի վախճան գոյացութեան աննիւթիցն և նիւթականացս՝ ստեղծեր խորհրդեամբ մի և նոյն կրկին կենդանի 'ի տիպ տիրականդ քո պատկերի, անտեսին տեսիլ, և անձեւիդ կերպարան, լուսով պարագրեալ և անմահական վայրի վիճակեալ. որ հպմամբ անհպելի տընկոյն մերկացաւ զգաստս անեղծիդ: Ահա ընկալցիս.

Բարունակաբար մինդ 'ի յերից, իմաստութիւն Հօր և բան, խոնարհեալ 'ի ստորինս՝ յորմէ յաւէժ աննուաղ, գոլով անթերի 'ի ծոց հայրենի, քոյինաստեղծ պատկերին 'ի խնդիր նորոգման. գտեալ 'ի բնակ մաքուր կուսութեան հոգւոյդ տաճարի,

միացար ընդ նոյն խառնութեամբ անյեղապէս և անբաժանելի․ և զի ոչ ընկալար յեղելութեան բնութիւնս զանեղին անպարունակ ուսութիւն լուսոյ, ծածկեցեր զլոյսդ անվայրափակ իբրև վարագուրաւ ընդ մարմնոյ՝ շրջեալ ընդ մարդկան մարդկապէս՝ Աստուած բոլորից։ Ահա ընկալցիս․

Տէր, անուն պանծալի և գերազանցքոյին կոչմանցդ ամենի․ որով եւս թափեալ փեսայդ երկնաւոր, 'ի գութ խանդակաթ հարսինն ըղձաւոր, զպարածածկեալ լոյսն արփիաւոր արտափայլեալ ցուցեր այսօր 'ի Թաբօր, 'ի տեսիլ հրաշից փեսաւերաց Առաքելոց և մարգարէից, 'ի վկայութիւն երկուցն և երից, հնոցն և նորոցս, տէր զքեզ ծանուցեր կենդանեաց և մեռելոց, կոչմամբ Մովսեսի և Եղիայի՝ որք խօսէին զելից քոց յԵրուսաղէմ։ 'Ի փրկագործ կրից ադամեանց լրումն յայտնեցար Վիմին հաւատոյ, ոչ մի 'ի գոյից՝ այլ տէր համայնից․ յորմէ պակուցեալ զերից տագաւորացն

ազդէր զխորհուրդ : Այս ընկալցիս.

Էն անեղ իբրեւ, անուն մշտնջենաւոր, անստես տիրապէս յէից, և եղելոց հայր, անձեռագործ տաղաւարաւ ամպով Հոգւոյն երեւեալ 'ի բարձանց՝ դաւանէր զքեզ որդի ըստ բնութեան, և սիրելի համակամութեամբ ընտրեալ ըստ մերումս և հաճեալ ըստ անստեսութեանն . ոչ ոմն և ոմն, այլ մի և Նոյն ասեալն և առօգգ : 'Ի հրաշիցն հնչմանց Վիմին սասանեալ և Որոտմանցն Թըմբրեալ, յանուշից անմահական բուրմանցն զմայլեալք, և 'ի տիպ տիրական տեսլեան արքայութեան առուր ցնծացեալք, նախահարցն դիտմամբ բերկրեալք . և առաքելոցն յուսով զուարճացեալք : Այս ընկալցիս .

Սոսկալի աւուրս շնորհիւ և խորհրդոյս զօրութեամբ համբարձցես ըզմեզ ընդ լերինն ընտրութեան, 'ի կայս լերանցն յաւիտենականաց, 'ի լեառն Աստուծոյ իմաստութեան, 'ի լեառն պարարտ օծութեան, 'ի լեառն մածեալ ընդ քեզ միա-

թեան և հաճոյ 'ի սպառ. քեզ 'ի բնակութեան. ցօղեա 'ի Հերմոննեդ վերնումն զցօղ քաղցրութեան 'ի լերինն դստեր Սիովնի: Հաշտեա ընդ մանկունս սորա սառուցեալս 'ի քոց բարութեանց. ընդգրկեա ըզվարատեալս 'ի գիրկ հայրենիդ գորովանաց. Ժողովեա զցրուեալս և մխիթարեա զողբացեալս. Հաստատեա 'ի վէմդ ամրութեան զտառապեալս և զխախտեալս. Հերքեա 'ի քոյոց ծառայից զծառայեալսն մեղաց, և ազատեա զազատեալս արեամբ քո սրբով: Ահա ընկալցիս.

Ի բարձունս ամբառնամք զձեռս և զմիտս առ մերձդ ամենից. էջ և առ մեզ 'ի յանունն քո ժողովելոցս ողորմութեամբ որպէս էութեամբ: Ընկալ զաղերս աղօթից մերոց յաւուր յորում ծագիս անճառելի փառօք 'ի բարձանց. բարձրացո զեղջեւր եկեղեցւոյ քում սրբոյ. փարատեա զկրկին խաւար մեղաց և նեղչաց, լուսաւորեա լուսով իմաստութեամբ և խաղաղութեամբ:

Պահեա 'ի սմա անստուեր և զսու 'ի քէն զլոյս իմաստից բաշխօղս՝ զհայրապետս մեր զտէր Ա. Ա. ըզնախաթոռ հովուացքոց բանաւոր հօտի, եպիսկոպոսօք, քահանայիւք և վարդապետօք, սարկաւագօք, դպրօք և համօրէն պաշտօնէիւք: Զօրացո զթագաւորն մեր Ա. Ա. բարեպաշտութեամբ, հեռքեալ զհոյլս ամբարշտութեանն. զիշխանս իշխեալ հակառակացն ճըշմարտութեան. զօրականացն տուր քաջութիւն, և ախոյանիցն յաղթութիւն. աշխարհայնոցն՝ ամրութիւն շինութիւն և խաղաղութիւն. առատութիւն պտղոց առօրէիս և յաւիտենականին: Ահա յիշեացես ողորմութեամբ զհոգիս հանգուցելոց մերոց, հաւատով խնդրեմք:

Եւ եւս առաւել զյորդորումն սիրոյ և զգործս բարեաց պարգեւեալ մեզ խնդրեմք:

Բոռեա զմեզ 'ի մի լրութիւն կաթուղիկէ, յօդեալ 'ի գլուխ եկեղեցւոյ խնդրեմք:

Գերագոյն լուսոյդ աննեղծ զեղակա-

նաց լուսոյ մաղթանս ածեմք առաջի․ զհրեղինացն նախ հոսեցելոց և հուպ եղելոց, զհողեղինաց սեռից լուսաւորելոց, զանվայրափակ լուսոյդ ընդունողի զՄարիամու Աստուածածնի և միշտ կուսի, զՅովհաննու կարապետի 'ի ծնունդս կանանց մեծի և քում մկրտչի, զառաքելոց և զմարգարէից, եւս և զարփիական լուսոյդ տեսլեան այժմ արժանաւորաց, զպսականունն նախակի վկայսն, և զնուիրաւ արեամբ մկրտելոց ընդ քեզ կամաւոր զենմանց, զբազմանունէր պատարագի լուսաւորչին մերոյ սրբոյն Գրիգորի, և զհամօրէն զքեզ սիրողաց Ճգնաւորաց դասուց։ Որոց հայցմամբ պահեսցես զժողովեալքս 'ի կոչ բոլորից փորձանաց, ուղղել զմիտս բնաւից 'ի շաւիղս արքայութեանդ երկնից․ և 'ի ծագման քո հայրենի փառօք յաւուրն մեծի, զորոյ ցուցեր այսօր զնախ լուսոյ աղօտ և չափաւորապէս, ողորմեաց մեզ տէր Աստուած մեր ըստ մեծի ողորմութեան քում։

# ԳԱՆՁ

## ՓՈԽՄԱՆ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻՆ

«ՍՈՐԱՀՐԱՂ տօնիւս կուսական, արփիականացն համաձայնելով դասուցն, երաժշտական նուէր ներբողից երրակի անձանց միութեան երեքսրբեան հնչմամբ նուագեմք: Որոյ բնաւ բնութիւն ծայրագոյն հրեղինացն սեռից. Էն յէութեան աննեղապէս, որդւոյ պատճառ իւրեւ, անուն հայրական. Բան և ծագումն անսկզբնաբար, յԷէն միշտ էակ 'ի վեր քան զբան. Հոգի հայրաշարժ բղխեալ 'ի Հօրէ, Որդւոյ փառակից և տէր բոլորից: Ահա ընկալցիս զայս նոր օրհնութիւն 'ի նուէր աղօթից հայցմամբ ծնօղի Բանիդ և մարմնաւորանի, աղաչեմք: Երրաքուն Էին համայն ուանատեղի և լոյս գերարփի. աննեղ յէութեան, բնութիւն անթերի. անկէտ կատարումն և պարզ գերազանց. անունիչ գոյութիւն, անանջրպետ միու-

թիւն, երկքանձնեան խակութիւն և մի ստուտութիւն. յորմէ միայնոյ սահղծեալքս ամենայն, հրեշտակական հոյլք երամից օրհնաբանիչ անմահ կենդանիք, ստորին ըզգալի քառեակք գլխաւորք զարմանազան աշխարհ կենդանեաց. 'ի հակառակաց միացեալ ոգւոյ և մարմնոյ զԱդամն առաջին գեղապատճոյճ փառօք զարդարեալ կողածնիւն 'ի դրախտն Ադինայ: Որոց զանհրականն օրէն մոռացեալ՝ զաստուածապատուերն մահու. որովք ոչ եղեն 'ի քէն անտես բարերար: Ահա ընկալցիս.

Բամեալ միայնոյ երրակին լուսոյ, հայրական բարբառոյ ձայնեալ վերստին Բանին և Հոգւոյ, առնել ոչ 'ի պատկեր իւր մարդ որպէս 'ի սկզբանն, այլ ծոցածին փառացն լուսոյ զհողանիւթ տիպ նախնոյն զգենուլ ծառայի: Ուստի ընտրեալ 'ի բիւրուց Գաբրիէլ պետ անմարմին զուարթնոցն, անէրունեան խորանին խորհրդոյ առ նոյն առաքեալ 'ի վերուստ, միութընթաց արագ սլացմամբ ձեպէ 'ի յաշխարհն մահու. բարբառ առնակաց հնչէ բերկրութեան

տրտմեցելոյ զատերն Եւայի, հրաւէրէ լինել տաճար սրբութեան Բանին գալստեան. որով յառաջել անքայլ գնացիւք առ կոյսն Մարիամ, ձայն առ նա ցնծալի և լուր քաղցրութեան հնչեցեալ, ուրախ լեր բերկրեալ, տրտմութեան բարձող նախամօրն, տէր ընդ քեզ յաւիտեան և սուրբ Հոգին հովանաւորեալ. զի ծնեալն է 'ի քէն Հօր միածին և անդրանիկ, փրկիչ աշխարհի: Ահա ընկալցիս.

Սոսկալի գրամամբ պակուցեալ վեհին անմարմնոցն, զարմացօղիդ նախաշաւիղ յորովայնէ Կուսին տեսեալ զգալուստ, յորում ներգործել անսերմն. յղութիւն լուծանէր տիրաբար զօրէն քո եղեալ. ծնեալ կուսութեամբ 'ի վեր քան զբան, անմայր 'ի յերկինս, անհայր 'ի յերկրի, կուսական կաթամբ կերակրեալ լցողդ ամենից, բարձար 'ի գիրկս բարձողդ բնաւից, աճեալ ըստ մարմնոյ աճման պատճառ բոլորից, շրջել ընդ մարդկան ստեղծօղդ Ադամայ, վերացեալ զցաւս ոգւոյ և

մարմնոց. եկեալ կամաւ 'ի չարչարանս խաչի և մահու, անմահդ մահուամբ զմահ մեռուցեր և զմեզ կեցուցեր. երեքօրեայ յարուցեալ համբարձար առ Հայր 'ի յերկինս. խոստացար Կուսին արքայուհւոյ 'ի տեղի համայնիցս գալ վերստին, առնուլ առ քեզ յանձնառու ընտանութիւնն։ Ահա ընկալցիս.

Երեւեալ երկնային հրեշտակապետին 'ի լրումն խոստացելոցն, բերեալ բարին Կուսին՝ նշան յաղթութեան կրից աշխարհի. զուրախութեան ձայն առ նոյն հնչեալ զաւետիս. Նախկին աւետեաց ընկալ, աւէ, այսօր կատարումն, վերաբերեալ 'ի սորինայնոցս յիմանալեացն խորանն՝ հուպ յանմատոյց լոյս Երրորդութեանն՝ փառաւոր 'ի փառս փոխելով։ Որոյ զուարճացեալ, նուէր գոհութեան ընդ մեծին շնորհի քեզ ընծայելով հայցմամբ մաղթանաց, համատեսակիցս՝ առ տէր պաղատէր՝ փրկութիւն խնդրելով, մաղթանէր։ Ահա ընկալցիս.

Սաւառնաթեւիցն առաքելոցն հա-

մանկանկեալ զատուց, լուսափայլ
ամպովք 'ի վերնատանն խորհրդոյ
բերեալ հրաշիւք 'ի հօգւոյն. 'ի
զոյժ հրաժարման առաքելոյն թաղ-
ծեալ, վեհքն զալստեան ծագումն
լուսոյ անկնարկեալ, զնոյն յուսա-
պատար բանիւ սփոփեալ, տես-
լեամբ փառաց քոց հրեղինաց զա-
սուք ցնծացեալ, յաւանդումն ա-
մենաբարբառ հօգւոյդ սխրա-
ցեալ, զմարմին մաքուր ամփոփեալ,
կուսանաց խմբիւք պար առեալ,
հրեշտակացն օրհնութեամբ ձայ-
նակցեալ, 'ի գերեզմանն մահու ընդ-
մահացելոցս խնուցեալ, երեքօրեայ
ըստ Միածնի խորոյ յարուցեալ,
անմարմնական զօրօք յերկինս վե-
րացեալ, յանմերձենալի լոյս աս-
տուածութեանն մերձեցեալ: Ահա
ընկալցիս.

Ի քեզ վերհամբառնամք զձայն պա-
ղատանաց, աստուածածին և միշտ
կոյս Մարիամ, զդրախտ աստուա-
ծատունկ, և եդեմ վայելուչ. կեն-
սատու տապանն նոյեան, և աստուա-
ծընկալ խորան աբրահամեան. մա-

րենի անկէզ, և վէմ աղբիւրահոս· աշտանակ լուսոյ, տապանակ կտակի, սափոր ոսկի և բուրվառ խնկալի· գեղմն ցօղահոս, և լեառն միմածին· ակն շափիղայ, և մարգարիտ պատուական· քաղաք Աստուծոյ, և տաճար հոգւոյն· պարտէզ փակեալ, և աղբեւր կնքեալ· բլուր կնդրկի, և հովիտ շուշանի· նարդոս բուրեալ, և քրքում ծաղկեալ· անապատ անկոխ, և երկիր բանաւոր· ամպ թեթեւ, և աթոռ քառակերպեան· դուռն աղխեալ, և տումար անլուծանելի· առաւօտ արփւոյ, և արեւելք արեւու· ապաւէն կենաց կենդանեաց, և յոյս յապագային աւուրն ննջեցելոցն: Ահա յիշեսջիր առաջի միածնի որդւոյ քո զհոգիս ննջեցելոց մերոց, մայր Աստուծոյ աղաչեմք:

Եւ եւս առաւել զյորդորումն սիրոյ և զգործս բարեաց պարգեւել մեզ խնդրեմք:

Բոլոր զանձինս մեր 'ի մի միաբանութիւն հաւատոյ և սիրոյ, խնդրեմք:

Գանձ պատուական կաթուղիկէ և

կեղեցւոյ յայտնեալ, սուրբ Աստուածածին. որով ճոխացան հարսունք երկնաւորք և օրհնորդք ըղձաւորք։ Զորոց զուամարեալ ընդ քեզ զխումբս ընտրութեան հայցեմք ընդ մեր մաղթանաց, զդասապետս դասուց խննուց վեհից քեզ այժմ եղելոցս, զձայնն Բանին և զպսակն պսակողին, Առաքելոք և մարգարէիւք, մարտիրոսօք, և որ մերն է լուսոյ ծագողաւ. մաքուր կուսանօք, ճգնաւորօք և համօրէն ընտրելովք, պահել պահողին էից զամենեսեան յապահովս։ Զվերակացու և զնախընթաց ոգւոց մերոց զհայրապետն մեր եպիսկոպոսօք և վարդապետօք, քահանայիւք և պաշտօնէիւք, վանականօք և աշխարհայնօք։ Զթագաւորս հնազանդելովք, և զիշխանս՝ իշխեցելովք. զզօրականս զօրօք և զժողովս ժողովրդօք։ Եւ ամենայն հաւատացելոց շնորհել ողորմութիւն յայժմուս և յաներեակ աւուրն։ Եւ այժմ ողորմեաց մեզ, տէր Աստուած մեր, ըստ մեծի ողորմութեան քում։

# ՇԱՐԱԴՐՈՒԹԻՒՆ
# ՀՈՄԵՐԱԿԱՆ
# ՎԻՊԱՍԱՆՈՒԹԵԱՄԲ

ՍԱԿՍ

ՀԱՅԿԱԶԱՆՑՆ ՍԵՌԻ

ԵՒ

ԱՐՇԱԿՈՒՆԵԱՑՆ ԶԱՐՄԻ

Ի ՍԿԶԲԱՆՑ

ՄԻՆՉԵՒ Ի ՎԱԽՃԱՆ

ԱՌԱՍԱՑԵԱԼ

ՆԵՐՍԵՍԻ

ԵՂԲՕՐ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

ՀԱՅՈՑ

ՅԻՒՐԱԿԱՆ ՆԱԽՆԻՍ

Ի ՀԱՄԲԱԿՈՒԹԵԱՆ

ԵԼՈՎ ՏԻՍ

ՊԱՐՏԱԿԱ՛Ն է հօր որդի
Հատուցանել վարձըս ծնօղի ,
Եւ անդրադարձ փոխարինի
Բազում երկանցըն պատշաճի ։
Բայց սակայն ոչ վարկպարազի ,
Այլ զօրութեամբ և ըստ կարգի ․
Զի է և այս ըստ օրինի
Նախ ասացեալ Սողոմոնի ,
Ծընընդեա՛ն անըզգամի
Վըշտիւ հատեալ՝ թէ կորընչի ․
Իսկ հնազանդեալըն զաւակի
Սահման եդեալ նա ըզբարի ։
Քանզի երկրորդ յետ արարչի ,
Ծնելըն ծընօղ պատճառ ասի ։
Վասն այսորիկ ոչ յիշեցի
Զանկարութիւնս յամենայնի ,
Զտըգիտութիւնս յիմաստ բանի
Վասն անկատարըս հասակի ,

Զի հրահանգից վարժարանի ,
Ջեմ տակաւին ներկուռ բանի ։
Յաթենականըն քաղաքի
Զանձն իմաստուք ոչ կըրթեցի ·
Ուր լըսարանըն Պղատոնի ,
Եւ չափ ոտիւք Հոմերոսին ·
Ուր ստորոգօղն Արիստոտէլ ,
Տաղըն բանիւ գըրօղն էր ·
Ուր հոյլք ամէն հըռետորի ,
Ժողովարան Ճարտասանի ,
Ներհըմտութիւն քերականի ,
Բայց քերթուածըն քերթողի ·
Զորըս գիտել նախ պատշաճի ,
Եւ ապա ապա ձեռնարկելի ։
Եւ զի յինէն այս է հեռի ,
Տարաբերիմ յամենայնի՝
Եթէ զիա՛րդ սկըսանիցի
Եւ կամ ո՛րպէս վճարեսցի ։
Սակայն եդեալ իմ 'ի մըտի
Զառատաձիրըն սուրբ Հոգի ,
Ըղորմածըն պարգեւի
Եւ ըղձիցըշեալըն Յիսուսի ,
Զի տացէ՛ արմատ բանի
Ինձ Ներսիսի անարժանի ,
Սկըսանելով յայսըմ տառի
Ի նախահայրան իմ ըստ կարգի ·

Թէ ո՞յք էին և կամ ուստի՛,
Եւ կամ յորում ժամանակի ։
Եւ մանկագրեալ 'ի քարտիսի
Զառ 'ի նոցայն գործեալ իրի,
Զոմանց պատմել յոյժ գովելի
Զարիութիւնսըն պանծալի.
Զոմանց ճառել զգործս անբարի,
Եւ զվատ անունսըն յաշխարհի ։
Զի որ բարւոյն է ըղձալի,
Առ 'ի բարեաց նախանձ շարժի.
Եւ որ չարին խընամ տանի,
Ցօրինակացըս կըշտամբի ;
Զոր կարճառօտ և ըստ կարգի
Շարադրեցից յայսըմ տառի.
Ըզվերծանօղըդ մաղթելի,
Գեր քան ըզկարըն չխընդրելի ։

# ՎԻՊԱՍԱՆՈՒԹԻՒՆ ՆԱԽՆԻ

## ԸՍՏ ՀՈՄԵՐԻ

## ՍԿՍԵԱԼ Ի ՎԵՐՈՒՍՏ



ԼՍՏԱՆՕ՛Ր սկըզբնաւորեալ,
Բանիս ըզԲանն ըսկիզբն եդեալ.
Այն որ ընդ Հօրն է էացեալ,
Անյեղապէս գոլով ծընեալ։
Ոչ ժամանակ անդըր մըտեալ,
Ի ոչ 'ի ծոցոյն իւր բաժանեալ.
Ոչ նախնական գըծիւ ստեղծեալ,
Ի ոչ պատուակցաց գերազանցեալ։

Այլ միածին որդի ծննեալ,
Լոյս 'ի լուսոյ Հօրէ ծագեալ.
Յորմէ և կեանքն աղբերացեալ,
Ի նոյն Հօրէ Հոգին բղխեալ:
Երրորդութիւն անձնաւորեալ,
Յաստուածութիւն մի հաւաքեալ.
Ըստ երեսաց տարորոշեալ,
Բնութեամբ անքակ յոյժ միացեալ:
Ոչ արարած գոյ անդ թըւեալ,
Եւ ոչ կրտսեր ոք ծառայեալ.
Ոչ բարձրութեամբ ոք մեծացեալ,
Ոչ ելեւէջ աստիճանեալ:
Ոչ յիրերաց ոք արարեալ,
Ոչ 'ի փոքունց յառաջացեալ.
Ոչ 'ի միմեանց աննըրկատեալ,
Այլ հաւասար հասուամբ եղեալ:
Առ 'ի յՈրդւոյ Հայր ծանուցեալ,
Զորդի միայն Հայր գիտացեալ,
Եւ 'ի Հոգւոյն նոքին քննեալ,
Եւ նոյնք ըզնա հետազօտեալ:
Բայց արտաքնոց ամպով ծածկեալ,
Եւ գիտութեան դրունքըն փակեալ:
Ի Սրովբէից չէ իմացեալ,
Ի Քրովբէից ներհուն չեղեալ.
Ի հրեշտակաց անհըմտացեալ,
Ի ստորնայնոց անհաս եղեալ:

Աստուածախօսըն վըկայեալ,
Որ 'ի վերուստ որոտացեալ,
Թէ յաստուած չէք ոք նայեցեալ
Եւ ըստ էնութեան ըզնա տեսեալ,
Բայց Միածինըն մեզ պատմեալ,
Այն որ 'ի ծոց Հօր է բնակեալ։
Որով երկինքըն գոյացեալ,
Եւ աշխարհի սիւնք հաստատեալ.
Յորմէ երկրորդ լոյս արարեալ
Ի յառաջնոյն աղբերացեալ.
Որք են հոգիք հարկաւորեալ
Եւ 'ի սպասու միշտ առաքեալ.
Որով երրորդ լոյսըն ստեղծեալ
Քառից տարերցըն բաղկացեալ,
Զոր խորհրդեամբքըն պատկերեալ
Եւ իւր ինքեան կերպարանեալ,
Յանմահական դրախտին եդեալ
Ի յԱդենի՝ զոր էր տընկեալ,
Իշխանական կամաւ պատուեալ
Եւ պատուիրան զտունկըն տուեալ։
Իսկ Արուսեակն առաւօտեալ,
Որ յամբարտաւանըն խաւարեալ,
Ընդ պարգեւին մեր մախացեալ՝
Զոր յարարչէն էր ընկալեալ,
Զհաւանական բան ընծայեալ,
Ի ձեռն օձին զկինըն խաբեալ,

Աստուածական փառօք պատուեալ
Զբանսալ աչացըն խոստացեալ։
Զոր դառնութիւնըն ճաշակեալ,
Ցանմահական կենացն անկեալ.
Նախ Թըզենեաւն այնու սփածեալ,
Ապա զմաչկեակն եզեն զգեցեալ.
Ցարփխափայլ վայրէն ելեալ,
Եւ 'ի յերկիր մահու ածեալ։
Ցոր աճեցեալ և յուռթացեալ,
Որդի ըղհայր փոխանակեալ.
Երկիր մարդկան ծնընդեամբ լըցեալ
Եւ յընդհանուրըս ծաւալեալ։
Որոց 'ի դէպ Թէ զըղջացեալ,
Զյանցանըս հօրն ապաշխարեալ,
Եւ Թողութեան մեղաց հասեալ,
Եւ 'ի յԱդին դառնալ դարձեալ.
Բայց ցանկական ախտիւ զեղխեալ,
Եւ 'ի մարմին զօգիս փոխեալ,
Մինչեւ եզեն Ջուրքըն հեղեալ,
Եւ սահմանաց երկնից բանեալ,
Զաշխարհ ամէն խորտուզեալ
Եւ զամպարիշտսըն սատակեալ։
Այլ տապանին տարեցուցեալ
Զորս 'ի յինքեան էր ամփոփեալ.
Ըզնոյ որդւովքըն իւրովք փըրկեալ,
Որք ոչ զօգիսըն մեռուցեալ։

Որոց եղեալ և տարածեալ,
Եւ վերըստին աշխարհ շինեալ·
Ազգ ըստ ազգի գոլ բաժանեալ,
Ցորդւոցն իւրոց՝ զոր էր ծընեալ։

Ի Սեմայ Եբեր սերեալ,
Եբրայեցիք են անուանեալ·
Ուստի փըրկիչըն մեր ծընեալ,
ՅԱբրահամու տոհմէն յայտնեալ։
Եւ 'ի Քամայ Քանան եղեալ,
Եւ զանիծից մասն ընկալեալ·
Յորմէ ծընունդքըն խաւարեալ,
Առ 'ի լուսոյն երկնից ծագեալ։
Իսկ Յաբեթի զմեզ վիճակեալ,
Նախ ըզԳոմեր եղեւ ծընեալ·
Եւ 'ի սմանէ գոլով յայտնեալ
Այն որ Թիրասըն կոչեցեալ,
Ծնընդեամբ անդուստ իսկ յառաջեալ
Եւ Թորգոմայ սա հայր եղեալ·
Յորմէ Մովսէս ազգաբանեալ,
Եւ աստանօր զմերըն թողեալ։

Այլ Թորգոմայ զՀայկըն ծընեալ,
Յորմէ և Հայք մեք անուանեալ·
Յաշտարակէն մին սա եղեալ
Յեւթանասնիցն՝ որ զնա շինեալ։
Ի տոհական լեզուացըն լեալ,
Հայք 'ի սորա մասին հասեալ·

